ՅԱԿՈԲ Ց. ԹՕՓՃԵԱՆ



# ՅՈՒՑԱԿ
# ՁԵՌԱԳՐԱՑ

ԴԱԴԵԱՆ ԽԱՉԻԿ ՎԱՐԴԱՊԵՏԻ



ԺՈՂՈՎԱԾ

1878—1898



## ՄԱՍՆ Ա.



ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1898

ՆՈՐԻՆ Ս. ՕԾՈՒԹԵԱՆ

# Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.

ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ

# ՀԱՅՐԻԿԻՆ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՈՐԴԻԱԿԱՆ ԱՄԵՆԱԽՈՆԱՐՀ

ՆՈՒԷՐ

*ԿԱԶՄՈՂԻՑ*

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Անցեալ դարու վերջերից գրեթէ բոլոր հայ մատենադարանները ունեցել են ցուցակներ, որոնց կազմողները բաւականացել են ձեռագրերի անուանացանկով, կամ շատ շատ նոցա մէջ եղած վերնագրերի արտագրութեամբ (օր. Կարինեանցը)։ Արդի ցուցակագրողից պահանջւում է լիակատար գաղափար տալ նոցա բովանդակութեան եւ արտաքին մասին. (կազմարարութիւն, գրչութիւն, նկարչութիւն եւ այլն,) որովհետեւ ամէն մի ձեռագիր ժամանակակից գիտութեան եւ արուեստի ծնունդ է։

Այս ուղղութեամբ պակաս կամ առաւել արժէքով ցուցակներ լոյս են տեսնում մեր մէջ 90 ական թուականներից ի վեր։ Արդէն 1888-ին Մեծ. Գ. Ն. Քարամեան հրատարակեց Բերլինի կայսերական մատենադարանի բաւական հարուստ հայերէն ձեռագրերի ցուցակը. 1892-ին Արժ. Մ. վ. տ. Մովսիսեան ցուցակագրեց Բարիզի Կայս. մատ-ի հայ. ձեռագրերը. 1891-ին Հ. Ց. Տաշեան կազմեց Վիէննայի Կ. Մ-ի 30 հ. ձ-երի ցուցակը նոր ոճով։ 1892-ին Հ. Գ. Գալէմքարեան պատրաստեց Միւնխենի Կ. գրատան թէ՛ թուով եւ թէ՛ բովանդակութեամբ աւելի հարուստ հ. ձ-երի ցուցակը։ Տփխիսում՝ Ներսիսեան դպրոցի հ. գրչագրերի ցուցակ կազմեց Մեծ. Գ. Ս. Կանայեան. վերջապէս 1897-ին լոյս տեսաւ Վիէննայի Մխիթարեան մ-ի 538 ձեռագրերի լիակատար եւ փառաւոր ցուցակը։ Պրոֆ. Ն. Մառ կազմել է Պետերբուրգի հ. ձ-երի եւ Ց. Վ. Միքայէլեան վարժարանի հ. գրչագրերի ցուցակը, Բերլինի Կայսերական մատենադարանի հ. ձ-երի ցուցակը. կրկին անգամ կազմեց Հ. Ց. Տաշեան նոր ոճով։ Տաճկահայոց մէջ այս ձեւով ցուցակագրելու նախաձեռնութիւնը պատկանում է Արժ. Տրդատ Վ. Պալեանին, որ 1892-ին Կ. Պօլսում հրատարակեց Ա. եւ Բ. տետրակներ 1897-ից սկսած «Հանդէս Ամսօրեայ»ում լոյս է տեսնում Սանասարեան վարժարանի ձեռագրերի ցուցակը. Մեծ. պ. Աճառեանի աշխատութեամբ։ Ս. Էջմիածնի ամենահարուստ հ. ձ-երի ժողովածուի ցուցակը կազմում է Արժ. Հ. Մ. վ. Տ. Մովսիսեան. Մեր կազմած՝ Սեւանայ վանքի ձեռագրերի ցուցակը, եթէ հանգամանքները ներեն շուտով կհրատարակենք։ Իսկ Վենետիկի, Երուսաղէմի, Անտօնեանց եւ այլ հաստատութեանց եւ անձանց ժողովածուների մասին, բացի պատահական տեղեկութիւններից ոչինչ չգիտենք։

Մեր հրատարակածը Արժ. Խաչիկ

վարդապետի ժողովածուն է, որ չնայելով Թուականի փոքրութեան շատ բազմապիսի եւ հետաքրքրական նիւթեր ունի. № 79. Դաւիթ Բաղիշեցին մինչեւ այժմ անծանօթ մի պատմագրութիւն է, թէեւ ԺԷ-րդ դարու, բայց ընտիր քաղուածներ ունի եւ ժամանակակից դէպքերի ականատես պատմիչ է: № 80. Մովսէս Խորենացի, հաւանականաբար մի հին երկաթագիր օրինակից է արտագրուած, ինչպէս որ ցոյց է տալիս գրչութիւնը եւ ունի ընտիր ընթերցուածներ. նոյն կազմի մէջ գտնուող Եղիշէն նոյնպէս մի թանկագին ձեռագիր է եւ չունի Ե-րդ յեղանակը, որը եւ պերճախօս ապացոյց է Բարձումեայի արած կրճատման № 81. Մովսէս Կաղանկատուացին արդէն յայտնի է իր ճիշտ եւ անաղարտ բնագիր: № 77-ը Սամուէլ անեցու հնագոյն եւ ամենալաւ օրինակներիցն է, որ կարող է մեծապէս նպաստել մեծ ժամանակագրի գրչի տակից դուրս եկած բնագրի վերականգնեման: № 70. Հետաքրքրական թարգմանութիւն է ասորերէնից եւ կրում է բնագրի յայտնի նշաններ ամէն իջի վրայ: Ուշադրութեան արժանի են քերականական (№ 91. 92) եւ փիլիսոփայական (№ 84. 85) ժողովածուները, որոնք ի մի են ամփոփում կամ մի որեւ է հեղինակի երկերը, կամ միեւնոյն գիտութեան վերաբերեալ այլ եւ այլ գրութիւններ, № 89. 90 բառարանները թանկագին են իրենց անծանօթ բառերով. № 71 եւ 102-ը հարուստ են վիճական-կրօնական գրութիւններով: № 29 Մաշտոցը մեծ կարեւորութիւն ունի Մաշտոցների վերջնական խմբագրութեան եւ տարբեր ծիսերի ներմուծման ժամանակը որոշելու համար: Ժողովրդական նախապաշարմունքների ուսումնասիրութեան համար առատ նիւթ են տալիս № 44—46. 94 եւ 95 ձեռագրերը եւ այլն:

Արուեստի կողմից եւս ընտիր գործեր ունի ժողովածուս № 1 բոլորգիր (Յովհ. արքայեղբօր) եւ № 2 նօտրգիր՝ աստուածաշունչները թէ՛ գրչութեան եւ թէ՛ նկարչութեան կողմից եթէ գլուխ գործոց չեն, գոնէ շատ հազուագիւտ են իրենց գեղեցկութեամբ, գոյների բարդութեամբ եւ նկարների նրբութեամբ: № 8 հետաքրքրական է բազմապիսի կրօնական նկարներով, որոնք 4 աւետարանների համաձայն Փրկչի կեանքի ամենախորհրդաւոր վայրկեաններն են պատկերացնում մեր աչքերին: Հին նկարչութեան ամենալաւ օր. է № 6. երկաթագիր Աւետարանը: Առհասարակ մեր ձեռագրերի նկարները որքան խիստ բնորոշ եւ ամբողջական պատկեր են իրենց ներկայացրած դէպքերի, այնքան եւս զուրկ են համաչափութիւնից: Ժողովածուս արդարացնում է այն տիրող կարծիքը թէ՝ արուեստի ամենագեղեցիկ արտադրութիւնները կամ Կիլիկեան (ԺԲ—ԺԴ), կամ նոր (ԺԶ—ԺԷ) շրջանից են: Մեզ այնպէս է թւում թէ մեր գրերի իւրաքանչիւր տեսակն եւս ունեցել է զարգացման 3 շրջան, օր. հին բոլորգիրն ու նօտրգիրը (մինչեւ ԺԴ.-րդ դար) պարզ կերպով որոշւում է ԺԶ—ԺԷ դարու բոլորգրից, սա եւս ԺԸ.-րդ դարավերջի եւ ԺԹ-ի՝ նման գրութիւններից. այսպէս եւ երկաթագիրն ու շեղագիրը իրենց ժամանակներում. օր. № 1. 7. 52. 53. 70. 77. բոլորգիր ձեռագրերը գրութեան ձեւով իսկոյն աչքի են ընկնում Բ.-դ շրջանի գրութիւններից: Ցաւում ենք որ նմանահանութեամբ չենք կարող մեր այս կարծեաց ստուգութեան չափը ցոյց տալ:

Գալով արհեստական մասին պէտք է ասել, որ նիւթը մեծ մասամբ մոմած,

կոկած թուղթ է. իսկ մագաղաթները սպիտակ են. Գեղեցիկ կոստղած են №№ 7 եւ 8. միւս կողմերի վրայ կան շատ գեղեցիկ կաշեքանդակներ. որ նշանակել ենք «կազմ»-ի բաժնում: Դժբաղդաբար ցեցակերութիւնը ստիպել է Հ. Խաչիկեան կազմահան անել բոլոր ձեռագրերը եւ թերթ թերթ մաքրել. այս պատճառով հին կազմերն են միայն մնացել եւ մի քանի թղթեր յետ ու առաջ ընկել:

Մի քանի խօսք եւս ցուցակիս գործածութեան համար: Ցուցակս կազմելիս մեր գլխաւոր նպատակն է եղել, ձեռագրերի բովանդակութեան եւ արտաքին մասին լիակատար գաղափար տալով հանդերձ, խուսափել կրկնութիւնից եւ աւելորդաբանութիւնից: Այսպիսի ցուցակագրութեամբ կարելի է տեսնել թէ իւրաքանչիւր ձեռագրի մէջ քանի՞ հեղինակ եւ նրանցից իւրաքանչիւրը քանի՞ միանման եւ տարբեր հեղինակութիւններ ունի. քանի՞ ծանօթ եւ անծանօթ հեղինակներ եւ գրուածներ կան: Առաջին կարգում դրուած թուանշանները ցոյց են տալիս հեղինակները (1. 2. 3. եւայլն,) նոցա առաջ դրուած տառերը նրանց ընծայուած հեղինակութիւնները. (է) եթէ միանման են, Ա. Ա$^2$ Ա$^3$. եւ այլն նշաններով, եթէ տարբեր, Ա. Բ. Գ. եւ այլն տառերով: Անյայտ հեղինակները (այսինքն յականէ յանուանէ չյիշուածները) նշանակեցինք x տառով: Այս տառերին յաջորդող թուանշանները ցոյց են տալիս էջերը: Եթէ մի որեւ է ձեռագրի մէջ ցուցակագրուած յօդուածը կրկին անգամ է պատահում, նշանակում ենք օր. այսպէս № 21. 1. Ա$^3$, 46$^{ա}$. այսպիսով թէ՛ նրա բովանդակութիւնն է աւանդուում եւ թէ՛ ցուցակի եւ ձեռագրերի գործածութիւնն է դիւրանում:

№ 18—20 շարականներ են. սրանց մէջ կան այնպիսի շարականներ, որոնք չկան տպագրում* եւ ընդհակառակը. Վերջին դարերում գործածութեան մէջ մնած շարականները որոշելու համար, մենք նշանակեցինք Տաթեւացու ժամանակ գործածուած շարականները դնելով նրանց առաջ հեղինակների անունները՝ ըստ Տաթեւացու Հարցմանց գրքի: Ձեռագիրները օրհնութեան կից քաղուածներ չունին եւ սովորաբար օրհնութիւնը բաղադրող երեք տունեան մասերից մէկը գործածուում է իբր Համբարձի կամ ճաշու:

Շատ աւելի հետաքրքրական են գանձարանները, № 21-ը աւելի հին է եւ մեծ մասամբ անեղծ է պահել գանձերը. իսկ № 22-ի եւ 23-ի գանձերը «խանգարիչ տաւից» Գրիգոր Խլաթեցու գրչի տակ՝ իր ուզած ձեւակերպութիւնն են ստացել: Այսպէս մեր «խանգարիչը» յաճախ յիշում է իր նախերգանք կաֆաների մէջ. «Բանս գրեցաւ Մեծահրաշի, |բանեալ բանիւ Մաթէոսի,| ի Գրիգորէ սրբագրեցի, |գրելով ըզսա ըստ պատշաճի,| որ ամենայն մարդ յաւժարի, |բախիւ ասել յաւուր տօնի.»| կամ գանձերի վերջում «Գանձիս ասողի եւ սրբագրողի, աղքատ Գրիգորի (տես. № 22. 5. Ա. 30$^{բ}$.) «Այլ եւ ստացողի եւ փոխարկողին մեղաց թողութիւն», եւ կրճատում է՝ մտքերը եւ ամբողջ բառերը առնելով կամ մէջ ընդ մէջ բառեր տողեր եւ տներ բաց թողնելով եւ կամ եզակին յոգնակի դարձնելով. բայց միշտ այնպէս՝ որ սկզբնատառերը կազմեն Գրիգոր, թէեւ առանց դրան եւս կաֆաների եւ վերջատողերի մէջ միշտ

* Այդպիսիների առաջ դրել ենք (:): Համեմատել ենք. 1875 եւ 1888. տպագիրների հետ. որոնք ամենից աւելի գործածական են:

յիշում է իւր անունը։ Անշուշտ այսպիսի խանգարիչներն են աղաւաղել Հնագոյն գանձերը (օր. Գրիգոր Նարեկացուն) ցանկանալով յարմարեցնել որ եւ է մի այլ ձայնի, եւ յետագայ գանձատացները ընդունել են այդ նորերը, որոնց թէ եղանակը եւ թէ իմաստը աւելի դիւրամատչելի էր իրենց. Այսպիսով երբեմն միեւնոյն Գանձը 3 խմբագրութիւն է ունեցել. (տե՛ս. № 21. 2. $Ա^{2}$, 87. № 22. 26.$^{ա}$ եւ № 23. $x^{15}$ 119$^{ա}$. այսպէս եւ Պետրոս Հայրապետի գանձը եւ այլն). Ամբողջական մի տող կամ գանձ յաճախ մի քանի մասերի է բաժանուում ուշ ժամանակի գանձարանների մէջ։ Յուսով ենք որ ցուցակս օգտաշատ կարող է լինել մանաւանդ գանձարաններով զբաղւողների համար։

Ձեռագրերը համարագրել ենք նախ ըստ բովանդակութեան բաժանելով 5 գլխ. մասերի. Ա. Ս. Գրոց. Բ. Եկեղեցական. Գ. Մեկնական-աստուածաբանական. Դ. Պատմագրական. Ե. Գիտական եւ Բանաստեղծական բաժինների։ Իւրաքանչիւր մասն եւս ըստ բովանդակութեան ստորաբաժանել ենք եւ ըստ այնմ ցուցակագրել։ Ժամանակագրական տախտակ չկազմեցինք, որովհետեւ դիւրին է այդ ընդհանուր տախտակից հանել։ Ձեռագրերիս մեծագոյն մասը ԺԶ—ԺԷ.-դ դարուցն է։

Հ. Խաչիկը ձեռագրերս մեծ մասամբ հաւաքել է Ղարաբաղի գիւղերից 20 տարուայ ընթացքում, ազատելով կորստեան վիճակից։ Ձեռագրերի այս ժողովածուն պէտք է կազմէ Արժ. Հօր ձեռագիր հարստութեան Ա. մասը. իսկ Բ.-դի մէջ կմտնեն այն բոլոր ժողովածուները որոնք հրատարակուեցան Արարատում (տե՛ս. 1898. Մարտ-Ապրիլ Դաւիթ Բաղիշեցի.) Բացի դրանցից պարսկերէն ձեռագրեր 30-ի չափ. որով պարսկերէն ձեռագրաց ժողովածուի հիմք կդնի։

Այս ամբողջ ժողովածուն Հ. Խաչիկը ցուցակի հրատարակութիւնից յետոյ պէտք է յանձնէ Մ. Աթոռի մատենադարանին. ուր եւ այժմ գտնուում են ժողովածուիս № 6. 7. 8. 80. 81. ձեռագրերը։

ԿԻԼԻԿԵՑԻ.



# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԱԽՏԱԿ

| Թիւ | Անուն | Ժամանակ | Գիր | Գրիչ | Տեղի | Ստացող | Մեծութիւն |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աստուածաշունչ | 1384 | բոլորգիր գեղ. | Յակոբ կրաւն. | — | Հեթում Յովհ. | 36×22×9.2 |
| 2 | . | 1610 | նոտր գիր գեղ. | Թորոս կրաւն. | Պաղեստին. Կիլիկիա | Գրիչը | 30.5×19.2×12 |
| 3 | Սաղմոս | ԺԶ. | բոլորգիր գեղ. | — | — | — | 11.2×8×2.5 |
| 4 | . | ԺԶ. | . . | — | — | — | 12.5×9×5 |
| 5 | . | 1677 | նոտրգիր գեղ. | Գրիգոր | Կեսարիա | Գրիգոր պանդ. | 14×10×4 |
| 6 | Աւետարան | 1057 | Միջ. Մեսր. երկաթագիր | Թովմաս երէց | Մելիտինէ | Գրիչը | 44×34.7×15 |
| 7 | . | 1111 | բոլորգիր գեղ | Զաքար. աբեղ. | Վան | Գրիչը | 16×11.5×6.5 |
| 8 | . | (ԺԶ | բոլորգիր | — | — | — | 15.7×9.5×6.5 |
| 9 | Աւետարան և Յայտնութիւն | ԺԶ | . | — | — | — | 12×8×5.5 |
| 10 | . | 1610 | . | Յով. աբեղայ | — | Տէր Նփրեմ | 20×17.2×5.5 |
| 11 | . | 1666 | . | Դաւիթ քհնյ. | Նրբնկանի գիւղ | Գրիչը | 12.5×9.2×4.5 |
| 12 | . | 1678 | բոլոր և նոտրգ. | Ամիր Սարգիս | Կ. Պոլիս ? | . | 20×14.2×7 |
| 13 | Գործք Առաքելոց | ԺԷ | նոտրգիր | Սարգիս կրօն | .. | Գրիչը | 19.5×12.7×2.5 |
| 14 | Թ. Պաւղոսի առաքելոյ | 1635 | . | Սարգիս | Համբորիանդա. | — | 19.6×13.2×5 |
| 15 | Ժամագիրք | 1618 | բոլորգիր գ. | Գրիգոր երէց | Թոխաթ | Սարգիս վրդ. | 8.6×6.5×5 |
| 16 | Ճաշոց | ԺԶ | . | — | — | Յոհաննէս կրօն. | 27.5×18.2×16 |
| 17 | . | . | . | Աւետիս | — | — | 40×26×8.5 |
| 18 | Շարական | . | . | — | — | — | 15×8.5×7 |
| 19 | . | 1649—50 | . | Աւետիս Որոտ. | — | Գրիչը | 13×10×5.5 |
| 20 | . | ԺԷ | . | — | — | — | 11.6×10.5×5 |
| 21 | Գանձարան | 1536 | . | Յովհաննէս քհ. | Կրծանիս | Գրիչը | 27×18.5×5 |
| 22 | . | ԺԶ | . | — | — | — | 17.5×13.2×6.5 |
| 23 | . | ԺԷ | . | Յովսէփ | — | Սարգիս երէց | 18×13×6 |
| 24 | Նոր տաղարան փոքրիկ | 1832 | . | — | Ս. Էջմիածին | — | 19×12×2 |
| 25 | Տօնացոյց և Ժամագիրք | ԺԶ | . | — | — | — | 9×6.6×4.5 |
| 26 | Պարզատումար | ԺԵ | . | — | — | — | 12.5×9.8×2.1 |
| 27 | Տօնացոյց և տոմար | ԺԶ | . | — | — | — | 13.7×8.2×5.8 |
| 28 | Տօմար | ԺԷ | և նոտրգիր | Աղաբիա և Յովհ. Ջուղայեցի | — | — | 11.8×9×4.8 |
| 29 | Մայր Մաշտոց | ԺԵ | . գ. | Անանիա կրօն. | — | Գրիչը | 26.4×17.2×6.8 |
| 30 | . | 1341 | . . | Սարգիս եպսկ. | — | . | 12.5×10.54.8 |
| 31 | . | 1564 | . . | Աթանաս | Գետամէջ | Յովհաննէս քհ. | 16×10.5×4.6 |
| 32 | . | 1621 | . . | Տէր Մելքիսեթ | Նաստաթէ | Սարգիս Սրկ. | 18.2×11.7×4 |
| 33 | . | 1654 | . . | Մարկոս քհն. | Ս. Սարգիս | Գրիչը | 16.7×12.7×4 |
| 34 | . | 1657 | . . | . | Դերջան-Բագառիճ | . | 30×14×4.2 |
| 35 | . | 1665 | . . | Պաղդասար դպ. | Հարատ գիւղ | . | 15.5×11.5×4.2 |
| 36 | . | 1683 | . նոտրգիր | Մհտսի. Յակոբ | Շատկու. անդպ. | Մատթէոս քհ. | 19×13×4 |
| 37 | . | 1690 | . գ. | Յակոբ դպիր | Ակուանք բդրչի. | Գրիչը | 18.9×14×4 |
| 38 | . | ԺԷ | . և նոտրգիր | — | — | . | 13.6×12.2×5.5 |
| 39 | . | 1834 | . | Գասպար քհն. | Թովլար գիւղ | Տէր Ոսկան | 21.5×16.5× 2 |
| 40 | Պաւղանդագիրք | 1704 | նոտրգիր | Ներսէս վրդ. | Ս. Յակոբ Երզմ | Գրիչը | 19.2×13.6×0.5 |
| 41 | . | ԺԸ | . | Աթանաս վ. | — | Գրիչը | 20.1×13.5×2.5 |
| 42 | Կանոնագիրք | 1625 | բոլորգիր | Յովհան. երէց | — | . | 12.7×9.5×4.6 |
| 43 | Աղօթագիրք | 1577 | . գ. | Ներսէս երէց | Ս. Սարգիս | Կարապետ և Յովհան. երէց | 22.6×17×7.5 |
| 44 | Աղօթք բժշկարան | ԺԷ | . . | Շահրիպեկ | — | Յովհաննէս կրօն. | 10.2×7.5×1 |
| 45 | . | ԺԸ | նոտրգիր | — | — | Գրիչը | 10.5×8.5×1 |
| 46 | Կիպրիանոս | ԺԹ | շեղագիր | — | — | — | 11×8×1 |
| 47 | Վարք հարանց | 1422 | բոլորգիր գ | Ղազար Դրիմ. | Տրապեզ (Տրապիզոն) | — | 18.5×14×6.6 |
| 48 | Վկայաբանութիւն և այլն | ԺԶ | . . | Մանուէլ | — | Գրիչը | 13.8×9.8×2.5 |
| 49 | Վ. հարանց | ԺԸ | նոտրգիր | — | — | Յովհաննէս | 13×9.5×4.2 |
| 50 | Կտակ մեծի Ուրբաթու | 1751 | . | Աբրահամ վրդ. | — | — | 17.4×10.5×0.6 |
| 51 | . . . | 1861 | . | Իսահակ Մ. | — | Գրիչը | 22.7×18×0.5 |
| 52 | Մեկնութիւն գործոց առաքելոց և այլն | 1098 (? | բոլորգիր | Վարդապետանց Կիրակոս վգ.(?) | — | Գրիգոր տէր-Գասպարեանց ա-ը Յովհաննէս ալքսանդրայը | 24.7×16.9×7.1 |
| 53 | Մեկն. Աւետարանին Ղուկ. | ԺԳ | . . | — | — | — | 19.6×14×5 |
| 54 | Լուծ. դժուարիմաց բանից | 1414 | . . | Մկրտիչ կրաւն. | Յուսկայ որդի | Մկրտիչ վրդ. | 18×14×6 |
| 55 | Թաղուածու Մատթէոսեան աւետարանի | 1615 | նոտրգիր . | Յակոբ երէց և Թորոս կրաւ. | — | Գրիչները | 19×17×8.5 |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 56 | Բաղդատութիւն Մատթէոսեան աւետարանի | 1691 | նոտրգիր | Իգնատիոս վրդ. | Թոխաթ (?) | Գրիչը | 20×15.5×5 |
| 57 | Գիրք Վկայից | ԺԷ | բոլորգիր | Յակոբ երէց | Ս. Էջմիածին | » | 17.5×12.2×2 |
| 58 | Մեկնութիւն պատարագի | ԺԶ | » | Յովհաննէս վրդ. | — | » | 15.5×9×2.5 |
| 59 | Յղ. երկնային քահանայապետութեան | ԺԷ | » | Աւետիս վ. (?) | Ս. Էջմիածին (?) | Գրիչը | 18.2×13.5×4 |
| 60 | » » » | 1769 | նոտրգիր | Մինաս վ. Խաչատուր վ. | » | ա. » | 21×23.5×4 |
| 61 | Գիրք հարցմանց | 1405 | բոլորգիր հին | Սիմէոն և Գալուստ վ-ք. | Նեռսաթէ | Երեմիա վրդ. | 20×15×5 |
| 62 | » » | 1662 | » գ. | Ալեքսիան | Նոր (?) աշէնիկ | Եսայի վրդ. | 21.6×18.6×7.5 |
| 63 | Գիրք Մոլութեանց և առաքինութեանց | ԺԶ | » | Յովհաննէս վ. | — | — | 26×19×9 |
| 64 | Քարոզագիրք | 1676 | » » | Հեղինէ և Մարինոս վ. | — | Մեսրոպ վրդ. | 24×18.2×8 |
| 65 | » | ԺԵ | նոտրգիր | — | — | — | 15.5×10×7 |
| 66 | » | ԺԵ | » գ. | — | — | — | 21.5×15.4×5.5 |
| 67 | » | ԺԷ | » » | — | — | — | 26×18.2×7 |
| 68 | » | ԺԸ | » | — | — | — | 15×10.7×2.5 |
| 69 | » և հատ. | ԺԹ | շղագիր | — | — | — | 20×15.4×6.3 |
| 70 | Սանդուղք աստուածային կէից | 1329 | բոլորգիր | Հայրապետ և Թորոս վ-ք. | Փասայ վանք | — | 16.8×12×11 |
| 71 | Ժողովածու վկայութեանց | ԺԶ | » | Ստեփաննոս | — | Մելքիսեթեկեան | 15×9×3.5 |
| 72 | » » | ԺԸ | նոտրգիր | — | — | — | 15.5×9.4×1 |
| 73 | » » | ԺԷ—ԺԹ | բոլորգիր նոտր և շղագիր | — | — | — | 20.4×14.7×5.7 |
| 74 | » » | ԺԸ—ԺԹ | նոտրգիր | Փիլիպպոս գր. և այլն | Դաւրէժ եկն. | — | 19.5×15×2.5 |
| 75 | Մեկնութիւն և ընդդիմախօսութիւն | ԺԹ | բոլորգիր և նոտրգիր | - | — | — | 17.2×10.7×0.5 |
| 76 | Բան մարգարէի | ԺԸ | նոտրգիր | Յովսէփ Ջահանգուլ | — | Գրիչ | 10.2×7.6×4 |
| 77 | Սամուէլ Անեցի | 1345 | բոլորգիր հին | Հայրապետ կրօնաւոր | Ուռընկար | Յովհաննէս վ. | 16.8×12.3×5 |
| 78 | » » և Ն. | 1624 | նոտրգիր | Ներսէս դպրապետ | Կամենից | Եփրեմ վ. | 19.4×15.6×2.5 |
| 79 | Դաւիթ Բաղիշեցի | ԺԷ | բոլորգիր | — | — | — | 21.2×6.5×1.5 |
| 80 | Մովսէս Խորենացի և Եղիշէ | ԺԷ | » | Մարգար | » | Յովհաննէս | 16.7×11.2×4 |
| 81 | Մովսէս Կաղանկատուացի | 1664 | » | Սիմոն | Ամասիա | Տէր Բարսեղ արքեպիս. | 17×1.54×4 |
| 82 | Գիրք պիտոյից և այլն | 1662 | նոտրգիր | Իգնատիոս | Երից մանկանց վանք | Գրիչը | 14.7×8.8×7 |
| 83 | Ժողովածու | ԺԹ | շղագիր | Առաքել Վ. Կոստանեան | Գտչոյ վանք | » | 17.4×10.5×5 |
| 84 | Երգք Դաւթի | ԺԶ | բոլորգիր | Յովհաննէս և Ստեփաննոս | — | » | 14.5×10×4.9 |
| 85 | Ժողովածու | 1655 | նոտրգիր | Յակոբ Երզնկացի | Ս. Սարգիս (Ագահան (?)) | Միխայէլ խոջայ Ջուղայեցի | 14×9.5×6 |
| 86 | Վերլուծութիւն ի Ներածութիւն Պորփիւրի | ԺԸ | » | — | — | — | 18×10×5.5 |
| 87 | Տեսականփիլիսոփայութիւն և այլն. | ԺԹ | » | Յովսէփ վ. | Ս. Էջմ. (?) | Գրիչը | 24×16.5×2.8 |
| 88 | Հոգեբանութիւն | 1668 | » | Ստեփաննոս Իւլովացի | » | » | 18×12.5×2.8 |
| 89 | Բառարան | ԺԷ | » | — | — | — | 10×7.6×5.3 |
| 90 | Բառգիրք և այլն. | ԺԷ | նոտրգիր | Մկրտիչ կրօն. | — | — | 15.2×10.1×5.2 |
| 91 | Քերականութիւն | ԺԵ | բոլորգիր | — | — | — | 18×12.7×5.8 |
| 92 | » կամ Արտաքնոց | ԺԷ | նոտրգիր | Յովհաննէս կրօնաւոր Դաւիթ | Ջուղա (?) | ա. Գրիչը | 14.7×10.3×5 |
| 93 | » | ԺԷ | » գ. | — | — | — | 14.5×8×5 |
| 94 | Հոգեմարան | ԺԸ | » | Սահակ | — | Գրիչը | 16×10.5×0.5 |
| 95 | Ճառմի | 1464 | բոլորգիր » | Ստեփաննոս ար | — | » | 17.5×12.8×5.5 |
| 96 | Բանք չափաւ | ԺԷ (1647 ?) | » » | — | — | — | 14.5×7.5×4 |
| 97 | » | ԺԷ | նոտրգիր | — | — | — | 12.2×[illegible].5×5 |
| 98 | Պաղեստին | 18[illegible]5 | » | Մովսէս Սրապեան | Շուշի | Գրիչը | 17×10.2×0.2 |
| 99 | Մահ Աբէլի | ԺԹ | » | — | — | — | 17.2×10.7×04 |
| 100 | Բանք չափաւ յէջմիածին | ԺԹ | շղագիր | — | — | — | 17.3×10.5×02 |
| 101 | Աղօթագիրք | ԺԸ | | — | — | — | 17.5×10.6×2 |
| 102 | Ժողովածու | ԺԹ | նոտրգիր | — | — | — | 19.5×15.5×2 |

# ԿՐՕՆԱԿԱՆ ԲԱԺԻՆ

Թիւ. № 1. ԱՆՈՒՆ Աստուածաշունչ. ՆԻՒԹ. Թուղթ. ԿԱԶՄ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. Վաւ. թղթերը կարկատած են. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 376—377ա. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 36×22×9,2. ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն. 25×7,9. ԹՈՒՂԹՔ. 567. ՏՈՂՔ. 52. ՎԵՐՆԱԳԻՐՔ. Կարմիր թանաքով. ԳԻՐ. բոլորգիր գեղեցիկ. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Թռչնագիր, մարդագիր, երփանկար. մանաւանդ 3ա, 378ա. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. 3ա, ձուաձեւ ծաղկազարդ, 23,5×2,6 գեղեցիկ. սրա նման 378ա, կարմիր, կապոյտ, սեւ, ոսկեզօծ եւ կանաչ թանաքով. 2-ն եւս եղծուած. մնացածները՝ կարմիր եւ կապոյտ թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 2բ, Աստուած ձեռնատարած նստած, 2 կողմը հրեշտակներ, երանգիցգած թեւաւոր կենդանիներ զանին լծուած. աւելի ցած Մովսէս նստած գրում է «Ի սկզբանէ արար Աստուած.», 377բ, 4 աւետարանիչներ քառակուսի շրջանակներում (երկ-երկու). գրում են իրենց Աւետարանները: ԽՈՐԱՆՔ. ԹՂ. 3ա, գեղեցիկ. 19×14 378ա. քառակուսի շրջանակների մէջ ծաղիկներ. 105բ, 248բ, 389ա, 397ա, 408ա. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 22բ, 40բ, 52բ, 70ա, 94ա, 118ա, համաբարբառի 373—375ա, կարմիր եւ կապոյտ գոյնով: ԳՐԻՉ. Յակոբ կրաւնաւոր (նմրգրող. ստացողը.) ՍՏԱՑՈՂ. Հերում—Յոհաննէս. ԺԱՄԱՆԱԿ. ՊԼԳ.—1384. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. 352ա. ստորին լուսանցքում. «Ցայս գլուխս կուսկենոս մռ. ի Դանիէլ զառաջին (իճ.) ու շուշանն ի ժԳ. համարն մռանցին (այսինքն սկսիլ Բ-դից. յամին երրորդի թագաւորութեանն Յովակիմայ.» ՑՈՒՑԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. 234բ, 269ա, 396բ, 544բ, 566բ, 567բ.

5ա—83ա Մովսէսի հնգամատեանը, 84ա—93բ Յեսու Նաւեայ, 94ա—102բ Դատաւորք. 103ա—104ա Հռութ. 105բ—152ա. Դ. Գ. Թագաւորութեանց. 153ա—176ա. Բ. Մնացորդաց, 176բ—186ա. Բ. Եզր. 186բ—191բ Նէեմի, 192ա—196ա Եսթեր, 196ա—201ա Յուդիթ. 201բ—204բ Տուբիթ. 205բ—234բ Գ. Գ. Մակաբայեցւոց, 235ա—244բ Յոբ, 248բ 269ա Սաղմոս, 270ա—279ա Առակք Սողոմոնի, 280ա—283ա Ժողովող կամ Եկլեսիաստէս. 283բ—4բ Երգ Երգոց, 285բ—290բ Իմաստութիւն Սողոմոնի, 291բ—309ա Մարգարէութիւն Եսայեայ. 310ա—329բ Գիրք Երեմիա մարգարէի, 329բ—330ա Բարուք. 330ա—331բ Ողբ Երեմիայի, 332բ—350ա Եզեկիէլ, 351ա—358ա Դանիէլ (6 տեսիլ.) 358բ—372բ 12 փոքր մարգարէներ (Ամովս. Միքիա. Յովէլ. Աբդիու, Յովնան Նաւում. Ամբակում. Սոփոնիա. Անգէ. Զաքարիա. Մաղաքիա.) 373ա—375բ համաբարբառ, 378ա—508ա 4 աւետարանիչներ, 509ա—519ա Գործք Առաքելոց, 520ա—526ա Թուղթք Կաթողիկեայք (Ա. Թ. Յակոբու. Բ. Թ. Պետրոսի. Գ. Յովհաննու, Ա. Յուդայի.) 526ա, Աղերս Եւթաղի, 531ա—560ա Թուղթք չորեքտասան Պաւղոսի, (Առ Հռոմայեցիս, Ա. Առ Կորնթացիս Գ. իւր պատասխանով) Առ Գաղատացիս. Ա. Թուղթ առ Եփեսացիս. Ա. Առ Փիլիպեցիս. Ա. Առ Կողոսացիս Ա. Առ Թեսաղոնիկեցիս Բ. Առ Եփրայեցիս Ա. Առ Տիմոթէոս Բ; Առ Տիտոս Ա. Առ Փիլիմոն Ա. 560բ Յայտնութիւն Յովհաննու. 565բ. Հանգիստ Յովհաննու:

Իւրաքանչիւր գրքից և թղթից առաջ կայ մի յառաջաբան (երբեմն նաև նախադրութիւն է կոչւում) ուր խօսւում է գրքի ծագման, հեղինակի, ժամանակի և անուան մասին: Դրան յաջորդում է մի ցանկ գլխոց՝ ուր առաջ է բերւում իւրաքանչիւր գրքի բովանդակութիւնը:

507ա Յովհաննու Աւետարանի վերջում «Իւր կնոջն չնացելոյ.», 507բ Աւետարան ըստ Մարկոսի «Յարուցեալ Յիսուս առաւօտուն. որ երթայք զհետ նոցա». Արխտոն երէցն յաւելուածը. սրա տակը աւելացրած է. «Զայս յիշատակ բանի ընկալաւ եկեղեցի յԱստուծոյ աւետարանէ, բանիւ Պաղեստայ ումեմն՝ Յոհաննու աշակերտի, որ և

յետոյ հերձուած խաւարեցաւ և խոտեցաւ։ Եւ է կարգ բանին ՑԿ և Զ. գլխի այնմ բանի որ ասէ, քննեա՛ և տե՛ս զի մարգարէ ի Գալիլեէ ո՛չ յառնէ։ Եւ սերբէ առացեալս։

*Գրքերի վերջը եղած ոտանաւորներ.*

1. Ա. 20բ, Աստուած անեղ անմահ և տէր յաւիտենից, սուրբն անվնաս ի մէջ անձից (11. երկտ.)

Ա2 39ա, Տէ՛ր որ ի տեղ . . կառուք ամպոյ (6 տ.)

Ա3 51ա, Քրիստոս Փրկիչ Աստուածորդւոյն . . փրկեսցուք ի հրոյն կիզման (9 տ.)

Ա4 83ա, Զարհուրիմ ի քոց փառաց . . Եւ ի գործ զաւրացուցես. (4 տ.)

Ա5 103ա, Փրկիչ անուն և դատաւոր. Գալոց է դատաւոր. (4 տ.)

Ա6 152ա, Թագաւորք երկրայինք . . . փառս առաքեն ի վեր հրեղէնքն. (14. տ.)

Ա7 186ա, Է այս խնդիր ի գիրս Եզրի . . ընդ նոսին մասն լիցի. (6 տ.)

Ա8 191բ Արար և այլս այս . . ի մէջ կատարեսցին (7 տ.)

Ա9 234բ Եղիազար Մակաբէացին . . ըղխորհուրդ խաչին. (3.)

Ա10 244բ Զօ՛վք յիշեսցուք զերանելին . . ինձ պարգևեա յապագային (20 տ.)

2. Ա.. 245ա, Երանելւոյն Եպիփանու եպիսկոպոսի Կիպրացւոյ ՑՂ. սաղմոսարանի յառաջաբանութեանց ասացեալ. «զամ ինչ զոր ասաց հայրն մեր Աթանաս զոր լուեալ էր նմա ի հոգևկիր ծերոյն՝ բաւական համարեցայ պատմել փոքր ի շատէ և գնել ի վերայ առաջաբանից։ Արդ որ ասէ Սաղմոս որդւոյն Կորխայ, և կամ իմաստութիւն զբանին որ մարգարէանայր Դաւիթ, որդիքն Կորխայ զատագլուխ եղեալ, զեղանակս ձայնիցն նուագէին գեղեցկապէս։ Զայն կոչէ իմաստութիւն որդւոցն Կորխայ։ Եւ որ ասէ Սաղմոս յԱսափ և յԻթովմայ և յայլս . . . . ասքս առաջնորդք դասու պարուն, որք իւրաքանչիւր նուագարանաւք նուագէին և ձայնիւք առաջնորդէին զոր Դաւիթ ասացեալ էր։ Է՛. զի Դաւիթ ընդ նոսա երգէր. զի զուտեալն ի Դաւթայ առանց նորա երգեալ նուագէին . . իսկ որ ասէն թէ հանգիստ յորժամ ձայնիւ լռկ նուագէր և սաղմոսէր (առանց քնարի) և կամ առանց կաքաւելոյ, քնարահարութեամբ միայն և կամ միով իւիք յեղանակաւ. զայն կոչէ հանգիստ։ Իսկ որ ասէն թէ Սաղմոս յարձանագիր, այս է . . զի որպէս յարձանի գրեալ մարգարէացաւ զյաղթութիւն Տեառն . . . Եւ որ ասէ թէ Սաղմոս ի կատարած վասն հնծանաց . .: Այն է որ ի վաղճան ժամանակաց կատարեցաւ յաղթութիւնն Քրիստոսի առ թշնամին Աստուծոյ. և ամենեքին ազատեալ մինչև խաղաղ զազգս մարդկան ի ընութենէ սատանայի . . . : Իսկ որ վասն ժառանգաւորին ասէ . . ժառանգաւոր կոչի Բանն Աստուծոյ այսինքն միածին որդի նորա, և միաբանեալք եկեղեցի իւր կոչեն ժառանգաւորք . . . առանց անուան ԺԶ. Մովսէսի Ա. աւելուեա Է. աշտնեանց ԺԳ։

3. Ա. 246ա Դարբի փիլիսոփայի ՑՂ. սաղմոսացն Դաւթի. «Արդ առեալ ասէ Սամուէլ եղջիւր իւղոյն։ Արդ ամենայն սաղմոսացն պատճառք ինքն Դաւիթ է աքանչելին և ի նմանէ այլք պայծառացան»:

4. Ա. 246բ Արսենիոսի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոյ զամենայն սաղմոսացն Դաւթի զներքունակ միտսն զանեալ և յայտնի ցուցեալ «փոյթ յաւժարութեան եղեալ ի մեծ իմում ամենայն գրոց որբոց մեկնութեան հասանել . . Աւրհնեալ որ զատ յանուն Տեառն. և աւրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն.»:

1. Ժ. 269ա Որ զԴաւիթ Ցեսսէածին . . հաղորդ գտայց պատարագին (19.)

5. Ա. 279ա Բանիդ ընդ հաւր էականի . . տառխս գրողի տէր Ներսեսի (5 տ.)

Ա2 283ա Նորոգ ծնունդ . . սատեալս առնա գնաս (Ներսես)

Ա3 290բ Աստուածեղէն հոգւոյն ի սմա՛ խաղաղութեան անուն արքա . . Քոյդ կոչելով աստուածակառ(՞), յանհիւթական տարեալ քաղաքք. (ալք.)

1. Ա11 350ա Զոր մարգարէք . . վայելելոյ գտցուք արժան. (11 տ.)

Ա12, 358ա, Պաղատանաւք մարգարէքն . . ընդ ամպըս տեառղին. (3.)

Ա13, 372ա Հայցմամբ մարու յորովայնին . . համառիպ գեղոյ նորին, (10 տ.)

A. a, 566ա Փառք ամենասուրբ . . վասն զի եղև ուսուցումն հոգեշունչ առուխս ձեռամբ մանկահասակ . . կուսակրաւն խա-

հանգոյին Յակոբ կոչեցելոյ․․ ի թվլին Հայոց ՊԼԳ։

B. a. 566բ, Փառք․․ որ ետ կարողութիւն պարոն Արքակին առնուլ ի հալալ վաստակոցն և եդ յիշատակ սրբոյ Սարգսի եկեղեցւոյ և իւր ծնողացն Աստուածատուրին և մօրն Եղիսին և իւր եղբայր Եկիրակին և կողակցին․․ Եղիսային․․․ Արդ գրեցաւ թվլին ՌՄԺԲ ի հայրապետութեան Ս․ Էջմիածնայ Սիմէոն կաթուղիկոսին և առաջնորդին մերոյ Թաթէոսի առաքելոյն, Եսայեայ վարդապետին և օրհնեալ քաղաքի Եայու Ստեփաննոս վարդապետին ի թագաւորութեան Պարսից Ջանֆարխին և տեղւոյս տէր և իշխան Անմաս բէկին․ գրեցաւ ընդ հովանեաւ սրբոյ Սարգսի։

C. a. 567բ, Յիշատակ է Ասվայծայ-շունչս Հուէմի որդի Թաթոսին, որ առեց ուր հալալ վաստակովն․․ ոչ թէ զայս գիրս գրեցի, այլ զիմ գրեչս փորցեցի, գրեչս սուտ, թանաքս մուր, ծեռքս գրէ զառնայ ի հող ծեռքս գնայ գիրս մնայ, ամենայն մարմինքս ի հող դառնայ․․։

Д. a. 2ա Համար ֆռանգին, զոր Զաբիւսr կոչեն, որ ի վերայ ամենայն Աստուածաշնչին ճապղած է, ես Հերումս ու եւ Յոհաննէս կոչիմ, բազում աշխատութեամբ փոխեցի առ ի գիւրաւ գտանելոյ եթէ բան ինչ եղէ յերկուցունցն միջի։ Արդ․․ ուր ֆէ և ուայ կա ֆռանգին է։

Թիւ. 2. ԱՆՈՒՆ. Աստուածաշունչ. ՆԻՒԹ. հաստ թուղթ. ԿԱԶՄ. 30×20×12. տախտակակազմ կաշեպատ, ա եւ բ կազմերը խառնակուսի ձեւեր, մէջ տեղում կաշեխանդակներ ունին. ՀԱՆԳԱՄԱՆՔ. չկայ. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 1—3, ՌԺԲա, ՌԺԳ2—Դա, ՌԺԵ2—Զա, ՌԺԷ2—Ըա, ՌԺԹ2—Ռա, ՌԻԳ2, ՌԿՌ, ՌԿԵ, ԶԼԹա, ՊԺԲ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 30.5×19.2. ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն 21×5.5. ԹՈՒՂԹՔ. 820. ՏՈՂՔ. 41. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր բանաձով Գիր. Նոտրգիր շատ գեղեցիկ. ԵՐԿ. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Ոսկի եւ գեղեցիկ զանազան հնազարդ պատկերաւոր թռչուններով. ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ. Գա 25×3.5. գեղեցիկ, մանաւանդ Աւետարանների խորանների մօտ եղածները, ծաղկաձեւ, թռչնազարդ, ոսկեզօծ, կանաչ, կարմիր, դեղին, կապոյտ եւ դեղին գոյներով։ ԽՈՐԱՆՔ ԹՂ. Գա. 15×12.5, մէջտեղ Աստուծոյ պատկերը՝ 4 կողմը ծաղկազարդ. այսպէս գեղեցիկ եւ գունաշատ ՌԿԴա ՌԽԷա (շատ գեղեցիկ), ՌԿԲա, ՌՁՁա. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. Աա, Լէա, ՃԿԵա. ՆՀԵա. ՌԺԱ2—ՌԻԱա տարբեր ձեւի առաջին խորանի մէջ Ս. Եւսեբի. Բ-ղի մէջ Ս. Կարպիանոս. Գ-ղ եւ Դ-ի մէջ առիւծ, ՁՁ2 եւ այլն. ԳՄԻՉ. Թարոս կրօնաւոր. ՏՏԱՑՈՂ. Գրիչը. ԺԱՄԱՆԱԿ. ՌԾԹ—1610. ՏԵՂԻ. Պաղեստին, Կիլիկիա. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. Ստորին լուսանցքում յաճախ յիշուում են այսպիսի նախադասութիւններ ՆԾԲա. «Ա՜յ վայ. կաղ իշով մինչև. յերբ հասից ի տեղի»․ ՆԿԵ. «վիշտ սեռական վիշտ տեսական ոչ ի գետց ոչ յաւազակաց»։ ՅԻՇԱՏԱԿ. Դբ, ԼԳա, ԿԲա. եւ այլն. գրեթէ իւրաքանչիւր գրքի վերջում։

1. Ա. 4. Վանական վարդապետի տառացեալ, համեմատութիւն Հին և Նոր Կտակարանաց որ․ «Երկինք—եկեղեցի սուրբ, Արեգակն Քրիստոս և Աւետարանն, լուսին—օրէնքն հին, Արուսեակն—Յովհաննէս Մկրտիչն, ընդհանուր աստեղք—բոլոր քրիստոնեայք. Երկինք և երկիր—Յիսուս Աստուած և մարդ, չորք տարերք—չորեքենիւթեայ բնութիւնն, ՅԿԵ. օր տարւոյն—զօդուածքս ՅԿԵ. Բժ ամիսք—Բժ անդամք. Է-աւր շաբաթու—Է զգայութիւնքս. Դրախտն—Եկեղեցի. ծառն Կենաց—Խաչ կենսատու. Գիտութեան պտուղ—քացախն և լեղին. և այլն։

7ա (Ցանկ գրոց Հնոյ Կտակարանի.) Ծ. բաժանմունքով, № 1-ից սա տարբերում է գրքերի դասաւորութեամբ և յաւելուածներով. որս մէջ Յովբայ գիրքը ընկնում է մարգարէութիւններից անմիջապէս առաջ. Առաջինը բաժանում են 3 գրքի. Մարգարէութիւնները վերջանում են Դանիէլի, Երեմիայի (մարգարէութիւն, ողբ և աղօթք. «Յիշեա Տէր որ ինչ անցք անցին ընդ մեզ․․») և Եզեկիէլի գրքերով։ ՌԺԱ2. Ցանկ Նորոյ Կտակարանաց. Նոյնն է ՁԼԹ2 ցանկ երրորդ. սկսեալ Գծան թղթոյն. Պօղոսի. առ Կորնթացիս որս մէջ. Բ. թուղթ։ Աւելի ունի Զօրհնեաց աղօթքը (կանոն.) Քարոզ պատուիրան. Կանոն ասնալուայի, թուղթ Կիւ(ր)ղի եպիսկոպոսի Երուսաղէմի, Աղօթք պենտակոստէին, Գալուստ Հոգւոյն սրբոյ, աստացեալ Ներսէսի արքեպիսկոպոսի Լամբրոնի։

Բացի առաջնից՝ միւսները պակասում են դժբաղդաբար։ Ունի «Իւր կնոջն շնացելոյ» և Արիստոն երէցի յաւելուածը՝

այստեղ-արդէն Մարկոսի վերջում ՈԾԹ2. Նախադրութեանց մասին տես № 1. Հին և Նոր (Փռանկաց) համարադրութիւն ունի միայն Նոր Կտակարանը:

A. a. ՈԺԱ¹ Փառաւորէ մարգարէն Աստուած զհոգի Տեառն Ներսէսի Լամբրոնեցւոյ, որ ի վերայ ամենայն յաւելուածոյ բարեացն զոր պարգեւեաց ազգիս մերում թարգմանութեամբ և մեկնչութեամբ բազմաց տառից, և զայս եւս շնորհելով մեզ ի միասին պհաւաքումն Աստուածաշնչիցս, նախանձ բարի արկանելով ամենեցուն, զի մինչև ցնա ոչ երևէր թէ լինել էր յազգիս մերում՝ և ի մերումս ժամանակի գրեթէ երկու կամ երիս միայն տեսաք յաւելեալք զնին նորա: Եւ տես զատարատմութիւն ազգիս, զի այժմ հարիւր ամ (?) կամ թէ եւ աւելի ի նմանէ մինչ առ մեզ և այսչափ գան անցեալք ոչչափ ասացաք: Եւս առաւել զարդարեաց Աստուած զհոգիս սորա թարգմանչացն՝ որք աստուածաբար երախտաւորք են ազգիս Հայոց՝ որք բազում երկամբք և աշխատութեամբ այսպիսի անկողոպտելի գանձ պարգեւեցին մեզ..:

B. ՇԿ² Ողբերգակ՝ թէ պարտ լեցի, յայժմու ժամուս մեզ պիտանի, մանաւանդ թէ եւ յաւէտ՝ քան թէ յանցեալն և յապառնի, զի ընդ մարմնոյ վէշտ վատնգի՝ հոգւոյ յաւէտ տարածեցի. եկեղեցիք անփոյթ լինի, կարգք և օրէնք խափանեցի, յառաջնորդաց անփոյթ լինի, վրէժխնդիր ոչ գտանի, լրբին համարձակ անամօթի, սուտ յումեքէ ոչ լինելի, ոչ պատուհաս յանդգնողի, ակնառութենք յաղթահարէ և շողոքորթն առ ինք քարշէ. փառամոլըն տիրեցին, ուղիղքն ի յետս ընկրկեցին, թիւրեալն յօրէնսն պատուեցի, օրինապահն արհամարհի, աղգէտք յառաջեցին, ճշմարտախոհք ծաղր լինին. եկեղեցիք նսեմացին, պայծառութիւնքն ջնջեցին, քահանայք խղալեցին, և անպատշաճքն գործեցին. ժողովուրդք մոլորեցին և անսերունդք յարշըջեցին . . :

C. ՑՀԵ2. Սքանչելագործ տեսանդ բարի՝ ժողմ մեղաց մնեալս ոգի, Թորոս գրիչ այսմ տառի, խղճամ և զիմս կայ շղթայի . . : ՑՀԸ¹. Թղ. և ՇԸ. մասիս, Ե. Սաղմոսը սկսել է գրել:

Թիւ. № 3. ԱՆՈՒՆ. Սաղմոս. ՆԻՒԹ. մագաղաթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. լաւ չէ, ծակ, մաշուած եւ պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 11,2×8×2,5. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 7,2×5. ԹՈՒՂԹՔ. 239. ՏՈՂՔ. 17. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր թանաքով. ԳԻՐ. բոլորգիր գեղեցիկ ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. թռչնագիր, մարդագիր, զարդագիր, կարմիր եւ կապոյտ թանաքով. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. թռչնազարդ, ձուաձեւ, խորանազարդ, մարդանկար 60ա, 93ա եւ այլն. ԽՈՐԱՆՔ Թղ. 1ա ԿԻՍԱԽՈՐԱՆՔ Թղ. 93ա, 60բ. ԺԱՄԱՆԱԿ. (ԺԶ) ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. վերջից պակաս. ՑԻՇԱՏ. 239. (բերի. աղօթք.):

ԲՈՎԱՆԴԱԿ. ա. 232ա. Խոստովանութիւն Մանասէի թագաւորին. «Տէր ամենակալ . . .» (սկզբից բերի.):

բ. 233բ Աւրհնութիւն Դանիէլի մարգարէին եւ երից մանկանցն. «Աւրհնեալ ես Տէր Աստուած . . »:

գ. 236ա, «Աւրհնեալ ես դու Տէր Աստուած . . » «Աւրհնեցէք ամենայն գործք . . »:

դ. 237ա Աւրհնութիւն Աստուածածնին կուսին. «Մեծացուսցէ անձն իմ»:

ե. 238ա Մարգարէութիւն Զաքարիայի քահանայի. «Աւրհնեալ Տէր Աստուած . . »:

զ. 239ա Աւրհնութիւն ծերոյն Սիմէոնի. «Արդ արձակես Տէր . . »:

Թիւ. № 4. ԱՆՈՒՆ. Սաղմոս. ՆԻՒԹ մագաղաթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. ոչ այնքան լաւ, խոնաւութեան ազդեցութեան ենթարկուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 12.5×9×3 ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն 7.8×5.5. ԹՈՒՂԹՔ. 208.. ՏՈՂՔ. 17. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր թանաքով. ԳԻՐ. կանոնաւոր բոլորգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. զարդագիր, թռչնագիր. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. գեղեցիկ *եւ նուրբ թռչնանկար, մարդանկար եւ ծուածեւ նկարներ, կարմիր եւ կապոյտ գոյներով. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 8ա, 46ա, 76բ, 112ա, 147բ, 188բ. ԺԱՄԱՆԱԿ. (ԺԶ). ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. սկզբից եւ վերջից բերի. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ. Սկսում է ԼԴ Սաղմոսի 23-դ տնից «Զարթիր եւ նայեաց.» եւ վերջանում է Ամբակումայ մարգարէի Աղօթքով «Տէր զլուր քո լուայ . . »: Ունի ընտիր ընթերցուածներ:

Թիւ. № 5. ԱՆՈՒՆ. Սաղմոս. ՆԻՒԹ. թուղթ: ԿԱԶՄ. 14×10×4. կաշեկազմ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. վատ չէ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 14×10. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն

10,2×7. ԹՈՒՂԹՔ. 211. ՏՈՂՔ. 17. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր բանաձով. ԳԻՐ. նոտրգիր վարժ եւ գեղեցիկ. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. զարդագիր կարմիր բանաձով. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. կարմիր գծերով. կիսախորան եղած տեղերում կարմիր եւ կապոյտ, ծաղիկներ, բուսազարդ. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 21բ, 75ա, 99ա, 125բ, 148ա, 174բ, ԳՐԻՉ Գրիգոր. ՍՏԱՑՈՂ. Գրիգոր՝ պատանեակ. ՏԵՂԻ. Կեսարիա (Կապադովկիա). ԺԱՄԱՆԱԿ. ՌՃԻԶ.—1677. ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. 210բ. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ. Սկսում է Բ-դ Սաղմոսի (ընդէր խռովեցան..) 2-դ տնից «Եւ իշխանք ժողովեցան..»: Տպագրի 3-դ տնից սկսում է ուրա մէջ առանձին գլուխ. «Հանգիստ, այսինքն մտաց ինչ այլայլումն եւ կամ ձայնի փոփոխումն».. (տես. Աստուածաշունչ, Կ. Պոլիս 1895. 587ա), որս նման կան նաեւ այլ վերնագրեր: Տես № 3. ա. դ. ե. բ. գ. եւ Աղօթք իւրաքանչիւր անձին նուաստացելոց ի Քրիստոս. զոր արարեալ է Տ ե ա ռ ն Ն ե ր ս ի ս ի Հ ա յ ո ց կաթուղիկոսի.» «Հաւատով խոստովանիմ..» (24 տ.) 206ա:

A, a, 210բ. Փառք .. գրեցաւ հոգեւոր քնարս Դաւթայ մարգարէի ի սոյզ եւ ընտիր օրինակէ Գաւնեցւոյ ի թվին ՌՃԻԶ ամի մարտ ամսոյ ԻԸ. ձեռամբ մեղսամած եւ անարժան Գրչի Գրիգորի, ի մայրաքաղաքս Կեսարիա Կապադովկացոց, ի յաստուածաբնակ մէնաստանս սուրբ Աստուածածնայ եւ սուրբ Սարգսայ ի հայրապետութեան Տեառն Յակոբայ, ի խնդրոյ գեռաբողբոջ մանկանն Գրիգորի պատանեկի, ի վայելումն անձին իւրոյ եւ յիշատակ ծնողաց իւրոց, զոր Տէր Աստուած բարով վայելել տայէ մինչեւ ի խորին ծերութիւնն ամէն: Արդ երես անկեալ աղաչեմ .. յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զմեղաւոր Գրչակս Գրիգոր .. եւ զուսուցիչն իմ զտէր Մինաս երամիջս քահանային, որ առ Աստուած փոխեալ է.

Թիւ. № 6. ԱՆՈՒՆ. Աւետարան. ՆԻՒԹ. հաստ մագաղաթ. ԿԱԶՄ. 46×34×13. կաշեպատ. խախուտ կազմով. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ չէ, շատ երեսներ եւ պատկերներ եղծուած. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 12ա. եւ 75ա, 287բ. սրբանկներ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 44×34,7. ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն 30×9. ԹՈՒՂԹՔ. 287. ՏՈՂՔ. 20. ՎԵՐՆԱԳԻՐՔ. սեւ բանաձով. ԳԻՐ. Մեծադիր միջ-Մեսրոպեան երկաթ. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. գլխագիր երկաթագիր. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. աստղաձեւ, քառակուսի, խաչանման, ծաղիկներ, խորաններ, եռանկիւններ զարդեր, կարմիր, կապոյտ, սեւ մոխրագոյն գոյներով եւ իրենց երփներանգներով. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 6ա. Մարիամի ողջոյնը Եղիսաբեթին. երեւում է մի մարդ՝ որ տունն է ցոյց տալիս. 6բ. 3 մոգեր իրար ետեւից իշերի վրայ, ապա 3 ձի-եր. վերեւ աստղ. ներքեւ նորածին Քրիստոս մսուրի մէջ. Մարիամ Աստուածածին եւ 3 հովիւներ. 7ա, Յովսէփ Մարիամ եւ մանուկ Փրկիչը ձեռքը երկարացնում է Սիմէոն ծերունուն. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 1ա-5բ, համաբարբառի հայկական կանոնական եզրագիծ խորաններ կարմիր եւ կապոյտ գոյներով. ԳՐԻՉ. Թովմաս երէց. ՍՏԱՑՈՂ. գրիչը. ՏԵՂԻ.-Մելիտինէ. ԺԱՄԱՆԱԿ. ՆԶ—1057. ՅԻՇԱՏԱԿ. 12բ. 25բ. 32ա 75ա. 100բ. 126բ. 129բ. 142բ. (ջնջուած). 164ա. 238 (ջնջուած), 278ա. 280բ. մեծ մասամբ լուսանցքներում.) ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ. չորս Աւետարան երկրի յաւելուածը եւ իրք կնոջն շնացելոյ.

A, a, 287ա. Փառք .. ձեռամբ Թովմա երիցու .. քաղաքիս Մելտինոյ ընդ հովանեաւ (Սի)մէոն ծերունուն, եւ Աննայն. ապա մկրտութիւն Քրիստոսի. Յովհ. Քրիստոս. հրեշտակ: 7բ. Այլակերպութիւն. Յիսուս եւ 2 մարգարէները վերեւ, 3 աշ-երը նոցա ոտքերի տակը. ապա Յարութիւն Ղազարու, 8բ. Մուտն Քրիստոսի յԵրուսաղէմ աշակերտներ. Քրիստոս էշի վրայ, ազգները իրենց զգեստները փռելիս եւ ծառ. 8բ, վերջին ընթրիք, առաքեալները շրջանաձեւ նստած, 9ա. մատնութիւն, Զինուորուած մեծ բազմութեան մէջ Քրիստոս Յուդայի գրկում եւ եռեւ աշակերտները, 9բ. խաչելութիւն Տեառն, Մարիամ եւ Յովհաննէս. 10ա. Փրկչին տան-են գերեզման. 10բ. Համբարձումն ներքեւ աշ-եր. վերեւ 2 հրեշտակներ մի շրջանակի մէջ տան-են Քրիստոսին, 11ա. 4 աւետարանիչներ. 11բ. շղթայաձեւ խաչ եւ 4 կողմը Աւետարանիչներ, 12բ. Խաչը եւ տակը խաչ կապոյտ ֆոնի վրայ կարմիր գոյնով. 31×20. մեծութեամբ:
սրբոյն Գրիգորի ի թուականութեանս Հայոց ի ՇԶ. ի կաթողիկոսութեանն Տեառն Խաչիկա յորժամ ի Թաւրըզուրի վանսն էր .. յիշեսջիք զՄովսէս քահանայ հայրն իմ . . .

B, a. 75ա. . . Ես Կոսոմս ու Թուղիս, միաբանեցաք տուինք նորոգել աւետարանս

յիշատակ հօրդ մերոյ և ծնողաց մերոց և պապենաց մերոց Իհաննիսայ և որդոյ իւրոյ Աւհաննիսայ և Սերանիսայ և եղբարց մերոց տէր Թումա, Սարգսի, Գրիգորի, Խոճին, Եղիային, Ոսկանիսին, Թորոսին, Եղոսին, սերանիսին և Թորոսին. Վրթանիսին, Թատալուին, Թաթոսին, Պաւղոսին, Աւագին, Աւանիսին, Աստուածատուրին, Մաթէոսին, Դինիոսին. այլ Թորոսին (ջնջուածի վրայ գրած է Գալոսին), Յոհանին. Եւ մեծ տատն մեր Նիկարին և Մհերին, Գուլփաշին, Խանեաղին, Սիմին Սվլումին, Մահին, Սէհնումին.. յիշեցէք.. թվ. ՌՋ:

C. a, 126բ. . . Ցխսուսի ծառայ Մելքսոնս . . (գրեցի) որ մեր ինչ որ աւլաս կար ամէն առ Աստուած փոխվեցաւ, եւ մնացի մենակ ... թվ. ՌՄԻԷ էր. էն տարին որ մահըն եկաւ . . :

ԹԻՒ. № 7. ԱՆՈՒՆ. Աւետարան. ՆԻՒԹ. թուղթ. ԿԱԶՄ. 16·5×12·2×6·5 տախտակակազմ թաւշապատ. արծաթապատ ա-ի վրայ Քրիստոս խաչելոց ի ձեռին. 2 կողմը հրեշտակներ. ոտքերի տակ բաց գերեզման—արձանագրութեամբս. «Աւետարանս արծաթապատ եղեւ ձեռամբ Յովսէփ վարդապետի: Թվ. Հ. ՌՄԾԴ-ին»: Բ-ի վրայ Մարիամ Աստուածածին գրկին բազ. աջին զաւակն, ձախին Փրկիչը. Փրկչի ձախ ձեռքին աշխարհ, աջով խաչակնքում է: ՀԱՆԳԱՄԱՆՔ. վատ չէ. ՄԱԳ. ՊԱՀ. վերջին 2 թ-երը. «զետայանն հասեալ բարձի սայ ձիւնատաց (սաղ.) առ հայր վերացոյ զմեզ»․․ թերի սկզբից եւ վերջից. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 1ա, 6բ—7ա, 91ա, 148ա, 234ա—235ա. ՍԵՒՈՒԹԻՒՆ. 16×11·5, ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն 12·5×3·7. ԹՈՒՂԹՔ 303. ՏՈՂՔ. 21. ԳԻՐ. բոլորգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. մարդագիր, գազանագիր, թռչնագիր. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. մարդանկար, թռչնանկար, ծաղկեր. մուգ կարմիր. կապոյտ եւ դեղին գոյներով. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 7բ, 91բ, 148բ, 235բ. 4 Աւետարանիչները եւ նրա ցած գրիչն. Յովհ-ի առաջ Պրոխորոն, կանաչ, դեղին, կարմիր, սեւ վարդագոյն գոյներով. Մատթէոսի վերեւ գրած է. «Մատթէոս աւետարանիչ»․․ ոտքի տակ. «զՎարդապետ Բարսեղի յիշեա ի Տէր»: ԽՈՐԱՆՔ ԹՂ. 8ա, 92ա, 149ա, 236ա, այլ եւ այլ ձեւերով. 1բ-6ա. համաբարբառ. ա-ի մէջ Եւսեբի. բ-ցի մէջ. Կարպիանոս. ԳՐԻՉ. Զաքարիա արեղայ. ՍՏԱՑՈՂ. Գրիչը. ԾԱՂԿՈՂ. Գրիչը. ԺԱՄԱՆԱԿ. ՆԾԿ—1111. ՏԵՂԻ—Վան. ՅԻՇԱՏԱԿ. 7բ. 302ա.

Ա, a, 302ա. Փառք.. եւ.. Զաքարիա արեղայս.. կատարեցի զաւետարանս ի թուականութեանս Հայոց մեծաց ՆԾԿ ամին, յերկիրս Վասպուրականի, ի մայրաքաղաքն Վան կոչեցեալ, ընդ հովանեաւ Կարմրաւոր ս. Աստուածածնայ վանից. ի հայրապետութեան Տեառն Սարգսի կաթողիկոսի. և յաջորդութեան ս. ուխտիս Վարագայ Կարապետ արհեպիսկոպոսին և Գրիգոր վարդ-ին և ի եաւնութեան յաղթող իշխանին շահ Իսմայելին, և ի տեղապահութեան Համբարձումակերտեսւ. եղ(ի) յիշատակ ի դուռն Կարմրաւոր ս. Աստուածածնայ վանիցն:

Արդ.. վերստին կազմեցաւ.. ի ՌՄԾԲ. և ես (եառու ?) որդոյ Էջմիածնի Նուիրակ տեառն Պաղտասար քաջիմաստ վ-են. զի որում եառուր կազմել և արծաթապատ կոտաղել..:

ԹԻՒ. № 8. ԱՆՈՒՆ. Աւետարան. ՆԻՒԹ. բարակ մագաղաթ. ԿԱԶՄ. 14×10×6·5. սեւ կաշեպատ, կոտրած. ա-ի վրայ խաչ. բ-ի վրայ խաչեալ Քրիստոս. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 1—3ա, 4. 5բ, 6ա, 78, 8ա. եւ այսպէս մինչեւ 29բ, 33ա, 120ա, 176ա, 266ա, 326—7. ՍԵՒՈՒԹԻՒՆ. 13·7×9·5. ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն 9·2×2·5. ԹՈՒՂԹՔ. 327. ՏՈՂՔ. 24. ԳԻՐ. բոլորգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Մատթ-ի սկզբ-ը ոսկեգոյն եղջի մէջ, սեւ, կրկ. կէս. ոսկ. մարդագիր, գազանագիր, թռչնագիր. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. լաւ բուսականութեան նկարներ եւ ցեղ. ծաղիկներ. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 4բ. Աւետումն. ա. Կոյսը ծնկաչոք եւ հրեշտակ խօսելիս. 5ա. Մկր. Գաւառ. Պաղտ. Նուիրաբեր. - են մանկ. փրկչին. 6բ. Մարիամ Յովսէփ. Սիմէոն ծերունին Փրկիչը գրկին եւ Աննա. 7ա. Մկրտութիւն, 8ա, այլակերպութիւն, 9ա, յարութիւն Ղազարու, 10բ. մուտն յԵրուսաղէմ. 12բ, ոտնալուա. 13ա. մատնութիւն. 14բ. Փրկիչ ի Գողգոթա. 15ա. Քրիստոս խաչեալ. 18բ. յարութիւն. Մարիամ Աստուածածին եւ առաքեալներ եւ Քրիստոս եւ առաքեալներ, պատասան եւ 4 աւետարանիչներ սովորական դիրքով. ԽՈՐԱՆՔ ԹՂ. 34ա, 121ա, 177ա, 267ա, շատ ցեղ. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 20—29. համաբարբառ. ԺԱՄԱՆԱԿ. ԺԶ. ԴԱՐ. 325բ. «Թումա վրդ.»:

ԹԻՒ. № 9. ԱՆՈՒՆ. Աւետարան եւ Յայտնութիւն. ՆԻՒԹ. բարակ թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. վատ չէ. ԴԱՏԱՐԿ ԹՂ. 80բ, 101ա, 103ա—104ա,

ձայն շատ ընտիր եւ արտայայտիչ նկարներ. 44բ—45ա. նախապետներ. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 2բ. Աւետումն. Աստուածածին ծնկաչօք, վերեւից լոյս, առաջը գիրք ակղանի վրայ, ակղանի ետեւ հրեշտակ աջ ձեռքը բարձրացրած: 4ա, ծնունդ. Մանուկ-Փրկիչը մսուրի մէջ, Մարիամ Աստուածածին կողքին, եւ հովիւներ իրենց հօտերով մի փոքր հեռու, 5բ. Փրկիչը Սիմէօն ծերունու գրկում տաճարի մէջ. նրա դէմ Մարիամ բազկատարած, մօտը Յովսէփ ձեռքին 2 աղաւնի. 7ա. Մկրտութիւն, Քրիստոս մերկ ջրի մէջ, վերեւից Հոգին Սուրբ եւ հրեշտակներ՝ ձախից, իսկ աջ կողմը Յովհաննէս Մկրտիչ. 8բ. այլակերպութիւն Քրիստոսի առաքեալների դիրքով. 10ա, Յարութիւն Ղազարու. Քրիստոս խաչակնքում է իր ոտքին ընկած Մարիամին եւ Մարթային եւ Ղազար պատանած դուրս է գալիս այրից. 11բ, Քրիստոս էշի վրայ, մի մանուկ զգեստ է փռում, ծերունիներ ձեռներին արմաւենի. 13ա. Քրիստոս լուանում է Պետրոսի ոտքը, որ իր գլուխն է ցոյց է տալիս, ետեւ աշակերտներ. 14բ. Քրիստոս խաչեալ. 16ա. Փրկչի պատանումն. 17բ. Քրիստոս յայտնւում է իր աշակերտներին եւ ցոյց տալիս վէրքերը. 19ա, համբարձման համախումբ, հրեշտակը ցոյց է տալիս դատարկ գերեզմանը. 20բ. Քրիստոս շրջանակի մէջ որը պահում են 2 հրեշտակներ, ցածը Մարիամ Աստուածածին հրեշտակներով շրջապատուած. 22ա. Առաքեալք 2 խմբի բաժանուած եւ դէմ առ դէմ նստած մէջ տեղ սկիհը հողով ծածկած, իսկ ցածը երկգլխանի մի մարդ. 23բ. ոսկեգոյն խաչկերոնում Աստուած, չորս կողմը հրեշտակներ փողերը բերանին, իսկ 2 կողմը գերեզմաններ, որոնցից մարդիկ են դուրս գալիս. 25ա Աստուած նստած ձեռքին գունդ աջ կողմը Աստուածածին, ձախին Քրիստոս. Աստուծոյ գահը պահում են կենդանակերպ, քառերի մէջ աւետարանիչներ. Նրանցից ցած կէտով քառերի մէջ ծառնութիւն, մի կողմը հրեշտակ, միւս կողմը սատանաներ շամփրած հրեշտակի նիզակին. 42բ Մարկոս. Աւետարան ի ձեռին. ձախից հրեշտակ. 145բ. Մարկոս, 114բ Ղուկաս, նոյն դիրքով, առանց հրեշտակի, 245բ Յովհաննէս բաց աւետարան ի ձեռին: ԽՈՐԱՆՔ թղ. 44ա, 117ա. 116ա, 247ա զանազանաձեւ գեղեցիկ, ոսկեզօծ, կանաչ, կարմիր եւ կապոյտ գոյներով՝ թռչնապես միւս նկարները. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ թղ. համաբարբառի 26—40 Եւսեբի եւ Կարպիանոսի նկարներով. ԳԻՐՉ. Դաւիթ քահանայ. ՍՏԱՑՈՂ: գրիչը. ՏԱՂԿՈՂ. Սահակ վարդապետ. ԺԱՄԱՆԱԿ. ՌՃԺԵ—1666 ՏԵՂԻ. —Երզնկան գիւղ (Աղբակ). ՅԻՇԱՏԱԿ. 41բ—42ա, 306ա, 309ա. ԲՈՎԱՆԴԱԿ 4 աւետարաններ. 63ա. Արիստոնի երէցի յաւելուածը:

A, a, 306ա. Փառք ... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ .. Դաւիթ քահանայի .. սկսա և ողորմութեամբ նորին աւարտ հանի և ետու ոսկով և զանազան գունով զարդարել յիշատակ ինձ .. և ծնողաց իմոց Ստեփաննոս և Եթարին և հօրեղբօրն իմոյ Փիլիպոս կաթողիկոսին Հայրապետին Զաքարին, Ներսէսին և կողակցուն Աննային և որդոցն տէր Մելքիսեդին՝ կողակցուն Չիչային և որդոցն Խաչատուրին Աստուածատուրին, Յակոբին և Մովսէսին, Գրիգորին և կողակցուն Ազաբէգուն՝ որդոցն Անտոնին և Ատոմին, Զաքարին, կողակցուն Խանազին և որդոց Եղիային և Ներսէսին և եղբօրն իմում Յովսէփին և կողակցուն Խանզատին, որդոցն Սարգսին և Ստեփաննոսին և մեծ պապուն Խալիֆին և որդւոցն տէր Աստուածատուրին Բաղդասարին, Մելքիսեդին, Գրիգորին ... : Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր Դաւիթ Գրիչս և զծնօղս իմ և կողակիցն իմ զՍալթանն և զորդին իմ զՓիլիպոսն փոխեալն ի Քրիստոս .. Գորգն և փոքր Փիլիպոսն և զուստրն իմ Գոհարն, Եթարն ... : Ի թվականիս Հայոց ՌՃԺԵ ամին, ի դառն և նեղ ժամանակիս, ի յերկիրս Աղբակու ի գիւղն Երզնկանի ի դուռն Ս. Ստեփաննոսին, առաջնորդութեան ս. աթոռոյս մերոյ Բարթողիմէոս՝ Սահակայ վարդապետին, առաջնորդութեան երկրիս մերոյ էգդինշէրին և Խոսրով փաշին .. յիշեցէք Երզնկանու քահանայքն տէր Մելքիսեթն տէր Վարդան և սարկաւագներն Մուրադ, Խլղաթն, Սահակն և Ատոմն .. : Ծաղկող սուրբ աւետարանիս զՍահակ վարդապետն և սրբագրող ս. աւետարանիս տէր Մինաս կրօնաւորն:

B, a, 309ա. Դարձեալ յիշեցէք .. տէր Գէորգն և զորդին իւր զՄելքէսէթն և մայրն իւր զԽանչագուլն և կողակիցն իւր Աղանին և զո(ր)դիքն իւր Գէորգն և Փանոսն եւ զխոյեմամին և որբանունք տէր Փիլիպոսն և կողակիցն իւր զԽանումն և զորդեակն իւր զԽաչօն և զտանեցքն իւր զԽմաթն և զՄարէամն .. Մեսրօփն և զորդին Դաւիթն և կողակիցն իւր Թարվանդէն:

Թիւ. № 12. ԱՆՈՒՆ. Աւետարան. ՆԻՒԹ. թուղթ եւ մագաղաթ (339—353.) ՄԵԾ. 21×14×7, տախտակակազմ կաշեպատ ներսից թղթապատ

ա. կազմի վրայ կայ մետաղէ մի խաչ եւ շուրջը կաշեխանդեր խառակուսի շրջանակների մէջ. Բ-ի վրայ տարբեր ձեւով խանդակներ նման շրջանակներում. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ չէ, թղթերը կարկատած ԴԱՏԱՐԿ ԹՂ. 1ա—3բ, 8ա, 164ա, 91, 267ա, 320բ, 351ա—353բ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 20×14,2. ԳՐՈՒԹԻՒՆ. երկսիւն 10,7×3,5 ԹՈՒՂԹՔ. 353. ՏՈՂՔ. 19—23. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր թանաքով. ԳԻՐ. բոլորգիր նօտրգիր (35, 268-9.) ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. զարդագիր. գազանագիր, մարդագիր, թռչնագիր. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. 4ա—7ա, գեղեցիկ ծաղկանկարներ համաբարբառի կողքին. ձուաձեւեր, ծառազարդեր, թռչնաձեւեր, ծաղկազարդեր, կանաչ, կարմիր, կապոյտ եւ դեղին գոյներով. ՄԱՆՐԱՆԿԱՐՔ. 11բ, 95բ, 164բ, 267բ, 4 աւետարանիչներն եւս նստած՝ Մարկոս եւ Յովհաննէս գրելիս (պրոխորոն առաջը թելադրած) Մատթէոս եւ Ղուկաս աւետարանն ի ձեռին. ոսկեզոյն եւ փիրոյզեայ գոյներով. ԽՈՐԱՆՔ ԹՂ. 12ա, 96ա, 165ա. ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 4ա—7ա համաբարբառի տարբեր ձեւի՝ ծաղկազարդերով ԳՐԻՉ Ամիր (չամ) Սարգիս դպիր. ՍՏԱՑՈՂ. Գրիչը. (?) ԺԱՄԱՆԱԿ. ՌՃԻԷ—1678. ՏԵՂԻ. Կ Պոլիս ? ՅԻՇԱՏԱԿ. 90բ, 238բ. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 4 Աւետարաններ 157բ. Արիստոնի երկցի յաւելուածը. 339ա մագաղաթի վրայ հանգստեան, թժշկութեան, եւ իւղաբերից աւետարաններ.

Թիւ. № 13. ԱՆՈՒՆ. Գործ Առաքելոց. ՆԻւԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. վատ. խոնաւութիւնից ներծծուած՝ փտած, եւ պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 19,5×12,7×2,5. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն 13×7,5. ԹՈՒՂԹՔ. 144. ՏՈՂՔ. 21. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր թանաքով. ԳԻՐ. նօտրգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. զարդագիր կարմիր գծերով. ԼՈՒՍԱՆՑՔԱԶԱՐԴՔ. ձուաձեւ (ծիլ). ԿԻՍԱԽՈՐԱՆՔ ԹՂ. 81ա, 99ա, 114բ. ԳՐԻՉ. Սարգիս կրօնաւոր. ՍՏԱՑՈՂ. գրիչը ԺԱՄԱՆԱԿ. (ԺԷ). ՏԵՂԻ. 45ա. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. սկզբից եւ վերջից թերի. 93բ, 103բ, 126բ, շեղագիր գրութիւն. ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ. 144բ, 145, 87բ, 1բ. ԲՈՎԱՆԴԱԿ. 1 Ա 1ա. «Յիսուս որդի մաւրս միաւոր.. ի յերթեւեկոյ» (7. երկտողանի.) Գործ առաքելոց սկսում է. Ա 15-ից «Եւ յաւուրսն յայսմիկ...», Թուղթ կաթողիկեայ, Աղերս Եւագրի: Յայտնութիւն (թերի.):

B, a, 86բ. Թվին ՌՄԾ. Ես մօհայ-պլու Թօփչի Արզուման եւ գիրս մեր ղա-լամդանին ատամունքն մէջումն է Թուղթ.

մէկ Նատէր շահիցն է մեկըն աղայ Մատմատ ջահիցըն է, մէկըն Ղազայ չուչուց էլեկեցըն շ Դ Թուխտըն Իբրահիմ խանէնանից է:

Թիւ. № 14. ԱՆՈՒՆ. Թուղթ Պաւղոսի առաքելոյ. ՆԻւԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ լաւ չէ. պոկուած եւ պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 19,5×13,2×3. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն 13×7,5. ԹՈՒՂԹՔ. 148. ՏՈՂՔ. 19. ՎԵՐՆԱԳԻՐՔ. կարմիր թանաքով ԳԻՐ. նօտրգիր կանոնաւոր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. երկաթագիր կարմիր թանաքով. Գրիչ. Սարգիս. ԺԱՄԱՆԱԿ. ՌՁԴ.—1635 ՏԵՂԻ. ի սուրբ անապատն Շամխորու. ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՔ. սկզբից թերի. 31ա—32ա եւ այլն շեղագիր գրութիւն ՅԻՇԱՏԱԿԱԳԻՐ. 7բ, 31ա, 32ա, 33ա, 50բ, 99բ, 139բ, 147ա, 148բ. ԲՈՎԱՆԴԱԿ. Սկսում է թուղթ առ Հռոմայեցիս. բ. 2. «Եւ անպակաս ցաւ...» 14 առաքելական թղթեր: № 1-ի դասաւորութեամբ:

A, a, 148բ. Փառք .. Արդ գրեցաւ սա ի Թվիս ՌՁԴ, ձեռամբ բազմամեղ Սարգիս թանաքիրի, ի սուրբ անապատս Շամխորու:

B, 147բ. Ընդաւրինակեցաւ գիրքս այս ըստ Կեսարացւոց օրինակաց որ կան յար-կեղս գրոց սրբոյն Պամփիլեայ իւրովք ձեռաւք գրեալ:

C, 147ա. Գրեցի և կարգեցի ըստ կարի ուժիրովն, զգիրս Պաւղոսի առաքելոյ, յաւրինեալ և գլխահաս ընթերցուածովք, եղբարց մերոց, յորոց ամենեցուն զմեզապարտութիւն յանդգնութեանս իմոյ հայցեմ,

B, a. Սա. լուսանցքում. շեղագիր.— Յիսուսի Քրիստոսի ծառայ տէր Խաչատուրի որդի Թոմասը» գրեցի. Թիւ ին ՌՄՁԲ մարտ ԻԴ էր.

B, 33բ. Յիշատակ է իմ ծնողաց տէր Խաչատուրին, իմ մայր Հոռոմին, իմ եղբօր Մելիք Սիփիխ, եղբայր Գրիգորը, եղբօր Ավա-ագըն.

C, 50բ. Թոմասըս գրեցի Փաթալի խանըն մեռնած տարին էր Թվ. ՌՄԺԲ.

Д, 99բ. Թոմասին եղբայր Հայեցի Ավագ գրեցի երկիրըն Վարանդա աթառըն Ամարաս Թորանցն լուսաւորչին ս. Գրիգորին:

պակասուէ՞ր, մինչ գրեթէ՝ հազիւ ուրեմն կարողանամք օրական պէտս գտանել և այն օր ըստ օրական պարտուց, որ լեալ է ցարդ մինչև ութն հազար թուման, և ի վերայ այսորիկ ա՞մ հարկաւոր շինուածք ս. Աթոռոյս թէ արտաքինք և թէ ներքինք քայքայեալ գոլով խպառ, պէտս ունին վերանորոգութե՞, և մանաւանդ տանիքն Ո՞ծակերտ ս. տաճարիս այնքան խախտեալ է մինչև անցանել անձրևաց ի ներքս ի տաճարն և խանգարել զվայելչութի՞ ոսկենկար ծաղկանցն և պատկերաց։ Այս պատճառաւ միաբանութեանս խորհրդակցութեամբ անհրաժեշտ համարեցինք, ասում է բարեսիրտ Վեհափառը, դէպ ձեզ յատուկ իմացաւորի ուղարկել Իսրայէլ «քաջաքարոզ» արքեպիսկոպոսին, որպէս զի նա անթերի կերպով մեզ հասցնէ թէ ժողոված աթոռապատկան դրամները և թէ ձեր կամաւոր նուէրները. ի վերջոյ օրհնում է Ռուսաց «Ամենաողորմած Օգոստափառ և ինքնակալ մեծ կայսեր» և յաջողութիւն մաղթում խաչի թշնամիների դէմ։

Թիւ. 13ա. ՆԻՒԹ. կնճռակի սովորական թուղթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 56.5×40. ԴՐՈՒԹԻՒՆ. միասիւն 31×31. ՏՈՂՔ. 39. ԳԻՐ. նօտրգիր. ՄԿԶԲՆԱՏԱՌՔ. ՙՑի—ծաղկագիր. ՄԿԶԲՆԱՏՈՂ. կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. կաթողիկէ կարմիր եւ կապոյտ թանաքով. ԿՆԻՔ. գեղեցիկ (տես Թիւ 6.) ՌՄԵԹ. Եփրեմ կաթողիկոս, կարմիր, կապոյտ, շրջանակներում եւ երկու ցուեկան ճառագայթներով, վերեւ ծաղկագիր «Է՞»․ ԺԱՄԱՆԱԿ. 1817. Յուն. 12-ին. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղս. ա՞մ Հայոց Եփրեմ:

Կոնդակս ուղղուած է ս. Բարդուղիմէոս վանքի արքակրօն միաբաններին և շրջակայ ժողովրդականաց։ Հայրապետը ծանր խօսքերով յանդիմանում է նոյն վանքի միաբաններից մի աբեղայի և նրա համախոհներին, Հաղբակի բէկի հրամանով աբեղայի յանդգնաբար առաջնորդութիւն ըստանձնելուն համար, և յայտնում է որ ինքը ահա ուղարկում է Իսրայէլ գիտնական արքեպիսկոպոսին, որին իբր իւր ներկայացուցչին յորդորում է կատարեալ հնազանդութիւն ցոյց տալ, հակառակ դէպքում սպառնում է նզովել ընդդիմադրողներին և վանքը թողնել առանց վանահօր և իրենց կապած ս. Էջմիածին բերել տալ։

Թիւ. 13բ. ՆԻՒԹ. կնճռակի ընտիր թուղթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 64.5×38.2. ԴՐՈՒԹԻՒՆ. միասիւն 39×39.5. ԳԻՐ. նօտրգիր. ՄԿԶԲՆԱՏԱՌՔ. թռչնագիր (ՙՑի) դեղին, կարմիր, կանաչ, կապոյտ եւ ոսկեգոյն թանաքով. ՄԿԶԲՆԱՏՈՂ. բոլորգիր, կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. գեղեցիկ ծաղկաշէն խորան, ձախից ծաղկակազմ սիւն, «կաթողիկոսի» գլխին կաթողիկէ. ԿՆԻՔ. տես Թիւ 12. միայն ճառագայթների ծայրերով նորից ոսկեգոյն շրջանակ է քաշուած եւ երկու թեւատարած հրեշտակներ պահում են այդ նոյակապ կնիքը. ԺԱՄԱՆԱԿ. 1817. Յուն. 12. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղս. ա՞մ Հայոց Եփրեմ.

Կոնդակս ուղղուած է Ս. (Թադէոս) Բարդուղիմէոս վանքի թեմի բնակիչներին, այսինքն՝ Սալմաստում, Ուրմիում, Հաղբակում, Ջուլամերկում, Կեւառում, Սոմայում, Բրադօստում, Բարանդուզում, Սուլդուզում, Քիջանեում և Սարալբակում բնակուող հայերին, որով յայտնում է նրանց, որ յիշեալ վանքի վանահայր և առաջնորդ է նշանակում Իսրայէլ գիտնական եպիսկոպոսին, որին հրամայում է ընդունել իբր իւր ներկայացուցչի։

Թիւ. 14. ՆԻՒԹ. հաստ թուղթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. վատ չէ, փերեւից կերած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 96×53. ԴՐՈՒԹԻՒՆ. 69.5×39.5. միասիւն. ԳԻՐ. նօտրգիր. ՏՈՂՔ. 93. ՄԿԶԲՆԱՏԱՌՔ. 1 տող զարդանագիր (մեծադիր) եւ թռչնագիր 3.2 լայնութեամբ արծաթագոյն շերտի վրայ ոսկեգոյն, կանաչ, կարմիր, կապոյտ եւ դեղին գոյներով, շատ գեղեցիկ. «պատուհի» սեղ հրեշտակներ եւ թռչուն. եւ մի փառաւոր կաթողիկէ 4 փոքր գմբեթներով. ՄԿԶԲՆԱՏՈՂՔ. 4 տող բոլորգիր, կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. 6½×3 մեծութեամբ թռչնազարդ եւ ծաղկազարդ սիւնակներ. ԺԱՄԱՆԱԿ. 1819, Դեկտեմբեր 2. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղս. ա՞մ Հայոց վշտալի Եփրեմ.

Կոնդակով յայտնում է Կարնեցիներին, որ Հայոց Հայրապետները չեն կարողանում իրենց ցրուեալ հօտին այցելել, այդ պատ-

ճառով նուիրատուներ են ուղարկում. որ ինքը արդէն Կարնոյ նահանգը ուղարկել է նախ Սիմէօն արքեպիսկոպոսին և յետոյ Բարսեղ վարդապետին, իսկ այժմ Կարնոյ առաջնորդ Կարապետ արքեպիսկոպոսին Ս. միւռոնով ուղարկում է երբև լիազօր նուիրակ Ս. Էջմիածնի.

Թիւ. 15. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. վատ. վերևի խորանը պատռուած եւ ձախակողմեան շուրջանցքը կտրուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 68×38,3. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 66,5×34,8. ՏՈՂՔ. 79. ԳԻՐ. նոտրգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Յի — մեծագիր, զարդագիր, դեղին, կարմիր, կապոյտ եւ կանաչ գոյներով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. ա. տողը մեծագիր երկաթագիր. յաջորդ 2 տողը բոլորգիր, մեծագիր, կարմիր թանաքով. ԺԱՄԱՆԱԿ. 1824. (տպը— 1818) Ապրիլ (տպը՝ Յունուար). ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Եփրեմ կթղկս. վ ր ժ ա պ ի. ԿՆԻՔ. 8 անկիւնի. «Է՞ Եփրեմ կթղկս....ՌՄՈԹ»:

Կոնդակս ուղղուած է Վանի, Խօշապի, Նորդուզի, Մահմուտանի, Աղպաղայի, Արճէշի, Արծկէի, Խլաթի, Կարճկանի և նրանց շրջակայից հայերին, որով յայտնում է նրանց, որ նախկին նուիրակ Փիլիպպոս վարդապետ պէտք է Էջմիածին դառնայ (վրան գրած անունը ջնջած է) և նրա տեղ նշանակում է Տ. Եղիազար վարդապետին (տակը Մկրտիչ արքեպս.), որին և յանձնում է որպէսզի միւռոն բաժանել վերոյիշեալ գաւառներում և աթոռապատկան տուրքերը ժողովել և ուղարկել Ս. Էջմիածին (նուիրակութիւն, դանձանակ, յիշատակի խոստումներ, կտակ, հոգեբաժին, քառասունք, ժամուց և այլն). այդ վարդապետին Վեհը կարգում է լիազօր նուիրակ և իր ներկայացուցիչ և յորդորում է որ իրենց լսաձեռն նուէրները նրան յանձնեն. «Գիտելով առուգապէս՝ զի առ դա հասանելն՝ հասանել է ի ս. Աթոռս և մեզ», Մեր կարծիքով այս կոնդակը կեղծած է, որովհետև առաջ կոնդակը տրուել է Մկրտիչ արքեպիսկոպոսին, որ գնայ Փիլիպպոս վարդապետի տեղ նուիրակութիւն անէ և աթոռապատկան դրամները հաւաքէ և Ս. Էջմիածին բերէ և տրուում է 1818-ի Յունուարին. բայց կեղծողը Փիլիպպոս վարդապետի անուան վրայ թուղթ է կպցրել և վրան գրել մի այլ անուն (տող. 29) որ դժբաղդաբար ջնջուած է. «լի արդեամբ» (տող. 31) բառերի տեղ բարակ թղթի վրայ գրած է «Սպառեմք գալստեան նորա», իսկ ներքեւում «Մկրտիչ արքեպիսկոպոսի» անուան վրայ գրած է 4 տողում «Եղիազար վարդապետ» (տես թ. 32, 44, 62 և 66), իր իսկական 1818 թ-ի վրայ կպցրած է 1824. և Յունուարի վրայ՝ Ապրիլ: Յայտնի է նոյնպէս որ 1824-ին Եփրեմ կաթողիկոսը չի եղել Ս. Էջմիածնում (տես Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը և Կովկասի Հայք XIX-րդ դարում. Ա. հ. 212—7): Հաւանական է որ կեղծողը ինքը Մկրտիչ արքեպիսկոպոսը լինի իր յաջորդին մնացելու և նրա փողերը կորզելու համար, օգտուելով ժամանակի խառնաշփոթ հանգամանքից:

Թիւ. 16. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 32,6×18,3. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 20×17. ՏՈՂՔ. 29. ԳԻՐ. նոտրգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Յի եւ այլն—կարմիր թանաքով եւ գծերով. ԺԱՄԱՆԱԿ. 1824. Ապրիլ 16. ՏԵՂԻ. Հաղբատ. ԿՆԻՔ. Ս. Եռորդութիւն, շուրջը գրած է. «Է՞, շնորհիւն Այ տր Եփրեմ կթղս. ամ Հայոց, ՌՄՈԹ.» կարմիր. վերևից՝ այլ—ոսկեգոյն, կապոյտ եւ սեւ թանաքով. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղս. ամ Հայոց վ ր ժ ա պ ի Եփրեմ:

Կոնդակս ուղղուած է վերոյիշեալ Աղաբէկին և նրա եղբայր աղայ Աւագին, որով նախ շնորհակալութիւն է յայտնում իր նրանց տան մէջ գտած սիրալիր ընդունելութեան համար, ապա խնդրում է, որ օգնական լինեն Սաթէլի վանքի վանահայր որբապան Մարտիրոս արքեպիսկոպոսին, որին Վեհը իր խնդրանաց համաձայն ուղարկում է օրհնութեան կոնդակով ժողովարարութիւն անելու վանքի գմբէթը նորոգելու համար:

Թիւ. 17. ՆԻՒԹ. ճապոնական թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 33,7×19,2. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն. 16,8×17,5. ՏՈՂՔ. 25. ԳԻՐ. շղագիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Յի եւ այլն— տես Թիւ 18. ԺԱՄԱՆԱԿ. 1827. Յուլիս 2. ԿՆԻՔ. տես Թիւ 25. ՏԵՂԻ. Ի ս. վանս Ճնաթնի որ ի Տփխիս. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղս. ամ Հայոց վ ր ժ ա պ ի Եփրեմ:

Կոնդակս ուղղուած է Աղաբէկ Քալանթարեանցին՝ որին ուզում է մխիթարել Նորա եղբօր մահուան առթիւ յայտնելով իւր վշտակցութիւնը, ապա խնդակցութիւն է յայտնում, որ Քալանթարեանցը քաղաքապետութեան պաշտօնին է հասել (պոլիցմեստր) և ուրախանում է, որ Նորին Կայսերական Մեծութեան հովանաւորութեան տակ Հայ պաշտօնեաները բազմանում են. ի վերջոյ յականէ յանուանէ ողջունում է Նորա ընտանիքի անդամներին։

Թիւ. 18. ՆԻՒԹ. հաստատ թուղթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 46×33.5. ԳՐՈՒԹԻՒՆ. միասին, 26.2×27. ՏՈՂՔ. 37. ԳԻՐ. Նօտրգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. բոլորգիր, Ե՜ի—դեղին, կանաչ, կապոյտ գոյներով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. կաթողիկոս բառի գլխին մի կաթուղիկէ վերոյիշեալ գոյներով. ԿՆԻՔ. մեծադիր. նոյն Թ. 25. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղ. ամ. Հայոց Եփրեմ. ԺԱՄԱՆԱԿ. 1828 Նոյեմ. 6. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին։

Կոնդակս ուղղուած է Երևանի և Ղըրխ-բուլաղի բնիկ և գաղթական հայերին. Վեհը Նրանց այցելու եկող չուղարկելը պատճառաբանում է պատերազմական խառնակութիւններով, և ուրախութիւն յայտնելով, որ Նրանք Կայսերական հովանու տակ հանգիստ և խաղաղ են, Նրանց հոգևոր բազմապիսի պէտքերը հոգալու համար ուղարկում է Նիկողայոս վարդապետ Ոսկանեանին, որին պատուիրում է հնազանդել և Մայր Աթոռի տուրքերը լիովին հատուցանել.

Թիւ. 19 ա. ԺԱՄԱՆԱԿ. 1828 Նոյեմ. 28. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. Կթղ. ամ. Հայոց Եփրեմ. մնացածը նման է Թ. 21-ին։

Կաթողիկոսը Սահակ վարդապետ Սաթունեանցին ուղարկում է Կաղզուան՝ յայտարարելով տեղական հայերին, որ Էջմիածնական Բարձրագոյն կառավարութիւնը քննել է Մկրտիչ վարդապետի գործը և Նրան յանցաւոր գտել և թէ Նրան արդէն հեռացրել են վանահայրական պաշտօնից և թէ Սահակ վարդապետը կըկառավարէ Նրանց մինչև հանգամանքները թոյլ տան Կարսի յաջորդին վերադառնալ և Նրանց առանձին վանահայր ուղարկել.

Թիւ. 19 բ. Առաջին նկարագրութիւնը նման է Թ. 23-ին. միայն ԿՆԻՔԸ 8 անկիւնի է եւ վերեից «Է՜» կարմիր թանաքով. ԺԱՄԱՆԱԿ, ՏԵՂԻ եւ ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ նման Թ. 19-ին։

Կոնդակովս Նորին Վեհափառութիւնը Սահակ վարդապետ Սաթունեանցին կարգում է վանահայր և ժամանակաւոր վէքիլ, հրամայելով որ Մկրտիչ վարդապետին Ս. Էջմիածին ուղարկէ և յայտնելով, որ ինքը դրա մասին արդէն գրել է Ղարսի և Կաղզուանի իշխաններին։

Թիւ. 20. նման Թ. 21-ին. ԿՆԻՔ. փոքր պատկերով. ԺԱՄԱՆԱԿ. 1829 Մարտ 7.

Ուղղուած է Կաղզուանի բնակիչներին, որոնք Վարդիկ Հօր վանքի վիճակին էին կարգուում, որով յայտնում է Վեհը, որ Նրանց վանահայր Մկրտիչ վարդապետի մասին տուած բողոքը քննում է և թէ իրենց խնդրանաց համաձայն վանահայր է նշանակում նախածանօթ Սահակ վարդապետ Սաթունեանցին։

Թիւ. 21. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 43.8×32. ԳՐՈՒԹԻՒՆ. միասին, 15.5×25.7. ՏՈՂՔ. 23. ԳԻՐ. շղագիր. ՄԱՆՐԱՆԿԱՐ. կաթուղիկէ—կանաչ, կարմիր եւ կապոյտ գոյներով. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Ե՜ի—բոլորգիր, կանաչ, կարմիր եւ կապոյտ գոյներով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ԿՆԻՔ. գեղեցիկ, կարմիր շրջանակի մէջ Երրորդութիւն. նրա շուրջը կապոյտ շրջանակ ակիսակ աստղերով եւ ապա լուսափայլ ճառագայթեր «Է՜» շնորհիւն.. Եփրեմ կթղ.. ՌՄՀԸ.. ԺԱՄԱՆԱԿ. 1829 Դեկ. 25. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղ. ամ. Հայոց Եփրեմ։

Վերին Բուլղի բնակիչներին, իրենց խնդրանաց համաձայն, Ղարսի վիճակից հանելով ենթարկում է Վարդիկ Հօր վանաց (ս. Թաթուլի և Վարոսի) իրաւասութեան, որի վանահայրը Սահակ վարդապետն էր։

Թիւ. 22. ԺԱՄԱՆԱԿ. 1830 Մայիս 28. մնացածը նման Թ. 24-ին։

Կոնդակս ուղղուած է յայտնի շուշեցի իշխան Աղաբէկին, որին Վեհը յորդորում է օգնել վիճակային նուիրակ Զաքարիա վարդապետին։

Թիւ. 23. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 34,8×18,5. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 22×18,2. ՏՈՂՔ. 32. ԳԻՐ. շեղագիր. ՄԱՆՐԱՆԿԱՐ. կարուղիկէ—կարմիր գծերով. այլ—ոսկեգոյն եւ կապոյտ. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Ցի—կարմիր գծերով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ԺԱՄԱՆԱԿ. 1830 Նոյեմ. 5. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ԿՆԻՔ. ա. Երրորդութիւն. «Է՛ շնորհիւն Ա̃յ կթղս. ամ. Հայոց Եփրեմ, ՌՄԾԹ.» ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղկս. ամ. Հայոց Եփրեմ:

«Ցանուն Աշարէգ գլխաւորէգ Քեալանթարովի», որին շնորհակալութիւն է յայտնում այն խալիչայի համար, որ նա ուղարկել էր ի յիշատակ իւր հանգուցեալ եղբօր:

Թիւ. 24. ՆԻՒԹ. հաստ թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 81×31. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 59×26,2. ՏՈՂՔ. 81. ԳԻՐ. բոլորգիր. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. թռչնագիր. (Ցի). ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. ծաղկեայ խորան, ոսկեգոյն, վարդագոյն—կանաչ, սեւ, կապոյտ եւ դեղին գոյներով. կարուղիկէ աջ լուսանցքը ոսկեզօծ, արծաթափայլ. ԺԱՄԱՆԱԿ. 1830 Դեկտ. 13. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. եւ այլն նման Թ. 26-ին:

Վեհը լսելով Ղօշավանքի վէքիլ Սահակ վարդապետից Կաղզուանի և Կարսի բնակիչների հանգստութեան մասին, Նրան առաջնորդ է կարգում իբրև փորձառու և ծանօթ տեղական կարգերին, պահելով միանգամայն Ղօշայ և Վարդէնիկ Հօր վանուց վանահայրութեան պաշտօնը և յանձնարարելով, որ աթոռապատկան եկամուտները լիովին հաւաքէ և ուղարկէ:

Թիւ. 25. ՆԻՒԹ. բարակ թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 66,2×35,2. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 37,2×26. ԳԻՐ. նօտրգիր. ՏՈՂՔ. 45. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Ցի—թռչնագիր եւ մարդագիր կարմիր, դեղին եւ ոսկեգոյն թանաքով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. 3 տող կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. գեղեցիկ ծաղկազարդ խորան ոսկեգոյն, կապոյտ, կարմիր, դեղին, վարդագոյն եւ կանաչ գոյներով, գեղեցիկ կարուղիկէով. ԺԱՄԱՆԱԿ. 1831 Փետր. 4. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ԿՆԻՔ. միջին մասը կարմիր՝ Փրկչի պատկերը խաչանիշերին. 2 կողմը գրած «Յս ՙՔս» «Է՛ շնորհիւ.. Եփրեմ կթղս. ՌՄԾԹ», Գեղեցիկ շրջանակ ոսկեգոյն, կանաչ, կարմիր ճառագայթներով. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղս. ամ. Հայոց Եփրեմ.

Կոնդակով Վեհը յայտնում է Դարալագեազի շրջանի հայերին, որ նրանց առաջնորդ Բարսեղ արքեպիսկոպոսին ինքը կարգել է Սինօդի անդամ և նրա տեղ նշանակում է Նիկողայոս վարդապետին:

Թիւ. 26. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 30×21. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն. ԳԻՐ. շեղագիր. ՏՈՂՔ. 13. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. կարմիր թանաքով մեծադիր. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. այլ—կապոյտ եւ ոսկեգոյն թանաքով. ԺԱՄԱՆԱԿ. 1839 Մարտին, համար 43. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ԿՆԻՔ. Եփրեմ կթղս. ՌՄԾԹ. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղս. ամ. Հայոց Եփրեմ:

Իրաւունք է տալիս Վրաստանի թեմի կառավարիչ Յովհաննէս արքեպիսկոպոսին քահանաներից ում որ կամենում է վարձատրել խաչով և փիլոնով, յայտնելով իրեն միայն նրա ծառայութեանց ցուցակը, անհրաժեշտ վկայականների գրութեան համար:

Թիւ. 27. ՆԻՒԹ. թուղթ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. լաւ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 44,7×31,2. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 25×26. ԳԻՐ. շեղագիր. ՏՈՂՔ. 31. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. թռչնագիր-գեղեցիկ (Ցի). ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. այլ—տես Թ. 29. կարուղիկէն տես Թ. 30. ԺԱՄԱՆԱԿ. 1832 Մայիս 20, համար 98. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ԿՆԻՔ. տես Թ. 30. թիւը՝ 1280. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. տես Թ. 29.

Կոնդակով Սահակ վարդապետ Կոզբեցուն՝ Սահակ վրդ. Սաթունեան, նշանակում է Ալէքսանդրապոլի յաջորդ:

Թիւ. 28. ՆԻՒԹ. թուղթ հասարակ. ՀԱՆԳԱՄԱՆՔ. ա. թուղթը պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 25×23,3. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 12×17,8. ԳԻՐ. շեղագիր. ՏՈՂՔ. 12. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. գրութեան մեծատառ, կարմիր թանաքով. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով բոլորգիր. ՄԱՆՐԱՆԿԱՐ. կապոյտ թանաքով, այլ—ոսկեգոյն ճառագայթներով. ԺԱՄԱՆԱԿ. 1837 Յունուար 19, համար 256. ՏԵՂԻ.

Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղս. ամ. Հայոց Յովհաննէս:

Վ.ենը բաւական համարելով Սիմէոն արքեպիսկոպոսի Բզնունու ապաշխարանքը, հրամայում է նրան գալ Ս. Էջմիածին և իւր կեանքի մնացորդը անցնել շրջակայ վանքերից մէկում:

Թիւ. 29. ՆԻՒԹ. թուղթ հասարակ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. ա. թերթը պատռուած. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 35.5×22. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն 20.2×18.2. ԳԻՐ. շեղագիր. ՏՈՂՔ. 23. ՍԿԶԲՆԱՏԱՌ. գրութեան մեծատառ. ՍԿԶԲՆԱՏՈՂ. կարմիր թանաքով. ԿՆԻՔ. վերև աջ, միջին մասը կապոյտ, շուրջը ոսկեգոյն. ԺԱՄԱՆԱԿ. 1837 Մայիս 31, համար 293. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. տես Թ. 28.

Վ.ենը պատասխանելով Ամենափրկիչ վանքի (Նոր Ջուղայի մօտ) միաբանութեան 1836 Դեկտ. 16 և 1837 Յունվ. 18 գրութեանց, կարգադրում է, որ հանգուցեալ Յովհաննէս եպիսկոպոսի գոյքը անկորուստ Մ. Աթոռ հասցնեն, «որպէս զի մեք անօրինեայուք զարժանն ըստ զօրութեան օրինաց»: Իսկ գալով հանգուցեալ եպիսկոպոսի տեղ Յակոբոս վարդապետի յաջորդութեան, Վ.ենափառը պատճառաբանում է՝ որ նա հիւանդոտ է, ծերունի և կարօտ հանգստութեան, մանաւանդ որ ինքը արդէն նշանակել է Աստուածատուր վարդապետին հանգուցեալ եպիսկոպոսի կենդանութեան ժամանակ:

Թիւ. 30. ՆԻՒԹ. թուղթ հասարակ. ՀԱՆԴԱՄԱՆՔ. վատ չէ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 35.5×22. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 15×18.2. ԳԻՐ. շեղագիր. ՏՈՂՔ. 21. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ՍԿԶԲՆԱՏԱՌՔ. Ծի—ծաղկագիր, կարմիր, կապոյտ և ոսկեգոյն թանաքով. ՄԱՆՐԱՆԿԱՐ. Կաթուղիկէ—տես Թ. 31. ԺԱՄԱՆԱԿ. 1840 Մարտ 4, համար 19. ՏԵՂԻ. Ս. Էջմիածին. ԿՆԻՔ. կարմիր. շրջանակը շրջապատուած է կապոյտ շերտով, այդ ևս ճառագայթաձև ոսկեգոյն գծերով. կարմիր շրջանակի մէջ—Հայր Աստուած—ձեռքին աշխարհ, Որդի Աստուած—ձեռքին խաչ և ս. Հոգու պատկերը. շրջագրութեամբ՝ «Է շնորհիւն Աստուծոյ Տ՟ր Յովհաննէս կթղս. ամ. Հայոց. 1820». վերեւից աջ—աստղաձև. ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ տես Թ. 28.

Կոնդակով Վ.ենը վարձատրում է ակնակուռ խաչով Տայոց առաջնորդ Յարութիւն վարդապետին ըստ միջնորդութեան Վրահայոց առաջնորդ և վիճակաւոր կառավարիչ Կարապետ արքեպիսկոպոսի, նրա այն եռանդուն գործունէութեան համար, որ ցոյց էր տուել Ախալցխայի եկեղեցին շինելու և 1838—1839-ի ժանտախտի ժամանակ:

Թիւ. 31. ՆԻՒԹ. հաստ թուղթ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 35×22. ՀԱՆԴԱՄԱՆՔ. վատ չէ. ԳՐՈՒԹԻՒՆ. միասիւն, 24×18.5. ՏՈՂՔ. 29-7 (2 երես). ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. 3 տող բոլորգիր, կարմիր թանաքով. ԳԻՐ. նոտրգիր. ԺԱՄԱՆԱԿ. 1844 Ապրիլ 30. ՏԵՂԻ. Պետերբուրգ. ԿՆԻՔ. 8 անկիւնի, կարմիր թանաքով «Է՟ Ներսէս Եպիսկոպոսապետ եւ Կթղս. ամ. Հայոց Ներսէս:»

Նորընտիր կաթողիկոս Ներսէս գրում է Նիկողայոս արքեպիսկոպոսին, որ Քիշնեւում 1843 Յուն. 5-ին ստանում է Ներքին գործերի մինիստրի գրութիւնը ընդ համարաւ 1612, 1843 Մայիս 27-ից, որով կայսերական բարեհաճ կարգադրութեամբ Պետերբուրգ է կոչւում. 1500 րուբլի ճանապարհածախս առնելով, Յուլ. 6-ին հասնում է Մայրաքաղաք, Օգոստ-ի 3-ից մինչև Սեպտ. 20 «անակնկալի կենաց գտաք ի մահճի», Օգոստոսի 13-ին ստանում է հաստատութեան գրամոտ, որոշւումեն 15-ին կայսեր ներկայանել, 17-ին ստանում է «բռլիանդեայ Օրտէնն» և «ս. Աղէքսանդր Նեւսկու» աստղը, Նոյեմ. 28-ին ներկայանում է կայսեր (Նիկողայոս I) և յափշտակուած նկարագրում նրա Հայոց և ս. Էջմիածնի համար ունեցած բարեհաճ զգացումները (տե՛ս ժողովածուիս «Ցուցակ Ձեռագրաց այլ և այլ տեղեաց» մասում Ներսէս կաթողիկոսի երեք կոնդակներից Գ-րդի պատճէնը):

Թիւ. 32. ՆԻՒԹ. թուղթ հասարակ. ՄԵԾՈՒԹԻՒՆ. 26.7×21.5. ՀԱՆԴԱՄԱՆՔ. վատ չէ. ԳՐՈՒԹԻՒՆ. 16×17.9. ՏՈՂՔ. 28. ՍԿԶԲՆԱՏՈՂՔ. կարմիր թանաքով. ԳԻՐ. նոտրգիր. ԺԱՄԱՆԱԿ. 1850 Մայիս 20. ՏԵՂԻ. Թիֆլիս. ԿՆԻՔ. կարմիր թանաքով, 8 անկիւնի «Է՟. Ներսէս եպիսկոպոսապետ եւ կթղս. ամ. Հայոց ՌՄՂԲ». ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ. կթղս. ամ. Հայոց Ներսէս:

Թադէոս և Բարդուղիմէոս առաքելոց վանքի վանահայր Նիկողայոս եպիսկոպոսին Վ.ենը գրում է՝ թէ Ռուսաց Թաւրիզի դեսպան Անիչկով հաղորդել է փոխարքային, որ աղայ

Առաքել Մելիք-Մինասեան պատրաստում է շահին մի խնդրագիր, որով հայերը խնդրում են իրենց Անգլիացւոց դեսպանի պաշտպանութեան յանձնել. ապա գովում է սրբազանի հաստատակամութիւնը, որ չէ ստորագրել այդ խնդրագրին և ցոյց է տալիս, որ այդպիսի մի վարմունք արքայական իշխանութեան դէմ դաւաճանութիւն կըհամարուի. ի վերջոյ յայտնում է, որ ինքը նոյն մտքով նամակ է գրել նաև Առաքել աղային (ինքնաձեռագիր)։

## ՀԱՅՐԱՊԵՏՆԵՐԻՆ ԳՐՈՒԱԾ ՆԱՄԱԿՆԵՐ

Թիւ 1. ՌՄԿԸ. Նոյեմ. Է. Կ. Պոլսից գրում է Աստուածատուր աբեղան, թէ Սրոյ իմաստասէրն Մկրտիչ արքեպիսկոպոս, տեղական կաթուղիկոսի իր վիճակում չլինելուն համար, ուղևորում է դէպի Եգիպտոս, թէ իրեն յանձնարարական է գրել, որ հայ ամիրաներից պէտք եղած թղթերը հանել տայ Մահտեսի Աբրահամ ամիրայն, որոնք այժմ պատրաստ են և Եգիպտոսի ըդեշխին և՛ս նամակ է գրում։ Տուզեանց գլխատումը հաղորդելուց յետոյ յայտնում է, որ Յարութիւն ամիրայ Պէզճեան դրամատան ընդհանուր տեսուչը 5000 ղրուշ է նուիրել, իմանալով Աթոռի թշուառ կացութիւնը, որը և ինքը յանձնել է Աղամեան Յովհաննէս աղային, որին 30000 ղրուշ պարտք էր Մայր Աթոռը։

Թիւ 2. Կ. Պոլսի նուիրակ Աստուածատուր եպիսկոպոսը գրում է 1819 Հոկտեմբերի 24-ին թէ՝ Ձեր 84000 ղրուշ փոխցայ անելու համար գրած նամակը ստացայ. ամբողջ քաղաքը յուզուած էր Տիւզեանց մահուան պատճառով, դիմեցի պատրիարքին և նա հազիւ մի քանի ամիրաներ հաւաքեց և Հոկտեմբերի 23-ին փոխցայ արինք։ Մեծագումար փոխցայ անելուց տեղացիք շատ դժգոհ են, ասում է նուիրակը, և խորհուրդ է տալիս նախքան այդպիսի մի գործի ձեռնարկելը նուիրակին դիմելով փողի քանակութիւնը իմանալ. ապա յայտնում է պատրիարքի դժգոհութիւնը Յակոբ վարդապետին եպիսկոպոս ձեռնադրելու համար, որը առանց իր թղթի էր եղած։ Ի վերջոյ խնդրում է նուիրակութեան նոր կոնդակ, յայտնելով, որ 48.750 ղրուշ արդէն ուղարկել է։

Թիւ 3. 1845-ին «Յակոբ իշխան Կոռնիկոսաց» գրում է Փարիզից Ներսէս կաթուղիկոս Աշտարակեցուն, թէ ինքը այլ ևս Ս. Էջմիածնից ոչ մի թղթակցութիւն չէ ստանում և խոնարհաբար խնդրում է Հայրապետից իր հետ թղթակցութիւն ունենալ և քննելով ապացուցանել, որ ինքը Լուսինեան ցեղից է և Լևոն վերջինի ժառանգորդ և այլն։

## ՍԻՆՈԴԱԿԱՆ ԵՒ ՊԱՏՐԻԱՐԳԱԿԱՆ ԹՂԹԵՐ

Թիւ 4. գրուած 1825 Մարտի 25-ին, որով Ս. Էջմիածնի բարձրագոյն խորհրդարանի անդամները (Անդրէաս, Յովհաննէս, Փիլիպպոս, Սահակ, Ստեփաննոս արքեպիսկոպոսներ և Եփրեմ եպիսկոպոս) հրամայում են Բամբակաձորի և Շօրագեալի հայերին վանքի անասունները ձմեռը պահել (ի ս. ժողովոյն բարձրագոյն խորհրդարանի ս. Կաթուղիկէ Էջմիածնի մատուցեալ...։)—Կոնդակի ձևով։

Թիւ 5. օրհնութեան երկու թուղթ, Երուսաղէմի Գաբրիէլ (ՌՄԸ) և Թէոդորոս (ՌՄԿԵ) պատրիարգներից. Սկզբնատառը ներկայացնում է մի թեւատարած հրեշտակ, ձեռքին ափսէի մէջ Յովհաննու գլուխը. երկու տողը կարմիր նոտրգիր. Կնիք. կարմիր. մէջտեղ Քրիստոսի յարութիւնը շրջագրութեամբ «Կնիք Ս. Երուսաղէմի Աթոռոյ Ս. Յակոբեանց եւ Ս. Յարութեան չէ պարտից այլ օրհնութեանց». երրորդ շրջանակում Փրկչի եւ տասներկու առաքեալների պատկերը: Առաջնի եզր գրած է «Մեծին Շահնազարի դուստր Հաւայեաց խաթունին կնիք:»

Թիւ 6. Սաեւեան արքեպիսկոպոս Ներեան 1828 Յունուարի 10-ին գրում է Աղաբէկ իշխանին, որ Ներսէս սրբազանի և սինոդի հրամանով ինքը գնացել է Թաւրիզ հայերին գաղթեցնելու և Ռուսաց Կայսեր «բարձր և քաղցր» հովանու ներքոյ մտցնելու համար. 10000 տուն գաղթեցնում է. Նամակը գրուած է Նախիջևանի Նրնջակ վանքից։

Միւս թղթերից 13-ը ուղղուած են Աղաբէկ Քալանթարեանցին զանազան տեղերի հոգևորականներից, որոնք մեծ մասամբ նիւթական օժանդակութիւն են հայցում. իսկ 5-ը Ներսէս կաթուղիկոսին՝ ծածկագրով գրած։

# ԺՈՂՈՎԱԾՈՒ Բ

## ՀԱՅԵՐԻՆ ՎԱՒԵՐԱԳՐԵՐ

Թիւ 1. Երկսիւն, բոլորգիր. յիշատակարան «... Ցիշեցէք .. ի դուռն Ս. Թաթէոսի առաքելոյն զՏէր Զաքարայ եպիսկոպոսն, Տէր Սրապիոն եպ., Տէր Մկրտիչ եպ., զպարոն Տէր Գրիգոր եպ. և այլ միաբան կրաւնաւորքն, Տէր Անդրէասն, վանից հայր Տէր Յոհաննէսն, Տէր Կարապետն, տնտես Տէր Ցակոբն, Տէր Թաթոսն, Յովանէս երէցն, զԹանանգ սարկաւագն (Գրիգոր սարկաւագն—լուսանցքում).. որքս եղեն պատճառ վանից շինութեան, ժամատունն ծածկեցին, ժամատեղն հաստատեցին և վանից դուռն զարդարեցին և չէն կու պահեն և շատ չարչարանք քաշեցին յանաւրէնաց... Ու՛ծ ողորմի բաէս Պ.ապարի հողոյն որ վասն ս. Թաթէոսի առաքելոյ սիրոյն համար նահատակեցաւ:» «Ցիշեցէք զնորընծայ Տէր Թաթէոս եպ-ն որ... վերստին հաստատեց ժամակարգութիւն... կրկին նորոգել և կազմել ետուն զաւետարանն:» «Ցիշեցէք մալքս Զարուխն և զերկրի ժողովուրդքն և զտանուտէրքն Մակուայ, որ յանձն առին վանից պահպանութիւն՝ մալին, խարջին, պարտքին աւգնականութիւն անեն.. և զմեղօոր Յոհաննէս երէցն կազմողս յիշեցէք.. Թվ. ՌԻԳ:»

Թիւ 2. Նոտրգիր, միասիւն. «Առաջի Աստուծոյ և առաջի Մակուայ տոլվաթաւորացն, ես Մուստաֆարի տղայ Դամուրս, իմ կամով իմ փայ մուլքն առաքելոց և գեղարէնքին ծախեցի առաքելոյն Թադէոսի վանքին, ձեռամբ Սահակ վարդապետին նորին առաջնորդին: Ով որ խօսք և զրոյց ունի ես ոհտայ: Գինն երեք թումանն.. Գրեցաւ ի թվին ՌՃԹ ի Նոյեմբերի ժդ. Տէր Աւետիս.. վկայ եմ...» (վկաների անուններ և կլոր կնիք):

Թիւ 3. Նոտրգիր, միասիւն. կնիք—«Ցե՛քի ծ՛առայ Իսահակ վարդապետ Թվ. ՌՃՆ.. տակը գրած է. «Ես Իս. վ. Գուլամրի կամօքըն մօհրեցի: Առաջի Աստուծոյ ես Վարագնայկերացի Եաղուբի որդի Խանդամիրս վախըմ առի ս. առաքելոյն Թաթէոսի Շաքառոի մօտ Կեռ հողն.. ես Վարագնակերացի Գոդլամիրս հողերըդի Խանդամիրին վերըստին հաստատեցի.. գրեցաւ Թվ. ՌՃԻԳ Նոյ. իէ. ստորագրութիւնը ես ի միրզէս վկայ եմ..:»

Թիւ 4. Նոտրգիր, միասիւն. «Այս է վախըմ և մուլք ս. առաքելոյն՝ Թէ այգեստեղ, թէ վարելոյ հողն ի Մակու այս է. Անուշկավանի դիմաց այգին. այսպէս ութ կտոր հող, երկու այգի. ստորագրութիւն—«Ես Սարգիս վարդապետ Բաֆայեցի խոպատաւոր ս. առաքելոյն իմով ձեռօք թվին ՌՃԻԸ Սեպտեմբերի ի. գրեցի և կնքեցի:» կնիք—կլոր:

Թիւ 5. Նոտրգիր, միասիւն. կնիք—կլոր..«Քի ծառայ Սարգիս վարդապետ:» «Պատճառ գրոյս այս է որ ես Մուլէքս դուստր Նազլուս առաջի Աստուծոյ և առաջի մեր առաջնորդ Սարգիս վարդապետին և առաջի Մակուայ տոլվաթաւորացն ի մէջս. Վարդանայ իմ հօր Մուլէքս բաժին մուլքն... վախըմ արի ս. առաքելոյն .. ով այս իմ վախիթիս այլ և այլ արար օձէն մինչև ի Նեռն անիծած լինի, սև երես գայ ինձ մօտ առաջի Քրիստոսի... Թվ. ՌՃԼԳ Սեպտ. իթ.—ին:

Թիւ 6. Նոտրգիր, միասիւն. ...Ես Մակուեցի Այտկէշենց աղզէն, Աւլանենց Մկրտչի թոռն, և Պապուլի որդի Կիրակոսս... յոժար կամօքս վախըմ արարի Պ.ութլուճանի

վայն, և Նուշկայ դէմի գլգլոտ այգին, մուլքըն և ագարակն, որ վանքին վախմ լինի, և ուտեն մասուլն և ինձ և իմ ծնողացն ողորմի տան... սինօռն և համուհուան այս է... գրեցաւ ՌՃԽԳ Ապրիլի ևե...։ Վերև՝ կնիք. կողքին՝ «Ես Իսահակ վարդապետս առաջնորդ ս. առաքելոյն, Այախչենց Կիրակոսի վկայութեամբ մոհրեցի». ապա ձուաձև, կլոր և ութ անկիւնի կնիքներ, Սարգիս, Մատթէոս Ջուղայեցի, խոյեցի Պետրոս, վարդապետների և այլոց ստորագրութեամբ։

Թիւ 7. միատիւն, նոտրգիր. «Մեք Վարագնակերտցի տօլվաթաւորքս, Սարգարս որդի Ազաջանի, Կուլամիրս... Ղազարս... Գրիգորս... Թարխանս... միաբանք... որ յառաջ տված էր վանիցն, կրկին հաստատեցինք թվին ՌՃԾԳ...»։ Կնիք—«Ցի ՔԻ Ծ Ա Սարգիս վարդապետ» տակը գրած է. «Ես Սարգիս վարդապետս առաջնորդ ս. առաքելոյն Թադէոսի, յօժարութեամբ վերոյիշեալ տօլվաթաւորացն գրեցի և մոհրեցի...»։ Ապա Աստուածատուր վարդապետի, Տէրներսէսի, Խօյի Ստեփաննոս վարդապետի, ըւէս Մուրատխանի, խոյեցի Պետրոս վարդապետի ստորագրութիւնները։

Թիւ 8. նոտրգիր, միատիւն. «...Մելիք Պնկի գառերըս Էթարս, Խաթունս մեր հօրէն մնացած Մակուայ այգիէն (բ. այգի).. յօժարութեամբ տվաք վախմ ի դուռն Թադէոս առաքելոյն.. և մեք Սարգարս որդի Էթարին և Յովսէփս որդի Խաթունին վերըստին մեր մարց կտակն և վախաթն հաստատեցաք... թվին ՌՃԾԳ, Հոկտ. Ժ. վերոյիշեալ վարդապետների և այլոց կնքով և ստորագրութեամբ առաջի Անծկու տօլվաթաւորացն։»

Թիւ 9. նոտրգիր. «Ի ՌՃԷ թուաջն Յուլիսի Ժգ-ին գրեցաւ ի մէջ ս. Սարգիս եկեղեցու.. ես մահտեսի Սելումս իմ այգին վախուալ արի ս. առաքելուն Թադէոսի...» կնիք—քառակուսի և ութ անկիւնի—Տ. Յովաննիսի, Մարկոսի, Նազարի, ըւէս Պապիկի, Միրզախանի, Ալլահվերտիի և այլոց կնիքներով։

Թիւ. 10. Նոտրգիր. ...Թվին հայոց ՌՃՁԷ Հոկտ. ը. ...Ես Աստապատեցի Կուստնենց Մեհրապի որդի Յուսէփս և ես Պօղոսի կին Տուփլումս... ծախեցինք... Ղուռուչայի այգին.. ս. Թաթէոս առաքելի անուամբն մեր Արզխմանի որդի Աստուածատրին.. որ վախուալ արեց ս. Թաթէոս առաքելուն ժե. թումանն..»։ Կնիք—քառակուսի, ութ անկիւնի, ձուաձև. «Ես Մելիք մահտեսի Ալումս վկայ եմ..»։ Կան կնիքներ նաև Միրզաւէլի, Բարխուդի, Սլէմանի, Թէվումի, Էհտիպարի, Աւտալի և այլոց։ «Ես Բալասանի որդի Խաչատուրս գրեցի Յուսէփի և Տուփլումի խըղարօվն գայս ղապալէս»

Թիւ 11. Նոտրգիր. «Թվ. ՌՃՁԸ Յունիս գ. Ճիլաղի կողակից Սանդուխտս յետ իմոյ Աղիս և սկեսրս, այսինքն Առուխին, Ախանումուղլին.. ինչ որ իւրեանք տվել են իւրեանց հոգոյն.. վախուք արի.. ս. Աթոռին Ստեփաննոսի Նախավկային.. տվեցի իմ հոգևոր հայր և մեր առաջնորդ Աղաբէկայ վարդապետին, որ մեզ մէկ քանի ժամի մէջ յիշէ...»։ Վկաների ստորագրութիւն. երկու տեղ կնիքի փոխարէն մատ է դրած, այսինքն մատը թանաքի մէջ թաթխել և իբրև կնիք դրոշմել է. դրանց տակը գրած է. «իմ Սանդուխտիս մատն է և ինձ ղաբուլ»։ Ամենից տակը գրած է. «Եւ ես ս. Նախավկայի միաբան Աբիստակէս վարդապետս վկայեմ, որ Սանդուխտի խըղարօվն գրեցի ՌՃՁԸ Յունիսի գ.»

Թիւ 12. Նոտրգիր. «Թուին Հայոց ՌՃՂԸ Հոկտ. իգ... Մեք Ուռջինանց Սարգէսի որդիքս.. ծախեցինք մեզ ռաաթ տված տուն իւր չորից հատերօվն ս. Թաթէոսի առաքելոյ յառաջնորդ Մինաս վարդապետին 10 թումանի, որոյ կէսն է ե. թումանս»։ Ստորագրութիւն. «Ես Մելիք Յակոբջանս վկայ եմ..», քառակուսի, ութ անկիւնի, ձուաձև հայերէն կնիքներով, իսկ մէկը նա՛և պարսկերէն ու հայերէն։ «Իմ Դաթոյիս, Գրիգորիս, Ուռիջանիս, Ըստեփանիս մատներնիս է, որ ղըրինք մեզ ղապիլ է» (որդիք Սարգսի Ուռջինանց). «Ես Ստեփանի կին Վարթերս մատս դրի ինձ ղապիլ է». «Ես Տր Ստեփաննոսի որդի Գրիգորս գրեցի Դաթոյի, Գրիգորի, Ուռիջանի, Ըստեփանի խըղարօվն։»

Թիւ 13. Ես լուսահոգի Մահդասի Սեւլամի քոյր Սինաս և փեսայ Խաչատուրս գնեցինք և վկայեցինք, որ մահտեսի Սեւլամն.. իւր առած այգին վախմ արուց ս. Թադէոս առաքելոյ.. և նա եղև անյայտ... Վասն որոյ մեք վերոգրեալքս.. այգին վերստին վախմ արարաք վանից Թադէոսի սրբազան առաքելոյն..: Եթէ այսուհետև դաւայ տանելոյ լինիմք և կամ թուղթ զինչ և իցէ, թէ՛ փախուպյանայ թէ՛ ղապալայ թէ՛ քամառել և թէ՛ այլ ինչ գիր, ամէն սուտ է և անընդունակ, թէ որ մեք և մեր ազգայինքն դաւի անելոյ լինիմք ժե. թուման խանին տամք: Բայց եթէ որք ի յառաջնորդաց և կամ ի միաբանից... ծախելոյ լինի և կամ գրաւ դնելոյ պղատիժն Կայենի և Յուդայի առցէ. գրեցաւ այս գիրս վկայութեամբ Խոջայ քահանայիցն, որ է Տէր Յոհաննէսին, Տէր Մարկոսին, Տէր Մարգարին, Տէր Գաբրիէլին, և իշխանաց սոյնոյ քաղաքիս ըւէս Պապալին, Օհանին, երեցփոխ Մոլաքսին..»: Կնիք - ձուաձև, ութ անկիւնի, քառակուսի, պարսկերէն—հայերէն, կամ պարսկերէն:

Թիւ 14. շեղագիր հին «...Ես մահտեսի Նազիշու եղպայր Սափարս իմ հայրենական տան կոմի տեղն, որ է իմ բաժինըն, վախմ արի ս. Թաթոս առաքելուն և իմ կողակից Նուպարի հոգէբաժին..»: «Ես ըւէս Պապալս վկայ եմ... գրեցաւ ՌՄԻԱ Նոյեմբեր»:

Թիւ 15. թվին ՌՄԻԲ. Մարտի դ-ումն. Ես Կոհրօվանց Ճհանի որդի Պապօվս... կըրգին վախմ արի ս. առաքելուն (այգին).. և այս եղև ի յառաջնորդութեան գերայհուշակ ս. առաքելուն Թաթէոսի Տն Եսայիաս աստուածայըան մագրոսկինցող վարդապետին և Նորին ս. վանից բազմաշխատ միաբան Գէորգ գերզգօն վարդապետին և ես Տր Նազարի որդի Տր Մարգարայս Պապալի յօժար կամօքն գրեցի և կնքեցի, վկայ եմ:» Կնիքներ..:

Թիւ 16. «Ի ՌՄԼԴ թվոջ Օգոստոս ամսոյ... ես Ղափանցի մահտեսի Օհանէսս և իմ կողակից Թագուհիս մեր տներն հանդերձ պարչայով որ է Խոյու քաղաքին ի թաղն ս. Սարգիս եկեղեցուն.. վախմ արարինք ս. Թադէոս առաքելոյ աթոռին.. մահտեսի Օհանէսըս ձեռամբ իմով գրեցի և յօժարութեամբ իմով երբ ընձայ և պատարագ մատուցի ս. տանն և տաճարին Ա..ւ.. ի ժամանակին որ էր տեսուչ և առաջնորդ Սահակ աստուածայըան վրդպ-ին:» Կնիքներ...:

Թիւ 17. շեղագիր. «թվին ՌՄԽԶ... ես Մինասի թոռ և Վարթանի որդի Մարգարաս.. իմ յօրաբաժին մուլքն ձախեցի ս. Թաթէոսի առաքելոյ վանիցն առաջնորդ վրդ-ին Եր. գին. որ կէան կանէ ծ. շահի ձեռամբ երեցփոխան Եղոյին և այլ Ներքոյ կրեալ քահանայից և իշխանացն..:» Կնիք— քառակուսի, ութ անկիւնի:

Թիւ 18. շեղագիր. «...Ես Յովէփի որդի Նազարս. յայգիս վախու ք էի արարեալ ս. առաքելոյն Թաթէոսի, զենի քանի ամաց կատարեալ էին բոլոր գծաւան և գառնկան ի ժամանակս խառնակութեան զօրացն պարսից և հեւսխայնոց... ի թուականութեանս մերում ՌՄԾԵ և Փետրուարի 20-ին. ընծայեցի.. Բ. հատ տեղ ես.. (յառաջնորդութեան Սիմէօն վարդապետի..:» Կնիք—պարսկերէն, Մարգարէ և այլն:

Թիւ 19. հին շեղագիր «թվին ՌՄԾԸ Յուլիսի. Ես մահտեսի Եազիչու որդի մահտեսի Ստեփանս ձախեցի Թադէոսի առաքելու վանիցն... ի առաջնորդութեան Տն Սիմէօն վարդապետին (իմ տներն).. Գ թուման ԽՌԺ շահի, որ կէան կանէ ԺԹՌ-էն Ե շահի պակաս: Կնիք—քառակուսի, ութ անկիւնի «Ես Տր Ստեփաննոս գրեցի»:

Թիւ 20. «Ես Պայազետցի Տ՛ր Գաբրիէլի որդի մահտեսի Յարութիւն և իմ կողակից մահտեսի Աննա, ի թուին ՌՄՀԷ և Հոգոսմբերի ժա-ին ի ժամանակս Տն Բարսեղ արքեպիսկոպոսին և առաջնորդին ս. աթոռոյն սրբազան առաքելոյն Թադէոսի, մեք մեր յօժար կամօքն զմեր Ե. կտոր տունն, և առաջի եղեալ խամն, վախուպ և կտակ արարինք.. Սըզն առաքելոյն Թադէոսի վանիցն և.. թասլիմ արարինք առաջնորդ Բարսեղ արքեպիսկոպոսին..:» Կնիք—Տր Ստեփան և այլն:

Թիւ 21... «Ես Մակուեցի Բաղդասարի

որդի Վարդանայ իմ կամօքս․․ իմ հայրենական մլքերն․․ յանձնեցի ի դուռն Թադէոսի առաքելոյն, ի ձեռն ի Սահակ վրդպ-ին․։ Դարձեալ մեր երկու այգին հասանի ի ձեռն Սահակ վարդապետին։» Կնիք—ձուաձև, մէկը պարսկերէն։ «Ես Տր Գրիգորս գիրս գրեցի։»

Թիւ 22. պատմական դէպքերի ժամանակագրութիւն է, ՌՃ-ից սկսած մեծ մասամբ Թադէոս առաքելոյ վանքին վերաբերեալ։ 16 թ. հին նոտրգիր.

Թիւ 23—Տես կոնդակ 3.

Թիւ 24. 102×39. ճառտ թղթի վրայ. ձախ լուսանցքում ամբողջ թղթի երկարութեամբ 2 երսկայական ծաղիկներ ամանների մէջ, վերեւ կառասիւն կամարակապ շէնութեան վրայ 3 խաչաններ, աւելի վեր «Լ^», ներքեւ Մարիամ Աստուածածին նստած աթոռի վրայ, գրկին մանուկ Փրկիչը, որ աջ ձեռքով խաչակնքում է եւ ձախովն բռնել է աշխարհագունդը, երկուսի գլխին եւս թագ. աջ կողմի կամարի տակ կանգնած է Թադէոս առաքեալը, աջ ձեռքին աւետարան, ձախին գաւազան եւ շէշ, իսկ ձախ կողմը Ս. Սանդուխտ նստած բռնած եւ այս բոլորը դեղին, կարմիր, կանաչ, կապոյտ եւ ոսկեգոյն գոյներով: Պատկերի ՄԵՆՈՒԹԻՒՆՆ է 45×30 ՍԿԶԲՆԱՏԱՌԸ մարդ օձագիր եւ Կնիք—«․քոփ ծառայ Սիմեօն վարդապետ 1235»:

Օրհնութեան թուղթ սկսում է «Ի հրաշազարդ գրանէ և ի գիր մաքուր որոյ չերմէ լուսածորան և ի աստուածաբնակ գերամաքուր և գերահրաշ ս. Դամբարանէ Նախկին լուսաւորչին մերոյ և ընտրեալ մեծի սրբազնասուրբ առաքելոյն Թադէոսի․․ ի Տր Սիմէօն վարդապետէ և արքեպ-է». Թուղթը ուղղուած է Սպահան, Սալմաստ, Ուրմի, Ջուղա, Վան, Բերկրի, Արճէշ, Արծկէ, Խլաթ, Բաղէշ, Մուշ, Բուլանղ, Դարա, Սաղղուան, Հօրակեալ քաղաքներին և վայրերին։ Թղթի մէջ նկարագրելով պարսիկներից վանքի աւերումը ու կողոպուտը և նեղութիւնները, յայտնում է որ ինքը ուղարկում է Առաքել վարդապետին հանգանակութիւն անելու, յուսալով, որ ժողովրդականները իրենց առատ նուէրներով վանքի վերաշինութեան պատճառ կըդառնան, խոստանալով, որ պիտի շինէ «ա. Ջրաղաց, ա. տնտեսատուն, ա. սեղանատուն, բ. փակեանք վասն անասնոց և քանի սենեակք վասն միաբանից և ա. աղբեր ջուր․․ գրեցաւ ի ՌՄՂԹ թուաջուս (Վանք ս. Թադէոսի)։

Թիւ 25. ճառտ թղթի վրայ. 2 լուսանցքում գեղեցիկ ծաղիկներ, լուսանցքների մէջ նախշական խաչան. վերեւ 2 թեւաւոր հրեշտակներ բռնած ունեն մի գեղեցիկ լուսանկ վահանի գմբէթի վրայ, որի մէջ գծած է թուղթագիր եպիսկոպ. Թադէոսի վանքի, 2 կողմը եւեգ մասուն, աւելի ներքեւ երկու կոյս, ցած՝ վանքը միայնակր, մի կողմը Ղարեր, աջ կողմը վանք շինող նարտարապետը, աւելի ցած՝ լուռ վարդապետ, մէկը նրստած ձեռին գաւազան եւ խօսում է, մի կողմ Թադէոս առաքեալը կտրած գլխով, միւս կողմը ս. Սանդուխտ կարմիր, կանաչ, դեղին, կապոյտ եւ սեւ գոյներով: ՍԿԶԲՆԱՏԱՌԸ թռչնագիր: ՄԵՆՈՒԹԻՒՆԸ 128×44․․ կնիք—«․քոփ ծառայ Բարսեղ վարդապետ 1810.

Օրհնութեան թուղթ ուղղուած է բոլոր հայերին: Վանահայր Բարսեղ արքեպիսկոպոսը ուղարկում է Առաքել վարդապետին վանքի շինութեան համար հանգանակութիւն անելու, յայտնելով որ այդ երախտիքը շնորհել է իրեն «տէր և բարերար այցելու սրբազան Նփրեմ»։ Նա ասում է. «Ահա այս Ղ ամէ որ սկիզբն արարեալ եմք սրբոյ վանիցս հիմնարկութեան. Ղ ես ամք հազիւ կարեմք շնորհիւ Տն գլխաւորել․․ այս է ձև սորին (տաճարին) քառանկիւնի լայնութեամբ և խաչանիշ խորանօք, անհամար բարձրութեամբ և հնգեակ կաթուղիկէիւ, չորրորդ սիւնք ի մէջի և յեօթն սեղանք պանազան յօրինուածովք ի հիմանց մինչ ի վեր ձիւնափայլ սպիտակագոյն քարիւ․․ որբատաշ քերեալ․․։ Գրեցաւ շրջաբերական և թուղթս օրհնութեան ի թուին ՌՄԿԹ Նոյեմբերի 10․․»։

Թիւ 26. մասնաւոր թուղթ Բարսեղ արքեպիսկոպոսի Թմպուլղիւղի քահանաներին, Գեղարդի և մասանց պատկերներով. 1810․․․ ստորագրութիւն «Բարսեղ արքեպ. հայոց Ատրպատականի հայոց»

Թիւ 27. Սահակ եպիսկոպոս Սադունեանի ա. մասնաւոր օրհնութեան թուղթը «Սվահող» գիւղացի Տէր Մկրտիչ քահանային և մեւք Օհանջան Սարգսեանին ուղղուած, որի մէջ

պատուիրում է իւր նոցա հովիւ կարգուիլը և հրամայում է հասի և չհասի կանոնները խստութեամբ պահել։ Գրուած է 1851 Յուն. 18, Թաւրիզում։ Ստորագրութիւն. Առաջնորդ հայոց Ատրպատականի Սահակ եպիսկոպոս Սադունեան։

Թիւ 28. Շնորհակալութիւն է յայտնում Ղարադաղի ժողովուրդին յանուն ս. Թադէոս առաքելոյ արած ընծայաբերութեանց համար։ Գրուած է 1852 Յուլիս 12-ին Թաւրիզում։ Ստորագրութիւն. Առաջնորդ հայոց Ատրպատականի Սահակ եպիսկոպոս Սադունեան։

Թիւ 29. Նոյն եպիսկոպոսը Սևահողցիներից նախ պահանջում է վանքի տուրքերը լրիւ հատուցանել, երկրորդ՝ քահանային (Տէր Մկրտիչ) և ժողովրդին պատուիրում է հասի չհասի համար իրեն դիմել, երրորդ՝ կազմել ճշգրիտ ցուցակ «որքանութեան շնչոց»։

Թիւ 30. 144×32,5 մեծութեամբ, ինչպէս միւս բոլորը նոտրգիր. մեծադիր խորանով (24,5×16), որից ցած պարունակում են Կարմրաւոր ս. Աստուածածնի 5 գմբէթները: 3 կամարակապների մէջտեղ նստում է Մարիամ Աստուածածին՝ Մանուկ Փրկիչը գրկին, ձախ կողմը Պօղոս առաքեալ Դեղարդը եւ Աւետարանը ձեռքին: Աջ կողմը Պետրոս առաքեալ բանալիները ձեռքին: Աւելի ներքեւ Թադէոս առաքեալը աղօթելիս. առջեւից աղբիւր է բղխում: Սկզբնատառը շատ գեղեցիկ պարդուած. օձ, ստորին մասում ցած թռչուն, վերեւ Ի-ի կարը (օձի գլուխը), կորի մէջ թռչուն առիւծ, օձի բերնին կարմիր եւ կապոյտ պտուղներ. Ի-ի վերեւի մասը բաղկացած է թռչնատառ արծիւից, ինչպէս միւս կենդանիները կծում է նրան. թեւերի վրայ հրեշտակ որ նիզակով ծակում է օձի վիզը. Կնիք.—Սահակ եւ Բարսեղ վ-երի: Սկսում է. «Ի ս. եւ ի փառաւորեալ Աստուածազարդ եւ մեծապայծառ, հրաշալի եւ հրաշափառ, Աղինաստաս եւ երկնանման Կարմրաւորայ Ամենօրհնեալ Տիրամայր ս. Աստուածածնի բազմահրաշ Ուխտս: Եւ ի սրբոց գլխաւոր առաքելոցն Պետրոսի եւ Պօղոսի հիմնարկեալ խորանացն. Եւ ի սարսափելի ս. բեւեռ ուսից մեր կենարարին. Եւ ի մասն յօղի Անմեռանելոյ ս. Աստուածածնին. որ ամփոփեալ է սրբազան առաքելոյն Ք ի Թադէոս. եւ ի մեռելայարոյց հրաշալի Կարմիր Աւետարանն: Եւ ձեռամբ ս. Թադէոսի օծեալ դիւանակալած սրբոյ խաչին, եւ յայլ ամենայն բազմազգուման սրբոց մասանց եւ նշխարաց...: (Կարմրաւորայ վանքն) շինեալ է... ի յերկիրս Վանայ, հանդէպ բերդին յարեւելից կուսէ, ի գիրկս լերինն Վարագայ, ի վերայ... բլրոյ միոյ ձեռամբ Թադէոսի սրբազան առաքելոյն... որ եկեր ի հայս... զշիշ իւղն՝ եւ զԳեղարդն աստուածամուխ եւ զբեւեռսն աստուածընկալ..., եւ զհողն Տիրամայր ս. Աստուածածնին..., եդն նմա ի վայելուչ վայրս Կարմրաւորայ... եւ ի գիշերին (աղօթելիս) երեւեալ նմա իւրն ամենօրհնեալ Տիրամայր ս. Աստուածածինն (ասէ)... ով սիրելի... աստ կառուցես զտաճար անուան իմոյ եւ աստ ամփոփեա զվարշամակ գլխոյ իմոյ, եւ զբեւեռն ուստի Աստուածորդւոյս, եւ անուանես զանուն տաճարին Կարմրաւոր, որպէս զիս տեսանես կարմրազգեստ փառօք... Եւ ի տեղւոջն յորում զծնունդն եղեալ աղօթէր սուրբն, բղխեցաւ աղբիւր եւ առատացաւ բժշկութեան: Եւ ի յայնմ օրէ մինչեւ... (հաւատացեալ ուխտաւորք) առնուն զայն բժշկին... յամենայնից ցաւոց»: Այս յայտնելով որ ինքը (վանահայրը) ուզում է հիմնից նորոգել վանքը, խնդրում է աջակցութիւն:

Տակը աւելացրած է. «Գրեալ էր օրհնութեան նամակն օրինակիս ի թուականութեանս հայոց ՌՃԿԸ ամին, երկիրս Վասպուրական, ի մայրաքաղաքս Վան, ընդ հովանեաւ Կարմրաւոր ս. Աստուածածնին, յԱռաջնորդութեան յուսահագ սրբոյ տանարիս Տէր Յովհաննէսի հոգեւոր արհեպ-ին: Որ եւ ես իմն՝ զԿարմիր Աւետարանն՝ եղեալ էր ս. Ուխտս, յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ա՛մ ննջեցելոց: Ի նմանէ կրկին օրինակեցաւ եւ զայս նամակս ի թ. ՌՄԽԴ.. յառաջնորդութեան անարժան արհեպիս (Սահակայ?):

Թիւ 31. 72×24 մեծութեամբ. վերեւ Աստուածածին 2 առաքեալներով, ներքեւ տաճար. «Ընծայեաց կամ Ծովականաց» Աստուածածնի վանահայր Մարտիրոս եպիսկոպոս Արտօոյ օրհնութեան թղթովս «Շիրակին Միրակին եւ Ջիրակին» կարգում է վերակացու վերոյիշեալ վանքի եւ յորդորում է ժողովրդականներին որ առատ նուէրներ տան, որպէս զի կարելի լինի 100-ի չափ վանքում մնացող աղքատներին պահպանել: Գրեցաւ.. կնքեալս ի թուին ՌՄ. օգոստոսի 1. որ ի վանս Ընծայեաց ս. Աստուածածնին:

# ԺՈՂՈՎԱԾՈՒ Գ.



## ԿՈՆԴԱԿՔ ՎԱՒԵՐԱԳԻՐՔ

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԵՒ ՄԵՏՐԱՊՈԼՏԱՑՆ ԱՂՈՒԱՆԻՑ.

Թիւ 1. Տուատս (պատճէնս) Սիմէօն կթղկս. ինչպէս երեւում է, տուել է ըստ խնդրանաց Աղուանից կթղ-ին. վերև ուժ անկ. կնիք Սիմէօն կթղկսի. կարմիր (ՌՄԺԹ-ին). տակը գրած, որոյ պատճէն առ իս ունելով զտուատս զայս կնքեցի։

Իսկական ձեռնագիրս տուել է Աղուանից Սիմէօն կթղկսը., նոյն ազգի Ներսէս կթղկսին. երկարատև կռիւներից յետոյ, ամենայն Հայոց Յակոբ կթղկսի. յորդորանօք: Հաշտութիւնը կայանում է այսպէս Սիմէօն կթղկսը. (Աղուանից) առանձին թղթով գիջումէ Ներսէսյին, «զոր ինչ առնեմ, առանց հրամանի քո չառնեմ, որքան կենդանի իցեմ, իսկ եթէ մինչև իմ հայոց երկիր գնալն նմա կամ վաղճանիլ պատահի կամ յօտար երկիր որ ոչ լինի ձեռնհաս, ես զայս մերողդրեալս կատարեմ առանց պատճառի: Այլև զայս հաստատաբար գրեմ Սիմէօն կթղկոս., որ ամենևին իմ մարմնաւոր ազգականացն կթղսի. անուն չլինի...: Գրեցաւ ի ՌՃԻԶ թուին յօգոստոսի ին. իմով ձեռամբս: Կնիքի տեղը. գիծ. տակը Սիմէօն կթղկս. Աղուանից. ապա ձախ լուսանցքում Պետրոս և Աւետիս եպիս-ի կնիքների տեղերը: Իսկ հայոց Սիմէօն կթղկսի. ժամանակ պատճէնս ստորագրել են, և կնքել տեղապահ Մկրտիչ արքեպիս. (1210 կնիք.) Սարգիս եպիս. Զաքարիա եպիս. Աբրահամ վարդապետ, Զաքարիա եպ. առաջնորդ Իւչքիլիսայի, աթոռակալ Անդրէաս եպիս. ժամօրհնող Պօղոս եպիս. Թադէոս եպիս. Գալուստ եպիս. Պետրոս եպիս. Յոհան եպիս. որանցից վերև գրած է. «Մեք ս. և մեծի Աթոռոյս միաբան արքեպիսկոպոսունքս ըզքոյն հեղինակն (բնագիրը.) այսմ տուատիս տեսեալ կնքեցաք: Միւս երեսում գրած է. «Սիմէօն Աղուանից կթղսի. ձեռագրի տուատն է, որ Յակոբ հայոց և Ներսէսյ Աղուանից կթղկացն. է տուեալ։»

Թիւ 2. Սիմէօն կթղկսը. իւր խոստումները չէ կատարում, այդ պատճառաւ երկպառակութիւնը շարունակում է, ի վերջոյ ժողովուրդի ներկայացուցիչները ձանձրացած ժողովում են Գանձասար և գրում թուղթը. «...իմացաք ճշմարիտ որ Ներսէս կթղսն. զոր ինչ ժողովում է վասն աթոռոյն է, և զոր ինչ Սիմէօն հաւաքում է իւր հօր տունն է մուղում.. մանաւանդ մինչև ցայսօր խաբեաց զմեզ ասելով կերթամ Գանձասար և ոչ գնաց ուխտազանց լինելով:.. զկնի այսորիկ ով որ զՍիմէօն ուզէ և կթղսի. տեղ գնէ թէ վրդպ. թէ եպիս. թէ քհն. նզովեալ լինի և պարտական առաջի Աստուծոյ.. եթէ Սիմէօն գայ (մեր մէջ) թակեմք ջուղապ առնեմք և դուրս անեմք մեր մէջէն..»: Գործուած եկեղեցական զարդերն ու զգեստները վճռում են պահանջել Սիմէօն կթղից. «գրեցաւ ի թվին ՌՃԻ փետրուարի Ժ.»: Ստորագրութիւն Պետրոս վրդպի. Գրիգոր եպիս. Մեծարանից, Մելքիսէթ եպ. Ներքեցի (կնքեցի) Ամենափրկչի Դաւիթ եպ. Բարսեղ եպիս. Փառջի և առաջնորդ Շամքոռու, Թաթոս եպիս. Ոսկանէս եպիս. Յովսէփ եպիս. Ազարիա վրդ. Գետիկու. Պետրոս եպիս. Յովհաննէս եպիս. Մկրտիչ եպ. Խաչենու: Մելիք Թուրքիս Պարտաւ, մելիք Եսայի, մելիք Ալլահան, մելիք Փիրում, մելիք Միրզախան, խօջայ Պարխուտար և այլք.. կլոր, քառակուսի, ձուաձև, ութանկիւնի և խաչաձև կնիքներով (ս. թանաք),

հայերէն և պարսկերէն լեզուներով։

Թիւ 3. մուջահս յօրինել են «Համախութ, Հրուանայ, Հաքուայ և առ հասարակ Ալանոց երկրի» ժողովուրդը. բողոք է նրանց դէմ, «որք կամին զմեզ ցանկապատառանել և անջատել և բաժանել ի նախնի և ի բուն աթոռոյն մերոյ, այնպէսին մեք չեմք կամեցող.. մեր Աթոռն Աղուանից Աթոռն է, որ է սուրբն Գանձասար և մեր կթ՟ղկսն նորին նըստող կթ՟ղկսն, որ է այժմս Եսայի կթ՟ղկսն. կնիք և ստորագրութիւնք։

Թիւ 4. Աղուանից Յովհաննէս և Իսրայէլ կթ՟ղս-ների մէջ երկարատև երկպառակութիւն և կռիւներ է տեղի ունենում Գանձասարի գահի համար, ի վերջոյ ժողովուրդը ձանձրացած գիմում է ս. Էջմիածին «առ սրբազան վ....պետն ամենայն հայոց (այս ժամանակ Սիմէօնն էր) զի ընտրեսցէ զմի ի յերկուցն. հայոց հայրապետը գրում է երկուսին էլ իւր մօտ գալ, որպէս զի նրանցից մէկին ընտրէ. Յովհաննէսը 2-3 անգամ գնում է, իսկ Իսրայէլը «ոչ ս. Էջմիածնայ հնազանդեալ, ոչ յաթոռն գնալ յանձն էառ»։ Յովհաննէսը ընտրւում է կթ՟ղկս իսկ Իսրայէլը բանադրւում (սա նստում էր Երեց մանկանց վանքում)։ Այս մուջալայով (գրով) Համախի ժողովուրդը երդւում է միայն Գանձասարի գահակալին ծառայել.. «իսկ հնազանդք սրբոյ Աթոռին Էջմիածնայ և Գանձասարայ, օրհնեցի ի սրբոյ հայրապետացն..»։ Վերոգրեալ մուջալաս յորդորմամբ առաջնորդին մերոյ Սահակ վրդպ-ին և նուիրակ Եղիազար վրդ.-ին մեք Դարպանդու քահանայք և ժողովուրդք հաւանեալ կնքեցաք.» Սահակ, Իգնատիոս վրդ-ների և այլոց կնիքները ու ստորագրութիւնները։ Ամենայած «ք՟ի ծառայ Յովսէփ վրդ. 1215»։ կողքին գրած «ս. Աթոռոյ Էջմիածնի միաբան և ծ՟առայ Յովսէփ եպիս-ըս, վերահասու եմ գրեցելոցն ի սմա.. հրամանաւ ս. Սիմէօն ամենայն Հայոց կթ՟ղին ի մէջ բանիս էաք»։

Թիւ 5. Եսայի և Ներսէս կթ՟ղների մէջ կռիւ է լինում գահի համար. հաշտութիւն է կայանում այն պայմանով որ առաջնի մահուանից յետոյ բ-դը գահ բարձրանայ, իսկ կաթուղիկոսութիւնը առհասարակ մնայ Եսայի կթ՟ղի ազգականներին իբր ժառանգութիւն, որոնցից և եղել էին հին կթ՟ղները։ Այժմ Ներսէսի մահուանից յետոյ սորա եղբօրորդին Իսրայէլ ինքնիրեն կթ՟ղկս է հռչակում։ Ահա թէ ինչն է առիթ տալիս ժողովուրդի ներկայացուցիչների բարկութեան և թղթիս, որով միահամուռ յօժարութեամբ ընտրում են Եսայի կաթուղիկոսի եղբօրորդի Յովհաննէսին կաթուղիկոս. Իսկ Իսրայէլին համարում են «կող և խարխափայ» և եթէ մեր մօտ գայ ասում են «թակեմք և ջօղայպ առնեմք». Ներսէս կաթուղիկոսի տարած բոլոր իրեղէնները կպահանջենք։ «Գրեցաւ ի թվին ՌՄԾԲ փետրուար ամսոյ Ի-ն է..» Կնքել և ստորագրել են, Պաղտասար եպիսկոպոս Ամարասայ, Եղիա վարդապետ Յակոբավանից. Յոհան վարդապետ Յակոբավանից, Եղիազար վարդապետ Գանձասարայ, Սարգիս վարդապետ Դաղաղու, Պետրոս, Յարութիւն, Սողոմոն, Յովէլ վարդապետներ. Մելիք Հուսէյնի որդի մելիք Շահնազար Վարանդու, մելիք Եկանի որդի մելիք Յեսայի Դիզագու (այս երկուսի կնիքները պարսկերէն), մելիք Միրզախան Խաչենու, մելիք Քօխաս Յօրուկունոյն Դիզագու, մելիք Յուսէյնի որդի Յօսէփ, մելիք Արամի որդի մելիք Բախտամ, Սարգիս պէկ, Օսէփ պէկ, և այլն. քառասունից աւելի կնիքներ, կլոր, ձուաձև կնիքներ, պարսկերէն և հայերէն լեզուներով։

Թիւ 6. վերև կարմիր կնիք Աղուանից Երեմիա կաթուղիկոսի ՌՃԻՆ-ից, որով յայտնում է թէ Յառաջաձոր գիւղի տէր Դաւթի կորցրած Հարականք ինքը տեսել է Երքանի Տ. Գրիգոր երէցի մօտ։

Թիւ 7. Կիրակոս վարդապետի կնիք, ՌՃԼԲ, որը իբր աթոռակալ և տեղապահ, կաթուղիկոսի կողմից գրում է տանուտէր Պահարին և քահանաներին և Տ. Եսայուն նորից աւագերէց կարգում. վերև գրած է. Երեմիա ամենայն Աղուանից հայրապետի գրեցաւ ՌՃԼԸ. ապրիլ Ը.

Թիւ 8. Եսայի կաթուղիկոսի կնիքը. կլոր և կարմիր, որով վերոյիշեալ գիւղի Տ. Եսայուն կարգում է աւագերէց և եկա-

մուտների 2 բաժինը յատկացնում նրան, և վախիլ է նշանակում: Գրեցաւ ՌՃԾԶ, սեպտեմբերի եր։

Թիւ 9. Եսայի կաթուղիկոսը նոյն գիւղին աւագերէց է կարգում Տ. Գաւթին ՌՃԿԵ թուին, ՌՃՀԴ գրութեամբ հրամայում է գիւղը ծուխերի չբաժանել. Կնիք—մեծ, կլոր, կարմիր, «Տէր Եսայի կթ՟ղիկս Աղուանից և պատրիարք Գանձասարայ»։

Թիւ 10. ՌԲՃԳ-ին գրուած, Ներսէս կաթուղիկոսի թուականը երէցփոխ ընտրելու մասին.

Թիւ 11. Ներսէս կաթուղիկոսի Շաքեցի Աբրահամ եպիսկոպոսին տուած եպիսկոպոսական վկայականը. սկսում է. «Յի՟ քի՟ ծառայ տէր Ներսէս կթ՟ղի հայոց որ ի կողմանս Աղուանից փոխանորդ և յաջորդ սրբոյն Եղիշէի առաքելոյն և Գրիգորիսի որ. հայրապետին թոռին մեծի լուսաւորչին հայոց, և ծայրագոյն պատրիարք երկնահանգէտ, Աթինասարաս, սրբոյ և մեծի գերահրաշ Աթոռոյս Գանձասարայ...»

Թիւ 12. մասնաւոր գրութիւն Իսրայէլ կաթուղիկոսի ութ անկիւնի կնիքով, (ՌՄԺԲ, կնիք).

Թիւ 13. Կոստանդ վարդապետին «նվիրակ» է կարգում և յորդորում է մի քանի քօխվաններին աջակցել նրան. Կնիք—կլոր, կարմիր. Իսրայէլ կաթուղիկոս 1210.

Թիւ 14. ՌՄԾԸ, ապրիլ ը-ին Օվանէս անունով մէկին Սիմէօն կաթուղիկոսի տուած օրհնութեան թուղթը, 2-երեսում ես նոյն բանը գրած.

Թիւ 15 և 16. Յովհաննէս կաթուղիկոսի միանման թղթերը ուղղուած, «բարոն Հախում ուշբաշոյն» և «Նիրակոս քոխվային», որով նոցա վստահեցնում է կրկին վերադառնալու իրենց հայրենիքը, «բայց այժմ սահիպ Իբրահիմ խանն շատ չափազանց եսուր քեզ թէ իբր նա իմ սիրելի է և կամ լաւծ եմ թէ ղառիմե օջաղ զատայ է պիտի խաթրջամ անէք որ կայ օրդումն կերաւ մեզ հաւատցրուց մէկ գիր այլ ինքն գրեց մեզ և պուսուրմիշ արաւ թէ գրեցէք (Թիւ 16): Կնիքները ՌՄԺԲ թուով.

Թիւ 17. Յովհաննէս կաթուղիկոսի, Շամախու և Ալանաց երկրի հովուին գրած մտերմական թուղթը, իւր նախշուանում գտած ընդունելութեան համար.

Թիւ 18. Յովհաննէս կաթուղիկոսը Աբրահամ քօխվային յորդորում է իւր նուիրակ Յակոբ վարդապետին աջակցել.

Թիւ 19. նոյն քօխվային, կին արձակելու մասին. իբր ընտրոչ հաստուած յառաջ ենք բերում, «զի ահա գգիրդ եկաւ ի վերայ Սարգիս վրդպն. այն կին արձակող անիրաւ մարդկանցն կողմէն հիմա մեզ գրեցինք Պետրոս վրդպ-ին. որ կամ տանիլ տուրեան վանքն կամ ինքն կայ էտեղ քեզ մօտ նոցա բան չինի, որ զաւակ ունէն ամենևին նոցա արձակումն չկա հալալաթ դու այլ մուղայէթ լինիս ապրի իմ որդին այն չուն չան որդոցն կանայքն պահել պիտէն թէ որ չի եաշէն յղես զան էտեղ հալալաս լեր ողջ.»:

Թիւ 20. նոյն քօխվային. Յովհաննէս կաթուղիկոսը յայտնում է որ Յակոբ վարդապետին նշանակում է նուիրակ և պատուիրում է հոկել և աջակցել նրան:

Թիւ 21. Հերակլ կայսեր գրութիւնը Աղուանից կաթուղիկոսութեան, որով յայտնում է թէ բաղդի բերմունքով, Իսրայէլ կաթուղիկոսը, արժանաւոր Յովսէփ վարդապետը (Յովհաննէս կաթուղիկոսի), ամենայն հայոց կաթուղիկոսի տեղապահ Միքաէլ վարդապետը միասին են պատահել, որոնց խորհրդակցութեամբ թագաւորը հետևեալ լուծումն է տալիս այդ աղմկալից խնդրին «Ձ՟ո ոք զուք ընդրէք և առ սրբազան կաթուղիկոսն առաքէք և ի ձեռն նորին նստուցանէք ի վերայ ձեր զայն է լինելոց կթղս. ձեր...: Գրեցաւ ի մայրաքաղաքն Թիֆլիզ, ի պալատն արքունի ի ՌՄԺԵ-ին, և ի յուլիս ժե. Կնիք—քառակուսի, պարսկերէն.

Թիւ 22. Ներսէս անունով մէկը Յովհաննէս կաթուղիկոսին առաջարկում է գրպրոցներ բանալ, ուսուցիչներ հրաւիրել, ուսումը (գրագիտութիւն) պարտադիր անել և միայն ուսեալներին քահանայ ձեռնադրել. գրեցաւ Մադրասում յունվարի 15, 1779 ին։

Թիւ 23. երգման թուղթ, Յոսէփ վարդապետին Յովհաննէս կաթուղիկոսի հաճութեամբ ընտրում են եպիսկոպոս ՌՄԺԳ դեկտեմբերի ին-ին. թղթումս հաւատարմութիւն է երդուում Յովհաննէս կաթուղիկոսին և նրա յաջորդներին.

Թիւ 24. նոյն թուին երդման թուղթ Յովսէփին եպիսկոպոսակից Եղիազար վարդապետի.

Թիւ 25. Աղթամարի թեմից Մառնավանից առաջնորդ Սուքիաս վարդապետ և Թոմայի վանքի միաբան Բարսեղ վարդապետ պատճառաբանելով թէ Աղթամարի կաթուղիկոսը ամեն տեղ չի ընդունուում, դիմում են Յովհաննէս Աղուանից կաթուղիկոսին եպիսկոպոսանալու համար, խոստանալով որ «եթէ մեք հայոց կաթուղիկոսի թեմի և վիճակի մարդ լինիմք եա և յառաջ մէկ խօսկ և բան լինի մեք անընթունակ լինիմք հայոց Աղուանից և յԱղթամարուս», ի ՌՄԺԶ թ. սեպտեմբերի լ. Գանձասարում.

Թիւ 26. երդման թուղթ, գրուած ՌՄԺԴ. յունիսի ե. Յակովբայ վանքի Մարտիրոս վարդապետի.

Թիւ 27. երդման թուղթ Պետրոս վարդապետի, ՌՄԺԷ, իզ մարտի.

Թիւ 28. երդման թուղթ Բարսեղ վարդապետի, ՌՄԺԹ ապրիլի ժա. որ եպիսկոպոսանալով կարգուում է առաջնորդ Ամարասի։

Թիւ 29. երդման թուղթ Քարխանի վանքի (Միրզիկ գիւղում) առաջնորդ Սարգիս վարդապետի, տրուած Իսրայէլ կաթուղիկոսին.

Թիւ 30. երդման թուղթ Մարտիրոս վարդապետի ՌՄԻԲ ապրիլի ի. ձեռնադրուած Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 31. երդման թուղթ Յարութիւն վարդապետի, ՌՄԻԶ մայիսի իե. ձեռնադրուած Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 32. երդման թուղթ Օհաննէս վարդապետի, ՌՄԼ. յունուարի գ. ձեռնադրուած Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 33. երդման թուղթ Պետրոս վարդապետի, ՌՄԼԳ մարտ ժէ. ձեռնադրուած Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 34. երդման թուղթ Պօղոս վարդապետի, ՌՄԴԲ մարտ ի. ձեռնադրուած Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 35. երդման թուղթ Ղուկաս վարդապետի, ՌՄԼԴ ապրիլ ի. ձեռնադրութիւն Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 36. երդման թուղթ Ոսկան վարդապետի, ՌՄԼԳ մարտ ժէ. ձեռնադրութիւն Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 37. երդման թուղթ Սահակ վարդապետի, ՌՄԼԵ ապրիլ իա. ձեռնադրութիւն Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 38. ՌՄԼԵ ապրիլի իա. երդման թուղթ Յարութիւն վարդապետի, ձեռնադրութիւն Յովհաննէս կաթուղիկոսից.

Թիւ 39. Սարգիս արքեպիսկոպոսի (մետրապօլիտ) խրատը հասի չհասի համար երկու քահանաներին. Կնիք—ծուածև եպիսկոպոսական թագով, եմիփորոնով և այլն.

Թիւ 40. Նոյն մետրապօլտի թուղթը, որով Թաղօղ, Հակակ, Մամատաձոր և Ծագօռ գիւղերի քահանայ է կարգում Տէր Մելքիսէթին. Յաջորդ Պաղտասարը վաւերացնում է.

Թիւ 41. Գրութիւնը ուղղուած է Պետրոս Իվանիչ Կաւալենցկեէին, գրողն է, Սարգիս արքեպիսկոպոս Գանձասարու, 1800 թուին. 1781-ից Գրիգոր պոտէմկինից և Յովսէփ «սր՝ղն առաջնորդից» Ղարաբաղի

մելիքները և Աղուանից կաթուղիկոսը թըղթեր են ստանում, որով յայտնում են կայսրուհւոյ դէպ ի նրանց ունեցած բարեհաճ տրամադրութիւնը։ Այս յուսադրական թղթի պատասխանը գրում են մելիք Աթամըն մելիք Իսրայէլեան, մելիք Աբօվն մելիք Յովսէփեան, Դանիէլ ուզբաշին մելիքբէգեան (եղբայր թղթիս գրողի) և Յովհաննէս կաթուղիկոսն Աղուանից. 1782-ին ստանում են պատասխանը. Յուլիս 17-ին մելիք Աթամը մեռնում է. երկրորդ նամակին պատասխանում են Յովհաննէս կաթուղիկոս, մելիք Մէջլումն մելիք Աթամեան, մելիք Աբօվն, մելիք Բախտամն մելիք Արամեան և Դանիէլ ուզբաշին...։ 1784-ին նոյեմբերի 5-ին Իբրահիմ խանը իմանում է այս թղթակցութիւնները, Յովհաննէս կաթուղիկոսին սպանում է թունաւորելով. Սարգիս եպիսկոպոսին (գրողին), Դանիէլ իւզբաշուն և միւս երեք եղբայրներին բանտարկում են Շուշում 9 ամիս 6 օր, և կաթուղիկոսական տան ամբողջ հարստութիւնը կողոպտում են. Այսպէս է վարւում Իբրահիմ խանը նաև միւս նամակագիր մելիքների հետ. Կաթուղիկոսական իշխանութիւնն ևս ուրիշ ցեղի է տալիս, չնայելով որ 33 կաթուղիկոսներ էին արդէն գահ բարձրացել. Խաչենեցւոց մելիքութիւնը որ կաթուղիկոսական տոհմինն էր ըստ Նատիրշահի ֆէրմանի յանձնեց ումեմն ծառայի մերոյ, ասում է գրողը։ Այս մելիք Մէջլումը և մելիք Աբօվը, ինչպէս և Սարգիս եպիսկոպոսը վարդապետներով և եղբայրներով փախչում են Վրաստան և Գիօրգի արքայից ստանում է Հաղբատ, և միջնորդում է որ Խաչենի մելիքութիւնը իւր եղբօր որդի Աստուածատուրին տայ։

Թիւ 42. Մելիք Աբօվի գիրը որով Սարգիս վարդապետին են տալիս Վրաստան ապաւինող Խաչենցիներին. քառակուսի կընիք մելիք Աբովի և Ջիմիլեզի։

Թիւ 43. Մելիք Միրզախանը խանի կողմից երաշխաւորում է որ այլ ևս շարիք չըներ վանքին և կարելի է դնել հոգևոր տէրըոջ (կթ՞ղին) ղուշչուց անելու. Կնիք—Քրիստոսի ծառայ Միրզախան։

Թիւ 44. Գանձասարի մի քանի բնիկ ծառաները Սարգիս եպիսկոպոս Ջալալեանցին թուղթ են տալիս որ տարին 24 թուման փող տան և վանքի բոլոր ծառայութիւնները պէտք եղած դէպքում կատարեն. 1818-ին։

Թիւ 45. ՌՃԾԺԳ-ին հունիս ի-ին. Բօկօնիր Ղնփուլկյ միվիօվիչ հրամայում է «Առաջնորդոյ Ալլահվերտի քօխայէն, որ Գանձասարի Ջահացը վանքին յանձնէ». Կնիք—ձուաձև, դրօշակ, սուր, աւիւծ և այլն։

Թիւ 46. Յովհաննէս, Պետրէէվ մի քանի հայեր ուղարկում է Գանձասար թուրքերի միջից հանելով, 1816 յուլիսի 14-ին։

Թիւ 47. Կօմենդար կապիտան Կալաչևսկի, 1828 յուլիսի 7-ին, Գանձասարի գահակալից խնդրում է որ իրենց յայտնէ թէ ինչո՞ւ գիւղացիները վանքին հարկ չեն տալիս և ուզում են ազատ լինել։ Նոյն թուի սեպտեմբերի 5 և 13. գրութիւններով (թիւ 48. թիւ 49) յայտնում է որ Ն. սրբազնութեան բոլոր ցանկութիւնները կատարել է։ (2821. 438. 486 համարներով)։

Թիւ 48 Սարգիս արքեպիսկոպոսը իւր դժգոհութիւնն է յայտնում պ. Պալաչևսկու մի քանի պահանջների առթիւ. 318՟. 1228, նոյեմբերի։

Թիւ 49. բաւականութիւն է տալիս, պ Պալաչևսկու հարցերին պատասխանելով. ամենամեծ վանքը Գանձասարն է, որ մետրապօլիտների աթոռատեղին է. երկրորդ Տաթև. թէ ինչպէս այս 2 մեծ վանքերը նոյնպէս և միւս վանքերը ունեին անհաղին կալուածներ, վաւերացած օտարազգի տիրապետների հրովարտակներով և խնդրում է որ նոյնը հաստատեն իրենք ևս։ 1828 նոյեմբերի 28. համար 318. Սարգիս արքեպիսկոպոս Ջալալեանց մետրապօլիտ հայոց և Աղուանից [illegible])։

Թիւ 50. Երդմնական թուղթ (Ռուսաց) 1799-ին գրած, շատ հետաքրքրական։

Թիւ 51. Նոյնպէս՝ աւելի հետաքրքրական, 1826 յունուարի 13։

Թիւ 52. մասնաւոր գրութիւն Պաղտասար վարդապետին մասունքի (ս. Գրիգորիսի) համար. Կնիք—ուԹանկլեանի, Ղունկեանոս վարդապետ։

Թիւ 53. նոյն վարդապետը պատմում է թէ ՌՉԳ-ին Շահ-Աբաս Աղուան գերիներին (մօտ 1000 տուն) տանում բնակեցնում է, իւր նրանց համար շինած Ֆահրապատ քաղաքում (Մազանդարանի մօտ). նոքա իրենց հետ տանում են ս. Գրիգորիսի աջը, եկեղեցին կողոպտողներն ս. աջն եւ տանում են, Ղունկեանոս վարդապետը ՌՃՂԶ-ին Աշրէշահից խնդրում է այդ և ստանալով բերում Հայաստանը ամենայն հայոց կաթուղիկոս Յակոբին չէ տալիս, բայց երբ Գանձասարում հայրապետական գահի վրայ բարձրանում է Յովհաննէս կաթուղիկոս ՌՄԺԵ մարտ ի-ին, Բաղդասար վարդապետի ձեռքով ուղարկում է այնտեղ։ Կնիք Ղունկեանոս վարդապետի, առաջնորդ Գեղարդի։

Թիւ 54. երդման թուղթ, Պաղդասար վարդապետ Ջալալեանցի. ս. Էջմիածնում եպիսկոպոսանալով խոստանում է 1. անաղարտ պահել Հայոց եկեղեցու բոլոր ծէսերը և դաւանութիւնը. 2. Անպայման հնազանդել ս. Էջմիածնին և նրա գահակալներին. 3. Հնազանդել ս. Սինօդի կարգադրութեանց և հրամաններին. 4. Հաւատարիմ պաշտպան լինել Գանձասարի շահերին և մետրապոլիտներին. եթէ այդ շահերը հակառակ լինեն ս. Էջմիածնի շահերին, պաշտպանել վերջինը. 5. Առտիճան տալ գիտութեամբ մետրապոլտի և վիճակաւոր առաջնորդի։ 1820 սեպտեմբերի 26-ի ս. Էջմիածին։ (Այս թ-ը. իսկականի օր-ն է.).

Թիւ 55. վերնագիրը՝ «Յովհաննէս բարձրագոյն բարեհաճութեամբ հաստատեալ կաթուղիկոս ամենայն Հայոց.» ուղղուած է Բաղտասար արքեպիսկոպոսին։ Սրանով յայտնում է թէ նրա ուղարկած 100 ոսկին ստացել, և վանքի (Գանձասարի) աղքատութեան և խեղճութեան վրայ ցաւումէ և թէ պատրաստ է այդ 100 ոսկին յետ ուղարկել այդ կարիքները հոգալու համար։ 1831. ս. Էջմիածին. կաթուղիկոս ամենայն Հայոց Յովհաննէս։

Թիւ 56. Պաղտասար արքեպիսկոպոսի գրութիւնը, որով Հաթերքոյ գիւղացիներից (Յովհաննէս քահանայ և Դանիէլ քօխվայ) տուրքերն է ուզում. 1832. սեպտ. 4։

Թիւ 57. Պաղտասար մետրապոլտից «Շուշուայ» գործակատար Գրիգոր քահանային, նորոգ հանգուցեալ Գալուստ վարդապետի գոյքերը պահելու, և յանդիմանութիւն առանց իւր հրամանի կատարուած թաղման համար և այլն։

Թիւ 58. Հաթերք գիւղի Դանիէլ քօխվային, որով պահանջում է վանքին հասանելիք 5 լաք ցորենը.. Ստորագրութիւն—վիճակաւոր առաջնորդ, Ղարաբաղու մետրապոլիտ Բաղդասար. Կնիք—Յ. Ք. Պաղտասար արքեպիսկոպոս, 1828. ձուաձև մէջտեղ խաչ։

Թիւ 59. ուղղուած է Թաղօտու, Մամատայձորու, Հակակու գիւղացիներին, որով նրանց խնդրանաց համաձայն ներում է Մելքիսէթ քահանային և իրաւունք է տալիս կրկին քահանայութիւն անելու։ 1834. 2 մայիսի։

Թիւ 60 Հաթերքի Յովհաննէս քահանային, տուրքը լրիւ է պահանջում. 1847։

Թիւ 61. նոյն քահանային, տուրք չըտուողների անունը իւրեն գրելու մասին. 1845. Շուշի, կնիք, կլոր, շքանշաններով։ «Մետրապօլիտ Բ. Հ. Ջալալեանց.»։

Թիւ 62. նոյն քահանային և Դանիէլ քօխային լուրի, խաշխաշ և այլն ուղարկելու մասին. Կնիք—կլոր. 1847։

Թիւ 63. նոյն քահանային. միրզա Առուստամբէգի զաւառեան և գլխահարկ կտրելու մասին, 1847. Շուշի. կնիք—ձուաձև։

Թիւ 64. նոյն քահանային յորդորում

է Աթաբէկի հետ միասին գործել, և օրավարից 2 լաք, եթէ չտան մի լաք տուրք վերցնել. 1848. Կնիք—ձուաձև։

Թիւ 65. ստացագիր վերին Թաղավարգի ցորենի. Կնիք—կլոր։

Թիւ 66. մետրապոլիտը յայտնելով վերին Թաղավարգի գիւղացիներին «սրբազան կաթուղիկոսի» կողմից Սարգիս վարդապետ Ջալալեանցի այցելութիւնը, յորդորում է նրանց իրենց եկեղեցին շուտով վերջացնել, որպէս զի նա տեսնէ և ուրախանայ 1848։

Թիւ 67. մասնաւոր գրութիւն. որով մի գիւղացու յանձնում է մի կտոր հող։ 1851։

Թիւ 68. 1853 դեկտեմբերի 16-ին Բաղդասար մետրապոլիտը իբր լիազօր իւատէր վանական կալուածների Կիզան անապատի «տափ»—երից մէկը տալիս է Առաջաձորցի Աղասի Մքիեանցին։

Թիւ 69. Դատաստանի թուղթը Բաղդասար մետրապոլտին, որով նրա ուղածը կատարում են և այլն. առաջ հայերէն, յետոյ ռուսերէն։ Ստորագրութիւն—մայեօր Կանդավուրով. Կնիք—պարսկերէն, քառակուսի, նոմեր 1182։

Թիւ 70. Բաղդասար մետրապոլտի «բարեկամը և մարդը» կտրել են վանքի հողում առանց թոյլտուութեան արածվող խոզերը և խոզարածին ծեծել. շտապս կապիտան Զանտրտովիչ խնդրում է վնասը հատուցանել։ 1832 Շուշի։

Թիւ 71. Ռէյտէրն թղթովս հրամայում է մէլիք Ղահրամանին (Խաչենի), որ Կիզանցի Ալլահվերտուն թողնէ վանքի գործերով զբաղուելու. Թիւ 954. Կնիք—պարսկերէն. Ստորագրութիւն— Կառավարիչ Ղարաբաղու գաւառին Ռէյտէր. 1833. սեպտեմբերի 6։

Թիւ 72. Ղարաբաղի գաւառական դատարանը պահանջում է Բաղդասար մետրապոլտից 19 րուբլի 27 կոպէկ։ 1840. դեկտեմբերի 15։

Թիւ 73. մասնաւոր նամակ Գրիգոր Խաչատուրեանցի Բաղդասար վարդապետին։

Թիւ 74. մասնաւոր նամակ Ասլան Աթաբէգեանցի, 1834. յունուարի 17. Շուշի։

Թիւ 75 և 76. առաջինը գրած է Յովսէփ վարդապետ Ջալալեանց 1849 ին. երկրորդը՝ Մովսէս վարդապետ Ջալալեանց-1846-ին։ Երկուսն էլ Գանձասարի տուրքերի մասին։

Թիւ 77. թուղթ ժողովուրդը երդմնեցնելու։

Թիւ 78. որով Պետրոս եպիսկոպոսը հաշտեցնում է երկու կուսակցութիւնները. գրեցաւ ՌՃԺ., յուլիս ի. Կնիք—Պետրոս և Սարգիս եպիսկոպոսների և Յոհան վարդապետի։

Թիւ 79. «Կամաւն Ա՟յ և թվիս ՌՀ. մեր Ղարադլխի ժողովուրդս, Սմբատայ որդի Ջօհրապ.. գիր տվինք Յ՟հնս կթ՟ղկ-ին, որ մեր և յալմանս սարհատն ծովին եսատահատն է, գնայ կտրած խաչն, գնայ մինչև առեւ, գնայ հւանաձոր, մեր Ղարադլխեցոց այն կոյսն, այլ քան չկայ, կուռ ալ ան յաշմանէ, ոչ մեզ ոչ մեր հայրն, և պապն, կուռ ալ անվարել չենք, յալմանայ և կուռալան Գանձասարայ վախմ այ, ով հակառակ էս, Յովհաննէս Մկրտչէն կապած լինի ....։ Կնիք—Յովհաննէս վարդապետ Ծայրեցի Վկայ— Աթանաս աբեղայ. Նորոգեցաւ ՌՃ. թուին հայոց, ձեռամբ Բարսղի, Նորոգեցաւ ՌՄՀԳ-ին ձեռամբ Պաղտասար արքեպիսկոպոսին։

Թիւ 80. Տէր Գրիգորի որդի Մէլքիսէթը իւր 2 կտոր հողերը նուիրել է ս. Աթոռին. ՌԻԶ մայիսի ժբ։

Թիւ 81. ՌՄԺԹ-ին Հասան քօխվան Հիերանացի իւր այգին Յովհաննէս կաթուղիկոսի ձեռքով տուել է Գանձասարին։ Կնիք— Եղիա վարդապետ Յակոբայ վանքին առաջնորդ, մէլիք Միրզայխանի Խաչենու, մէլիք Ալլահ-վերտու.

Թիւ 82-ով Բաղդասար վարդապետը

թոյլ է տալիս Տ. քահանային վանքի հողի վրայ ջաղաց շինել. (պատճէն). 1824 վկաներ.

Թիւ 83. Ջրաղաց շինելուց յետոյ կրկ-նում են վերոյիշեալ պայմանը, աւելացնե-լով որ եթէ ուրիշ տեղ գնան՝ ջաղացը պէտք է վանքին համարուի. վկաներ։

Թիւ 84. Մատաղխու տակը Սարգիս եպիսկոպոս Հ. Ջալալեանց յանձնումէ թուր-քերին նրանց խնդրանաց համաձայն մշակելու և բահրէն տալու պայմանով, յայտնելով որ այդ կալուածը ՌՂ թուին տրուել է վան-քին. ստորագրութիւն տաճկերէն.

Թիւ 85. վերոյիշեալ պայմանը աւելի ծանր պայմաններով կրկնում է, որովհետև իրենց վերցրած տեղերի բահրէն ուղիղ չեն տուել. 1833.

Թիւ 86. վկայաթուղթ, որ Կուչլակ մազ-րա կոչուած տեղը վանքինն է. վկաներ. 1833։

Թիւ 87. 1832-ին յուլիս 10. մէլիք Ցովսէփը և Դանիէլ բէկը ստորագրութեամբ և կնքով վկայում են, որ «Գուչլակ անուն տա-փերն» Գանձասարինն է. որոշումեն վանքին տալը բահրէն։

Թիւ 88. մէլիք Ցովսէփը վկայում է 1832-ին՝ որ Պիզանի Կուչլակը վանքինն է, և որոշում է բահրէն։

Թիւ 89. 1833-ին Ամիր Ասլան բէկը վը-կայում է որ Քօլանեցոց տեղերը վանքինն է։

Թիւ 90. Դանիէլ բէկը գրում է Պաղ-տասար մետրապօլտին որ որոշել է թուրքե-րի տալիք հարկը. 1833 (չէտվերթ ու կէս)։

Թիւ 91. Ծաղկայ անուն հողի վարնորդ-ները խոստանում են վանքին տարեկան 3 չետվերթ, 2 լաւ ցորեն. 1847.

Թիւ 92. Ինչ որ Մեսրոպ վարդապե-տից յորդոր պարոն «Օվանէսին և այլոց» Ցայսմաւուրքը Տ. Դաւթին դարձնելու մա-սին. կնիք Մեսրոպ վարդապետի։

Թիւ 93. ՌՃԿԹ մայիսի 4-ին գրուած և կնքուած Մատթէոս վարդապետից. և է օրհնութեան գիր ուղղուած «տեստայ Պա-պային»։

Թիւ 94. 1841. մարտ 10. Շուշուայ և Ջառխտ գաւառի բարեկարգիչ Ցովհան-նէս քահանայից, մետրոպականի մասին։

# ԺՈՂՈՎԱԾՈՒ Դ.

## ԿԱԼՈՒԱԾՈՑ, ՊԱՅՄԱՆԱԳՐՈՑ ԵՒ ԱՅԼՈՑ
### ՎԵՐԱԲԵՐԵԼՈՑ ԹԵՄԻՆ ԱՐՑԱԽԱՅ

Թիւ 1. 2. և 3. հիւմայիլներ են, կամ պահպանութեան թղթեր (վերջին երկուսը տգեղ պատկերներով), միանման և տարբեր աղօթքներով։

Թիւ 4. ղանձաղան մարդկանց արտերի տեղերը. 43 թուղթ։

Թիւ 5. ցուցակ ուրիշներին տուած նիւթերի. (խանին, մելիքին և այլն)։

Թիւ 6.—8. տալիք առնելիքի հաշիւներ։ Թիւ 9. և 10. պայմանաթուղթ գրուած ՌՃՂԴ թուին։ Թիւ 11. ՌՃՀԸ-ին գրած պայմանաթուղթ է Յակոբճանի և Տէր Դաւթի մէջ։ Թիւ 12. ՌՃՂԵ-ին։ Թիւ 13. Տէր Դաւթի պայմանաթուղթը։ Թիւ 14. և 15. աննշան թղթեր։ Թիւ 16. և 17. հարկաժողովի թղթեր։

Թիւ 18. Տէր Ներսէս կաթուղիկոս Աղուանից վկայ է գրուած թղթիս ՌՃՁԷ թ.։

Թիւ 19—26. պարտամուրհակներ մասնաւոր մարդկանց։ ՌՃԿԵ—ՂԵ թուերին։

Թիւ 27—47. ցուցակ տուրքերի, որոնք կամ մելիքին, կամ վանքին, կամ խանին և կամ թագաւորին և այլոց են տրուած, որոնցից ոմանք կրում են այսպիսի (և նման) վերնագիր. (Թիւ 46.) ՌՃՂԴ թվին, այս է առաջինծորայ վարդապետան չրավերգայ վանի, մէլիք ուլու խանէն տվան խարջն, գերայկոս բոխէն ձօքլօն, հանլայ մէլիքըն» և այլն։

Թիւ 48—49. Առաջածորի բնակիչները գանգատում են մելիքին անտեղի հարկերի համար և այն բռնութեանց համար որ հարկ հաւաքելիս գործ էին դնում նրա գործակալները։

Թիւ 50—51. մի ամն Միրզայ քօխվայի և Գէորգի նամակները Կիրակոս քօխվային, որով ա-ը յիշում է թէ ինքը բարեխօսել է հարկերի համար մելիքին, և նրա հաճութիւնն ստացել. երկրորդը բարեկամական ողջոյններ։

Թիւ 52—53. Տէր Դաւթին ամբողջ Խաչէնի վաքիլ են կարգում և նրա ձեռքով տնօրինումեն իրենց հաշիւները մելիքի և այլոց հետ։

Թիւ 54. Թղթովս Ալլահղուլի սուլթանը Կիրակոսին քօխվա է կարգում. ՌՃՂԸ թուին։

Թիւ 55. ՌՃՁ-ին Խաչէնի քէթխուդաները վաքիլ են ընտրում Տէր Դաւթին։

Թիւ 56. Մէլիք Ադամը գրում է Կիրակոս քօխվային որ ինչ որ Յակոբի հետ իր յարաբերութիւնները կարէ, որովհետև նա

գանգատուել է իրենց՝ հակառակ դէպքում իւր երեսն էլ չտեսնէ։

Թիւ 57. «Մէլիք միրզայ խանէս» գըրում է Առաջաձորցիներին երկու եղբօր հողեր տալու մասին. ՌՄԻԳ։

Թիւ 58. ՌՃՂԴ. Մէլիք Ուլուխան սըպառնում է, որ եղբայրներին բաժին չէ հանում։

Թիւ 59. Ներսէս աղէն պահանջում է Առաջաձորեցիներից՝ որ իւր ունեցած իրերն ու կենդանիները իւր ծառաներին յանձնեն։

Թիւ 60. Տէր Դաւթին Մէլիք Գրիգորի հրամանաւ ընտրում են քօխվա՝ ՌՃՀԷ-ին.

Թիւ 61. Մէլիք Իսրայէլ կանչել է Տէր Դաւթին, իսկ նա չի գնացել։

Թիւ 62. սկզբից և վերջից պակաս, որով քաջալերում է գիւղացիներին ինչպէս երեւում է մէլիքը՝ և խոստանում է նոցա զօրք.

Թիւ 63. Մէլիք Նկանի թուղթը մէլիք Մհամմատին։

Թիւ 64. գիւղացիները խնդրում են Գանձասարի առաջնորդից որ Տէր Յարութիւնին չփոխէ։

Թիւ 65. 1842-ին գրած, Աւլանբէկ Աթաբէկեանցին ջրի և կամուրջ քանդելու մասին. գրողն է Բաբայ-բէկ մէլիք Բախտամով։

Թիւ 66—73. մասնաւոր պայմանաթղթեր, նամակներ, և տուրքեցուկ։

Թիւ 74. 1844-ին գրած, որով Թըրքացած կնոջ թուրք որդիներին բաժին չեն տալիս։

Թիւ 75—83. տուրքերի ցուցակ։

Թիւ 84—143. պայմանագրեր. այսինքն իրենց ստացուածքը որ յականէ յանուանէ յիշում է, յաճախ իւր սահմաններով, ծախում են մի որոշ գումարի (երբեմն նաև ծախելու պատճառով), և տալիս են ստացագիր. այսպէս իբր օր առաջ բերենք վերջին երկուսը, որոնցից Թիւ 143-ը մագաղաթի վրայ է գրած։

Թիւ 142. պարսկերէն կնիք. «Ես մէլիք եկանըս իմ առաշայօրը վեր կալի ավէ խըժիցի լօջայ պատուսին դամ տ՞ր մօէխին ապլուն իմ կամովըս դիլ է թմանուէս մին թարափ քար է կալըն մին թարափ խաչըն, մին թարափին սխպուրըն մին թարափ հկադվայ գետըն օրիշ մարդու պան չնի թվին. ՌՃԼ.-էն յունվրի ամիս էր, իայ վկայ, ագին վկայ, Եղայր ոչ վկայ։

Թիւ 143. «Առաջի ա՜յ և առաջի աւետարանոցի ճամհաթին վկայութեամբն մեք կիզունց ղազարս իմ որդի Ալեքսանդրեաւս մեր չինին յօնջին ջաղացն թալաւն ծառաւն ծախեցինք խաճայ պալուլին Գ. թումանի արինք մեր պետս անցուցինք, օվ որ եա ու առաջ գայի անէ կամ փոշումանէ ԳՃԺԸ յարրապիտաց նզոված լինի ԺԲԹ հարիւրին մուղուլեամ լինի. պուղոսանց պէտրոսն վկայ, սպայղն վկայ, ա՞ռ ղազար վկայ, ա՜ր ըռուպայ վկայ, ամոյվուն վկայ, ա՜ր պուղոսս վկայ, միրզան վկայ, հաջիքահջամ վկայ, ես պօղոս կիրեցի վկայ, թվին. ՌՃԻԹ էր. 4 կնիք Գ. ծ Գրիգոր եպիսկոպոս թվ. ՌՃԻ.։ Սոյս քուրքը ՌՃԻ-ից յետոյ են գրած մեծ մասամբ ՌՃԿ—ՌՄՂ թուականներին։



# ԺՈՂՈՎԱԾՈՒ Ե.

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ, ՆԿԱՐՈՒՑ
## ԵՒ
## ՕՏԱՐԱԼԵԶՈՒ ՄԱԳԱՂԱԹԵԱՑ ԳՐՈՒԹԵԱՆՑ

Թիւ 1. գլխագիր երկաթագիր. հաստ մագաղաթ, հաւանականաբար Ս. Գիրք. գրութիւնը բոլորովին եղծուած։

Թիւ 2. շատ հաստ կաշի, միջին մեսր. երկաթագիր, համաբարբառ, յառաջաբան «Եւսեբիոս Կարպիանոսի սիրելի եղբաւր. . յիւրաքանչիւր աւետարանիս եղև»։ Վերջում կայ թուականը եղծուած (ՆԺԶ ?)։

Թիւ 3. մագաղաթ. միջ. մեսր. երկաթագիր, մեծագիր, եղծած Աւետարանի վերջին թուղթը. չունի «իրք կնոջն շնացելոյ» Յովհաննու աւետարանի վերջում։ Յիշատակարան. «զերագձանս ներանձնա|ցեալ նունախոհի և մտա|հարուստ ընթերցաւղի|ակն ուշմագունի և| մեծաքանչանուն| հայոց պայազատի| առինչով ամենափառ | և հրաշազարդեալ ած|ավայելուչ և ք՛ռ| աւէր տն Աշոտոյ իբրև| զբարբեռն նորըն|ծայ եաց՝ գչորից աւե|տարանչացն՝ զարտա|ճառութիւնն՝ ի մի| հաւաքելով առ ի յի|շա|տակ՝ առաջաւորին և ըն|ծայացելումն ՅԾԸ թուականութեանն| հայոց հրամանաւ Տն | Աշոտոյ գրեցաւ սուրբ| աւետարանս ի Կոստան|դնանուպօլիս ի ձեռն| Թորոսյիլի ծառայի ծառային Քի Տն Աշոտոյ, Քի Ա՛ն մերոյ փառք յաւիտեան...։

Թիւ 4. մագաղաթ. գլխագիր երկաթագիրը բոլորովին եղծուած և ծակոտուած. «(Յ)ամի վեց հա|րիւրերորդի և տասն|երորդի թուականու|թեանս հայոց|ես Տր Վահան սուրբ |Խաչի եպիսկոպոս|ցանդագող եղեալ| (սոսա)|-ցա զսուրբ աւե|տարանս (?) ի Տր Ստեփաննոսէ... Կուրապաղատին և| եղբաւր Տն Դաւթի,|հայոց կաթողիկո(սի)|։Արդ աղաչեմք| ձեզ ով սուրբ քահա|նայք և մանկունք| սուրբ եկեղեցւոյ|... (ծակուած) զՏր Ստեփաննոս| յաղաւթս ձեր յիշե|սջիք և զիս ստացողս|։

1 թ. նոտրագիր. «Դէպ եղև մեզ ողբոյ տառի|ս| աւետարեր կենաց ճառի|ս| Պաղտատ եկած անարժանիս (Յովհաննիս ծառայիս) ՌՃ հայոց թուիս ԼԷ աւելի| որք պահ տահերդ զմեզ յիշեսջիք|...։

Թիւ 5. անցման երկաթագիր, մագաղաթ. մի օրինակ. «գրեցաւ ս. աւետարանս ի թուականիս հայոց ՆՁԹ. ի փառս ամենասուրբ երրորդութեան. Արդ որք ընթեռնուք զՌստակէս զաքրանեալ քահանա և զծնողս իւր և զՄխիթար զմեղաւոր գրիչս յիշեսջիք...։ Տակը Աստուածայայտնութեան տօնի նկարագիրը։

Թիւ 6. մագաղաթ, անցման երկաթագիր. տօնացոյցի մի հատուած, զարմանալի է որ շարականները չեն նշանակած։

Թիւ 7. մագաղաթի մի սիւնակ. երկաթագիր. չունի «իբր կնոջն չնացելոյ», «ի Թուականութեանս հայոց ի ՌԿ եղև աւարտումն սուրբ և լուսերանիկ, սրբարար և մաքրազարդ յորդահոս ծայրածաւալ հրահոսան չորեքվտակեան գետոյ աստուածայնս առ ի յարբուցանել զախտս տկեղեաց: Այսմ քաղցրահամ վտակաց ցանկացող եղեալ պատուական կրաւ...»:

Թիւ 8. անընթեռնլի գրութեամբ, հաւանականաբար աւետարան.

Թիւ 9. Թուղթ 8, նոտրգիր. յիշա. 3ա. «Մեր աղաչանկացաւ այս սխրալի գրքիս որ կոչի աղօթմատոյց, զի կայ ի սմա ժողովեալ բազում և ազգի ազգի աղօթք... անուանի ս. հարց Եփրեմի, Յոհաննու ոսկեբերանի, և Յոհաննու Գառնեցոյն, և այլ սրբոց. բայց գրեցաւ սա ի դառն ժամանակիս... այսմ ամի պերճ և զազիր ազգն Նետողաց, որ են Թաթարք, մտեալ յերկիրս Իլախաց և զայն ոչ թէ միանգամ, այլ երկիցս և երիցս և այլ յոլովս ի տարւոջն, և աւեր ածին աշխարհիս մերում... եւ մինչ յայսմ նեղութեան և վշտի և տառապանաց էաք... եկն եհաս բօթ գուժի և չար լուր, եթէ մեծ հուր անկաւ ի քաղաքն Եառաաղով, ուր էին ժողովեալ բազում վաճառականք, յայլ և այլ գաւառաց և քաղաքաց... այլև կամարակապ գմբէթայարկ վիմաշէն փառաւոր եկեղեցիքն մինչև խաւարի այրեցեալ փլրեցան, զի բնաւ ոչ մնաց շինութիւն, քանզի չորեք կողմանց էր պատեալ, պաշարեալ շուրջանակաւ հուրն, զի և մարդիք այրեցան, այլք կիսայրեցեալք, և կէսքն մոխիր և հերք խանձեալք մազապուրծ լեալք փախստականք ի քաղաքէն ի դուրս հազիւ անկանէին. իսկ ոմանք խելաթիւրեալք և մոլեգնեալք վասն մեծի աղէտիցն և կորստեան ընչիցն, ոմանք զգեստ այրեցեալք մերկ և բոկք գլխիբացք սևազէմ և այլակերպք ահարկուք երևեալ տեսողացն, քանզի ի գիշերի եղև հուրս այս և երկու ժամն այրեցաւ քաղաքն և ամենայն բնակիչք... Եւ մինչդեռ յայս տրտմութեան և շփոթի կայաք հասին ի վերայ մեր... սաստիկ մահտարաժամք... երկիւղ անկաւ ի սիրտս բնակչաց, որպէս և տիրախնամ աստուածապահ մայրաքաղաքն Բարէկիշէվ, յորմէ փախեան ամենեքեան. ընդ որս և ես եղկելի... փախեա ի գիւղաքաղաք մի որ կոչի Ռօհաթին. Թ միլ ի Լէվա, և կացի անդ... ի վերացման ս. խաչէն, մինչև ի ս. Յակոբ, և անդ... գրեցի.. բազմերանգ գիրքս աղօթից, բազում աշխատութեամբ Բ և Գ գաղափարէ օրինակելով...»: Վերջին թուղթը աղօթքի կտոր է:

Թիւ 10. Թուղթ 8. 1բ—2ա. գեղեցիկ խորաններ, ոսկեգոյն թանաքով տողի վրայ գրուած երկաթագիր. «Ով յանակիրսն ծ|ոցո բան Նոյնք ծա|գկեալ յազգ մարդ|կան որ զայս մատեան| աւետարան մեզ հնչ|եցեր ձայն ցնծու|թեան. ահա զքոյս առ|եալ քեզ տամ բարձեալ| ի ձեռս առաջի գամ| առ զայս նուէրս| բարեխնամ և յիս| հայեա Տէր հաշտա|կամ. (Բ. գլ.(ու) գու կղզեն|գս քո բանի և զս|տացող այսմ տա|ւի զՏէր Ս(տեփաննոս) |..|. քաղաք հայրենի|»: Հին բոլորգրով յիշ. 3բ. «փառք... Յամս... հայկազեանս տումարի ՉԿԳ. ես Պաւղոս... սոսկ վարդապետ աշխարհաւ Կիլիկեցի, ի ս. ուխտէն Ակներ կոչեցեալ, ըստ տառանման մըտաց. արդարև հոգւով մանկութեան իմոյ, նաև յդ. փոփոխման իմաստասիրական արհեստից տարաշխարհիկ եղեալ... բնակեցայ ի կողմն Նահանգիս Սիւնեաց, ի գաւառս Վայոց ձոր կոչեցեալ, ի վանս Դրաձոր, առ ոտս... Եսայեայ, որ իբրև զարեգակն լուսաւորեալ պայծառացուցանէ զբոլոր ազգս և զեկեղեցիս Հայաստան աշխարհիս... գրեցի զսուրբ Աւետարանս իմով ձեռամբ վաստակ ի լուսոյ... հրամանաւ և ծախիւք մեծազարմ և իշխանաշուք... մանկանն Տարսայիճ կոչեցեալ, իսկ ի շնորհս Հոգւոյն սրբոյ Ստեփաննոս անուանեալ, որ է ըստ հայրենի նախնեաց յազգէ և ի շառաւիղէ Օրբելեանց, իսկ ըստ մայրենեացն սերեալ յազգէ մեծ ամիր սպասալարին Զաքարէի... նաև յիմաստասիրական արհեստ յոլով ժամանակս դեգերեալ ընդ թևաւք իմաստոյ... տիեզերալոյս վարդապետին Եսայեայ. նաև սատիճանի սարկաւագութեան և քահանայութեան արժանացեալ և հանդերձեալ է կոչմամբ և ընդրութեամբ ս. Հոգւոյն ի պատիւ և յաստիճան վարդապետութեան և եպիսկոպոսու-

ընդ հովանեաւ ս. Աստուածածնիս և… ս. Ըստեփաննոսիս…։ Արդ ես Վրթանէս քահանայ… ընտացայ զս. աւետարանս… յիշատակ… հաւրն իմոյ Մուրատ աղին, և մաւրըն իմոյ Սառային և ամուսնոյն իմ պար. Պուլխաշին, և եղբարց իմոց Պալարաղին և Նաասիրին և Լիկին և Սիրունին և Շահումին։ 2 թ. տարբեր գրութիւն. սողորմի Խաչանէս քահանային և իւր որդոցն Գուլամիրին և կողակիցն Թուրվանդին և իր որդոցն Հասանճանէն Խունդայմիրէն և գառերացն Շահումէն միրզին Պապէն…։ Տր Խաչանէսին և իւր կողակիցն Գուլասէն և… իւր որդոցն .. Ղուկասէն Մալքումէն Կասպարէն Փարխանէն, Խաթունէն …, (գրեչ. Պետրոս քահանայ)։ 3 թ. ուրէշ գրեչ. «Տր… ողորմեցաւ… Մելքիսէթ քահանայ(ին) ..։ Յայս թվականս հայոց ՋԺԸ գրեցաւ ս. աւետարանս և նորընծա պատարագաւեց Աստուած զԱխիսանեու մանուկ տղայ, ի կաթուղիկոսութեան ս. Էջմիածնին Տր Գրիգորին ի փաշշահութեան Ջահանշէին։

Թիւ 17. բոլորգիր թուղթ. «…Յիշեցէք ի Քրիստոս Տր Սարգիսն և իւր որդի Տր Մինասն և իւր որդի Մէլքումն և իւր որդի Պալասանը Վանին Բալշին Պալասանի որդի Պաղտասարը, Մինասը Մէլքումն Վանի որդի Արութիւնն, Բակի որդի Ու հան Սարգիսըն, դարձեալ յիշեցէք Մէլքումին կողակից Նազլուին գուստր Աղիդշէին, Մարեանին, Անային հարըն Նեթարին իւր գուստր Խաթային ..։

Թիւ 18. բոլորգիր հին. «…գրեցաւ ս. աւետարանս ի յերկիրս Աղուանից ի գաւառիս Վարդենոյ. ի գեաւղս որ կոչի Սիզնիք ի դուռն ս. Յովհաննէսին ձեռամբ… տառապեալ Առաքել երիցու և միւս եղբայրն իմ Պետրոս երիցու ի միասին ակսաք և աւարտեցաք…»։

Թիւ 19. բոլորգիր հին, թուղթ. «ի թվականութեանս հայոց և ի կաթողիկոսութեան ս. Էջմիածնին Տր Սարգիս կաթողիկոսին Ջ.Ծ.Գ հրամանաւ Աստուծոյ հասեալ եղև ի Վկէ քաղաքս և ես… Մելքիսէթ քահանայն … զոչ որ չունէի որ զիս պահէին սմն Շուշանկայի Համամ ասեն որ է իմ քեռորդի կոչեաց զիս ի տուն իւր… յիշեցէք… Շահումն և զկենակիցն իւր Գուլպան և զաւակն իւր Միրումն, զԱպաւշ և զՄարգարէն և զդուստր իւր Բաղշէն…։

Թիւ 20. բոլորգիր. թուղթ. «…Սողոմոնս գնեցի զաւետարանս ի հալալ վաստակոց իմոց յիշատակ ինձ և ծնողաց իմոց… Սարգսին և Թայ խաթունին և զաւակաց իմոց Տր Յակոբին, Նարիմանին և Մարտիրոսին և կենակցին իմոյ Էլէնուն և զաւակացն Լէոնին Ոլանէսին… հաւրն իմոյ Հուզէփարդին և եղբաւրն իմոյ Թէշքէնին և զաւակաց Նուրին Յովանէսին, Բարխուդին, Նիկին, և մաւրն Թամղի մէլիքին և կենակցին իւրոյ Յեաթամզունի և Սայ մէլիքին, Յեսակարին, Նուրառինին, Յուրքանանին…» (գրիչ Յուսիկ)։

Թիւ 21. բոլորգիր. թուղթ. «ի թվականիս հայոց որ էր ՋՂԸ ամի որում եղև մահ տարաժամ աշխարհիս հայոց… և գեղս որ Բարխս կոչի, և առաջնորդ գեղոյս Տաղուպար, որ երևանաարդ հասակաւ ի քո փոխեցան և վարդոյ նման որդիքն իւր որ էին… զԳուլասէն… զՄկրտիչն…»

Թիւ 22. Առաջնի նման, Սուետարանի յիշատակարան։

Թիւ 23. բոլորգիր. թուղթ. «փառք… ես Աբրահամ կրաւնաւորս կամաւն Աստուծոյ սկսայ զս. աւետարանս… ընդ հովանեաւ ս. Ստեփաննոսի ի յերկիրս Հաբարի ի գեղս որ անուանի Փարաձակցի, ի խնդրոյ… միակացս Դոյի (գրիչն է Աբրահամ արեղան)…։ Պետրոս սուտանուն կրաւնաւոր, փոքր ծաղկաւ զարդարեցի զաւետարանս .. և գրեցի յիշատակարանս և կազմեցի ի թվին հայոց ՌԻԵ-ին ի կաթուղիկոսութեան տանս Աղվանից Տր Յոհաննէս կաթուղիկոսի, յիշխանութեան Խուդապանդային, որ բազում նեղութիւն եղև հայոց ազգին…։ Ես Դոշի Մեկացո ընտացայ աւետարանս յիշատակ… հաւրեղբայրն իմ Աղէքսանոսայ և Յուսթայ, Աղամոյ և եղբաւրորդին իմ Սարգիսայ, Աւանէսայ և հովեաւր քուրն իմ Բեկի որ յաշխատանք ունի ի վերայ իմ…։

Թիւ 24. բոլորգիր. Թուղթ. «փառք... վերստին նորոգեցաւ ս. աւետարանս ի թվականիս հայոց ՌՌԼ ամի, ձեռամբ Գրիգոր անուամբ քահանայի, և Յովասափ սուտանուն նորին աշակերտի, ի յերկիրս Գեղամա, ի գիւղս որ կոչի Մազրա, ընդ հովանեաւ ս. տաճարացս յանուն սրբուհս Աստուածածնին և սրբոյն Գրիգորի լուսաւորչին ի հայրապետութեան Տն Տր Թադէոսի և յիշխանութեան տեղւոյս պարոն Շահնազարին... յիշեցէք ըզտէր Յովհաննէսն որ ըստացաւ զսր. յաւետարանս... հայրն Ամիր Հասանէն և մայրն Շահումին և եղբայրն Աւետիսին և նորին կողակցին Ցիւղուր սուլթանին և զաւակաց նոցա Պուսաթին, Խանբեկին և քըվերցն Խոսրովին և մէլիք Խաթունին և քվեր որդոցն Զաքարանին և Միրզաճանին և հարեղբարցն Թադէոս քահանային, Ալին և Ամիրբէկին, Սուլթանին և հարեղբայրորդոցն, Եարին, Արամիշին, Մարտիրոսին, Ամիրին, Կիրակոսին, Պապումին, Փանոսին, Աստուահանին և պապոյն իւրո Ստեփանոսին և տատին իւր, Շեղնխամին և հայր քվերցն Ալլուսին Մարեանին և հօրեղբարն, Յոհանիսին և մեծ պապին Սարխոշին...»։

Թիւ 25. նոտրգիր, Թուղթ 4. «փառք... Յոհաննես սարկաւագս կազմեցի այս գանձարանս... ի դուռն ս. Ստեփաննոս նախավըկային... քանզի ունի սայ զբոլոր տարին յինքեան հաւաքեալ... ի թվականիս հայոց ՌԾԶ... յիշեցէք զստացող ս. գրոցս պարոն Ալախշուլուն և կենակցին իւր Խաթունըն, որ հանգաւ առ Աստուած և միւս կենակիցն իւր Սինդամխան և որդին իւր Բեբուն, Շահապէգն, Առաքելն, և միւս որդիքըն իւր Հանէմն, Գրիգորն և դուստրն իւր Մարիամին։ Մեք գնեցաք այս գիրս... ի դուռըն ս. Աստուածածնին և Փաշի վանքին, ի ձեռըն ս. քահանայիցն Տր Միքայէլին (տ.),... ի հայրապետութեան Տն Աւետիս կաթողիկոսիս և պատրիարգ Կոստանդնուպօլսոյ ս. Էջմիածնի. ի թագաւորութեան վրացու պարոն Լուսարափին...»։

Թիւ 26. բոլորգիր. Թուղթ. «...Արդ կազմեցաւ աւետարանս ի գիւղն որ կոչի Ղարաչալու ի դուռն ս. Պօղոսի, ի յառն ս. Թադէոսի առաքելոյն ի յառաջնորդութեան Բարսեղ եպիսկոպոսին, ի քահանայութեան Տր Պօղոսին, և Տր Սահակին և դպրին Պետրոսին և ռէս Մուրադին... ձեռամբ մեղսամած գրչի սուտանուն Արիստակէսի եպիսկոպոսի, ի թվականութեանս հայոց ՌԿԴ, ի թագաւորութեան Շահաբասին»։

Թիւ 27. բոլորգիր. Թուղթ 2. «Զվերջին նորոգող ծաղկազարդ ս. Գանձարանիս... պարոն Տէր Գրիգոր արհեպիսկոպոսն, որ ետ նորոգել... յիշատակ... պապն իւր պարոն մելիք Յուլոյպէկին, և իւր կողակցին Գուշաղին, և իւրեանց զաւակացն պարոն Աղապէկին, Մելիքպէկին, Սարուխանպէկին, Ստեփաննոս կրաւնաւորին և միւս Ստեփաննոս եպիսկոպոսին. և դստերաց իւրոց Ղիֆարին, Ուզլանփաշին, Խանումաղին... ծնողաց իւրոց պարոն Մելիքպէկին, պարոն Խաթունին և եղբարքն իւր Յովհաննէս երէցն Գիշփէկին և եղբաւրորդոցն պարոն մելիք Պալասանպէկին, Տր Յովհաննէսին, Տր Ստեփաննոս կրօնաւորին... և որդիք պարոն Պալասանին Մէլիքպէկն, Շահիպէկն, Յուլուպէկն, Առիպէկն... և մայր պարոն Պալասանին Դուլաթխանումն... և հարսն իւր խաթուն Ուղէն, Խանում աղէն...։ Կազմեցաւ ս. գիրքս թվին հայոց ՌՃԵ ին...։ Նորոգեցօ գիրս այն տարին որ ազգն վրաց Մովրաւռին անուն նորայ հեծելաւք հասօ ի Գանձակ քաղաք, որ այժմ Գանջայ ասի... յորժամ լուան (Դղլպաշք) դալն վրաց փախստական եղեն ի նմանէ և յանխրաւ ազգն վրաց արձակեցօ ի վերայ հայոյց ազգիս, Գետաշէնուհեա մինչի Պարսումեցիք ս. աւուր գերացուցին դաշտ ու սար հայք և թուրք ի միասին և զձեռն անկեալն զոմն սպանին, զոմն վիրաւորեցին և բազումս գերի տարան... ես ... Վարդան... քահանայ... խիստ թալանվեցայ ինչ մաւրէ մերկ գոհութիւն Աստուծոյ իմ մեղացն բրկցօ Աստուած և զամենայն ինչս իմ բազում գիրանք ու շատ անուեթս եկեղեցւոյ իմ գերի տարան և հայրն սպանին... այս...եկի ի ս. յուխտս զատիվանայ, զայս գիրքս կազմեցի, սակօ մի բան գրեցի...»։

Թիւ 28. բոլորգիր· Թուղթ· «Յիշեցէք զՎերջին ստացող ս. աւետարանիս զՄելքե Մուշկամբարն որ ստացաւ զսա և ետ ի նորոգել յիշատակ... հօրն Աղամիրին և մօրն Սարվարին և որդոցն Տէր Յովանէսին, Աղափիրին, Հախնազարին, Մարտիրոսին, Մինասին, Ալեքսանոսին և Մուշկամբարի կողակցին Ջիմաթին, մամ Աղիպին և հարսներուն Եղիսաբեթին, Գոզալին, դստերն Խանումին Գուլամբարին. Այլ և յիշեցէք զՏէր Աղաբէկն, Սարգիսն, Աղամն, մեծ հայրն Գոզալին, Ջանազն, Գուլաղան... յիշեցէք... զԽուտաբաշխն և որդի սորա Ջանիմանն և որդի նորա Աղամիրն և որդի սորա Մուշկամբարն և իւր որդիքն Տէր Յովհաննէսն և դուստրը սորին Հռոմէն, Աղամիրն, Հուխարն, Մարտիրոսն, Մինասն, Ալեքսանոսն...»: Նորոգեցաւ ս. աւետարանս ի գաւառս Զիլակ ի գիւղս Թազաեսիր թվ. ՌՁԱ. . ի թագաւորութեան Պարսից հինգերորդ ամի·

Թիւ 29 բոլորգիր, Թուղթ. «...վերստին նորոգեցաւ և կազմեցաւ ս. աւետարանս ի քաղաքն Խօ ի դուռն ս. Սարգսին ձեռամբ ... Սարգիս դպրիս. Թվ. ՌՃԳ.Ա, հայրապետութեան Էջմիածնայ Փիլիպպոս կաթուղիկոսին, թագաւորի Շահսաֆուն... (տարբեր գրչից) յիշեցէք զժամահար Դուրմիշն, և զկողակիցն Անախաթունն, որ ետուն վերստին նորոգել ... զՏէր Յովաննէսն, որ սակաւ մի աշխատեցաւ ի կազմել...»:

1 թ. Վերստին ընտացոյ ցուցըն բարեմիտ և զհեզահոգի սրբազանեալ կրօնաւոր Տէր Աբրայհամն և ծերունի Տէր Աբրահամն և կողակիցն, Մարգարիտն և որդիքն, Սիմոնն, Ներսէսն և կողակիցներն Գոհարին, Շահումին և որդիքն Խալօին, Պապօին, Ոհանին, Մուսէսին, Հարունին և դստերացըն Խումին, Պահարին...»:

Թիւ 30. բոլորգիր. Թուղթ. «...Ես Միքայել կրօնաւորս վերստին ստացա զաւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ հոգո իմո. և... հօր(ս) Ահլիմանին և մօրն Մարխանին և եղբարցն Յոհաննիսին, Ասլին, և կանանց սոցին Ցիտաղուշին, Խանազին, և որդոց սոցին Մկրտչին և որդոյն Բաղդասարին, Յունանին, Յոհանին, Գրիգոր սարկաւագին, Թադոսին, Մարտիրոսին .. Էվազին, միւս Գրիգորին, Մանկին, Սրգսին, քվերցն Մարին, հարսն Գուլաղին .. ի թվին հայոց ՌԴ.Թ. ի թագաւորութեան պարսից Շահսէֆու որդի Շահապազին, եւ Ալանեցի Ահլիմանի որդի Միքայէլ կրօնաւորս ստացա զաւետարանս...»:

Թիւ 31. բոլորգիր. Թուղթ. «գրեցաւ զմատեանս (աւետարանս) ի թըւիս հայոց ՌԺՃԺԴ.ին ի հայրապետութեան Տն Փիլիպոսի ի արհիեպիսկոպոսութեան Սահաթէի.. վարդապետին Ներսէսի...և թագաւորութեան տաճկաց Շահապասին... ես... Նազարէթ... գրեցի զսա ի լաւ և ընտիր օրինակէ:... Յիշատակ... կողակցուն իմոյ... և իւր ծնողացն Դարպասօղին և մօրն Սասաղին և եղբօրն Կիրակոսին, Ամիրխանին և դստերացն Գուլասարին, Սանդխտին... ես... Սեբիթուղթս որ եմ հօր կողմանէ ազգաւ հայ, ամուսին հռոմայեցոյ որ ի մեռանել առն իմոյ ընտացա (զաւետարանս), և կամաւ իմով ետու զսա յիշատակ ի յեկեղեցին Գիզակա, ի գեօղն Բանազուրա ... գրեցաւ թվին ՌՃԶ.:

Թիւ 32. բոլորգիր, Թուղթ. «Զվերջին ստացող ս. աւետարանիս... տանուէկին Սաթին... (յիշատակ) հայրն Աւալին և մայրն Անոյ խաթունին, կողակցին իւրոյ Փերզուլէ և որդոցն Մարգարին, Խաչիկին և ետ... ի դուռն ս. Վարդանայ... և ետ կարողութիւն տկար մորմնուս Թումայի, որ կազմեցի զաւետարանս ի թվ. ՌԽ, և զս. ուխտիս մերոյ, ս. Յովաննիսոյ միաբանքն զառաջնորդ զՋահրայ ռաբունի վարդապետն, զՏէր Վարդան արքեպիսկոպոս զՏէր Մարգարէն, զՏէր Աւետիսն, զՏէր Յակոբն, զՏէր Գիրիգորն, զՏէր Սարգիսն, և զհանգուցալ զհայրն իւր Յովսէփ վարդապետն...: Միաբանք ս. Սսփանոսին զՏէր Թումայ արքեպիսկոպոս զՏէր Մարտիրոս արքեպիսկոպոս, զՏէր Յեսայի արքեպիսկոպոս, զՏէր Հայրապետ եպիսկոպոս, զՏէր Յովաննէսն, զՏէր Ղազարն...: 1 թ. Տէր Յովանէս նորոգել ետ զսա յիշատակ. . հօրն Ղասումին և մօրն Պէկամին և կողակցին իւր Քաթանին և որդիքն իւր Ալեքսանոսն, Կոստանդինոսն, Պալասանն և դուստրն Մա-

բծնոսն, Սուսամբարին, Եղիսաբէթն, Ռէկումիանն...: Կազմեցաւ ս. աւետարանս ի ձեռն Մելքիսեդ անարժանի .. ի թվականիս ՌԵՃԱԶ...:

Թիւ 33. Միրտիչ Նաղաշի կենսագրութիւնը, որ բառացի տպուած է «Արարատի 1898 Յունվարի յաւելուածի բաժնում:

Թիւ 34. բոլորգիր. Թուղթ. «Ես Մինասս, իմ հօղակից Մարեանս, նորոգել գիւքնք լգոր. աւետա(րա)նս ի հալալ հենչից մերոց... ձեռամբ Աղարիայ երէցու, ի թվին ՌՃԾԳ.:

Թիւ 35. Նոտրգիր, Թուղթ 4. «...Յոհան .. բանի... տպասաւոր .. աշխարհաւ Արարանեցի, ըստ բնական ահղւոյ մնընդեան Տաթևացի... վարժեալ ի նմինն աթոռ հայկազունեաց սեռի ի ս. կաթուղիկոսարանին էջմիածնի որ առ այսու ժամանակաւ գեղեցկազարդ պայծառութեամբ շքեղացեալ գոյ հոգևորին և մարմնաւորին սահմանադրութեամբ։ Ի ձեռն... սրբոյն Մովսէսի Տաթևացւոյ և Փիլիպպոսի Աղբակեցւոյ առ Քրիստոս գնացելոցն և նոցունց փոխանորդի... Յակոբայ Ջուղայեցւոյ... (նոր դըպրոցի համեմատութիւնը թարգմանչաց դասի հետ), այց կլուխ և առաջնորդ լեալ մեծ վարժապետն Սիմեոն որ էր տեղեաւ Ջուղայեցի ի մեծ մայրաքաղաքէն Շօշայ՝ որ այժմ ասի Սպահան, որոյ... արարեալ քերականութիւնս նորոգս և նրբին մանուածոյ շարադրութիւնս արտաքին գրոց գիւտացոյց և հեշտընկալ արար հեռևոգայ նորավարժից և հաւաքեալ ի մի գիրս [illegible] անուանեաց և յետոյ եպիսկոպոս լեալ նստաւ ի վանս ս. Ամենափրկչին որ ասի Հաւույցթառ, և անդէն արարեալ բազում նորոգութիւնս շինուածոց և դպրոցս կարգեալ ուսոյց յոլովից զարհեստս իմաստից. միայն իմ չուառականիս անհաղորդ և ծարաւի ի նմանէ դառնալով և յետ ժամանակաց երթեալ քաղաքութեամբ յաշխարհն յունաց՝ մեռանի ի քաղաքին Թօխարիս, ոչ հասեալ ի հասակ ծերութեան և անդէն հանգուցեալ կան մեծաւ պատուով նշխարք ս. վարդապետին մերոյ .. ի ժամանակին յայնմիկ .. ի խնդիր նլեալ մեր .. կամէաք գտանել զօրինակ գրոցն ճարտասանութեան որ է արարեալ մեծի քերթողահօրն Մովսէսի Խորենացւոյ.. զի էր քնաւին անհետացեալ ի մերային գրոց. և յետոյ գտեալ եղև յամանց, յարիեղս գրենեացն ս. ուխտին Սաղմոսավանից որ է հանդէպ Յովհանավանից՝ մերձ Արագած լերինն։ Եւ իմ առեալ զայն.. գրեցի... թիւ ասարամն յամի ՌՃԸ.. ի վերադիտողութեան.. Յակոբայ Ջուղայեցւոյ, ի Թագաւորութեան Թուրքաց.. Շահաբասի փոքու և գրեալ եղաւ ընդ ամէն զգանս իմաստասիրացն, զնախերգանս, զաւրինութիւնս լեալ և զսահմանս ծաղկեալս և կարգեալս ընդ սահմանացն Դաւթի անյաղթ փիլիսոփայի.. յիշեցէք. զհօգիս.. վարդապետացն մերոց Ներսիսի և Պետրոսի որ.. կառուցին զշքեղազարդ եկեղեցին Տաթևու ընկէց գեղջն Լուսեանց.. զՏէր Աբրաամկէս. որ է առաջնորդ.. ս. անապատիս.. Տաթևու.. ընդ որս և Յոհան տառապեալս..:

Դ°, շեղագիր. «սառացայ Պաղատաար.» վարդապետս Հասան-Ջալալեան Տն Աբգարայ. որդի հանգուցեալ Դանիէլ հայրապետին և իշխանին Խաչենոյ, 1818, ապր. 41. ի ս. Գանձասար։

Թիւ 36. բոլորգիր. Թուղթ. «... Գրեցաւ ս. Գիրքս (Մայրոց) ձեռամբ անարժան և փծուն գրչի Մարկոս.. քահանայի .. ի Վան խաղաք, ի դուռն ս. Սահակ հայրապետին և սրբոյն Ստեփաննոսի նախավկային.. ԻԹ. Հ. ՌՃԻՋ.. յիշեցէք.. զծաղի(ո) Մարկոսի(ն) և ծնողացն տէր Մաքգարին և Մուխրին.. զՂԸՂԸԼտաշէց ի Մուրասին և.. հօրն Մարտիրոսին և մօրն Նաէֆին և եղբայրն Յովանէսին և քուրոջն Մրուարթին և Մուրասի կողակցացն և Հազանդարին և որդոյն Առամին.. զդստերն Նաէֆին, Եղիսին և Եթարին և քեռին Գուլզամին..:

Թիւ 37. Նոտրգիր. անանշան յիշա. ՌՃԼԷ թուին գրած:

Թիւ 38. Նոտրգ. «Ես Ասատուածատուր կրօնաւորս, որ եմ յերկրէն սիւնեաց ի գիւղայքաղաքէն Բռնակութե. ի յազգէն Թորոսեցի, ի թվականութեանս հայոց ՌՃԾԵ

էն՝ ի Թագաւորութեանն պարսից Շահ սուլթան Հիւսէինին և ի Հայրապետութեան Տն ս. Էջմիածնայ Տ. Ն. Ասվաղեալ Նահապետ ՌԲԾԴ-ին, ի տերութեան գիւղաքաղաքիս ագոյ սատար պէկին և իշխանութեանն հայոց Մէլիք Ամիր խանին ի հայրապետութեան ս. Աթոռոյս Թաթէի Յովասափ. վարդապետին։

(Գիրքս Հարանց վարք է)։ 1ᵉ. Աւետարանի յիշա. գրուած ՌՃՀԳ-ին։

Թիւ 39. Նոտրգ. թուղթ. «...Ուստայ աւախ առի քարոզգիրքս ի հալալ վաստակոց իմոց և ծնողքն իմ Գրիգորն, սպայն իմ Աւագն և իմ հօրեղբայրքն. Վարդանն, Էվազն, Ուստա, Յովանէն, և ի եղբարքն իմ Աղայճան, Միրզան, Մանին և մայրն իմ Խանումն, մամն իմ Սաչին և քվերքն իմ Շահպէկն, Շահնազն, Կուլնազն, Կօզալն և որդիքն իմ Շարհնին, Կուլնազարն, Հախնազարն, Ալին, Քասպարն, Պուլքին և թոռն իմ Ապանն և դստերքն իմ Խանփարն, Շահփարն. Սարգիս երէցս. գրեցի.. թիւն ՌՃՀԳ...»։

Թիւ 40. Նոտրագիր. թուղթ. «...Յէր Յոհաննէս, որ նորոգել ետ զսայ յիշատակ իւր ծնողաց Կոստանդին և Աղեզին իւր կողակից Մահբուրին և իւր որդի Կոստանդին և Ովհանն, իւր դուստրն Մարինոսն, Շահպազն և Ռուկին և իւր եղբայր Ղասումն, Տր Խաչատուրն, Ղազարն, Պալասանն, իւր քուր Մախմուրն և ս. աւետա(րա)նիս յիշատակ ավագ Ղրզըլն..» Նորոգեցաւ ս. Աւետարանս Յովսէփ ողոգ եկեղեցին ի թ. ՌՃՂԲ. օգ. ծե-ին.. ձեռամբ Թադէոսեցի. Մահտեսի Ծատուրին։

Թիւ 41. և 43. թարելս կամ ժամանակագրութիւն. նոտր. թուղթ. ՌՃԿՁ—ՌՅԽ. օր. պարպէս. «Ավան ուղղաշին որ եկավ Շօշվայ քարըն մոտավ սահիր, խուրուշ եկավ. ՌՃԿՁ»։

«Օսմանլուն որ քարըն կալավ Ավան ուղղաշին փախավ քինաց. և այլն։

Թիւ 42. Աղօթք նոտրգիր. թուղթ. և շարական՝ երկաթագրով գրած. «Յիշատակ է այս մէլիք Թամրազին ի վայելումն Տր. Սամուէլին.»

Թիւ 43—46 մագաղաթ. հազիւ նշմարելի գլխագիր երկաթագիր գրութեամբ. հաւանականաբար ս. Գիրք (Աւետարան)։ Թիւ 46-ի վրայ կայ մի մարգագիր։

Թիւ 47. միջին Մեսրովբեան երկաթագիր. համաբարբառի խորան. ՈՂԹ-եց. 2 կամարներ, մէջը մարգարիտ պոչը օձից. տակը մեծ չզթայաձև միմեանց անցնող սաւերով գրած. Տր Ած ողորմեա Ռասակեսի ամէն՝ ոսկեգոյն, կապոյտ, սև, կարմիր և կանաչ գոյներով։

Թիւ 48. Յովհաննէս Աւետարանից աջով օրհնում է «Տր Յոհաննէս, եպ. արքաեպիսկոպոսացողի գրոցս» որը և ծունկ է չոքել նրա առաջ. ամպերի միջից երևում է Տիրոջ ձեռքը օրհնելիս։ Գեղեցիկ է։

Թիւ 49. մի խորան է կանաչ, կապոյտ և ոսկեգոյն թանաքով։

Թիւ 50. մագաղաթ քառակուսի շրջանակի մէջ «հրեշտակք իջեալ ի գերեզմանն» ցած. «կոյս» ապա «Յոհաննէս, Պետրոս» Տր Յս յարուցեալ ի մեռելոց» կանաչ զգեստով. խաչաձև լուսաթագով։ 1ᵉ Մաթէոս, Մարկոս, Ղուկաս, Յոհաննէս՝ 2 ձեռքով Աւետարան բռնած կուրծքերին։ Բոլորի գլուխներին և լուսաթագ. կանաչ, կապոյտ, կարմիր չերատուոր զգեստով։

Թիւ 51. մագաղաթ. թանաքակերպարձեալ ձախից աջ. կարմրագգեստ թեւաւոր հրեշտակ. Մկրտիչն Յովհաննէս աջ ձեռքը Յի գլխին. քս Յորդանանում. վերևից Ս. Հոգին և մի աջ. տակը գրած «Դա է որդի իմ սիրելի». բոլորը լուսաթագով, Փրկիչնը խաչանման. 1ᵉ. ատող, ցած՝ էշ և եզն. ցած. մանուկ Փրկիչը մսուրի մէջ խանձարուրով. աւելի ցած՝ Մարիամ Աստուածածին. ապա վերև մոգեր իրենց ընծաները ձեռքերին, ցած՝ Յովսէփ և հովիւներ, մէկի գլխին գառը, միւսի ձեռքին փայտ և ապա

ամբողջ հօտը: Մողերի առաջ գրած է. «Քս Ը՜ծ քս ո՞ր ծնընդեամբդ ողորմեա Վըրթանիսի յոգնամեղ ծառայի:» Համաչափութիւնը կատարելապէս բացակայում է, իսկ արտայայտութիւնը խիստ որոշ է.

Թիւ 52. գլխագիր երկաթագիր, մագաղաթ. նորաձև խորան, օղակաձև սկըզբնատառեր, տաղմոս. «Աւրհնեսցուք ըզՏր...». խազերով:

Թիւ 53. մագաղաթ. համաբարբառի մի գեղանկար խորան է:

Թիւ 54. մագաղաթ. համաբարբառի խորան՝ հին գոյներով. (կարմիր, կապոյտ, սև դեղին): $1^{ի}$. ա. Ներսէս:

Թիւ 55. մագաղաթ. հին պատկեր. Աւետումն. Մարիամ Աստուածածին ձեռնատարած՝ առաջը հրեշտակ:

Թիւ 56. մագաղաթ. հին նկար. Փրկիչը քարոզում է և ժողովուրդը բազմած լսում է.

Թիւ 57. Նոտրգիր. 10 թուղթ. $2^{ա}$. վերարկու հագած մի մարդ գլխին չալմա՝ ոտքերը հորիզոնական դրած և աթոռի վրա նստած. ձախ ձեռքով պահում է մի քառակուսի տախտակ, որի վերին 2 ծայրերը ամրացած է առաստաղից կախուած թելից, այդ տախտակի վրայ կայ մի շրջանակ՝ որի տակ ամրացած է ծաղկելու մագաղաթը կամ թուղթը, նստած մարդը աջ ձեռքին գրիչ՝ նկարում է մի խորան: Առաջը սեղանի վրայ, բաժակ, ջրաման և դանակ: Վերև գրած է. «Տէրուն ծաղկողն է:» Նկարս հայկական գրչութեան մի ընտիր պատկեր է: $2^{ի}$. ուսուցիչը վերարկուով և չալմայով, ձեռքին գիրք, առաջը 2 աշակերտներ ձեռքերը դէպ ի գիրքը մեկնած և բ-ը առաջինի ծնկի վրայ նստած. նման զգեստով. միւրաքաւորի գըլխի վերև գրած է. «Կիւրակոս քհնյն. է ստացող ս. աւետարանիս.» փոքրերի գլխի վերև «Սեփանոս է, որ յետ Բ. ամի քհն. եղև, միւս որդին Յովանէսն..» դպրոցական դաստիարակութեան անդին և արտայայտիչ մի նկար է. Թվ. ՉԾԷ. $3^{ա}$. Յանկ Նախապետաց, դատաւորաց և Թագաւորաց, հրէից. Հայոց (Վաղարշակի պատկերը, զուտ պարսկական է. վերարկու դեղին, և եռամատ թագ. Մեծն Վարդանի պատկերը նոյնպէս պարսկական իշխանի նման է, չոքած, կանաչ վերարկու, մէջքին գօտի, գլխին պարսկական գլխարկ. նոյնպէս և Աշոտ Բագրատունին) Վրաց, Փռանկաց (Երուսաղէմի), Աղուանից, Հռովմայեցւոց, Պարսից, (Արշակունի), Տաճկաց, կաթողիկոսաց Հայոց, Վրաց և Աղուանից, եպիսկոպոսաց Երուսաղէմի, պապից, պատրիարգաց Անտիոքայ, Աղէքսանդրու, Եփեսոսի, Կ. Պոլսոյ. $7^{ի}$. պատմագիրք ի սկզբանէ. $8^{ա}$. «Ծածուկ գիրք Հրէից. որբոյն Կղիմայ թէ ո՞ր գիրք ընդունելի է:» Ամէն մի իշխանութեան ներկայացուցչի պատկերը գծած է.

Թիւ 58. 9 թուղթ համաբարբառ գեղեցիկ խորաններով. ա. և բ. Եւսեբիոս ($2^{ի}$. $3^{ի}$.) $4^{ա}$. Կարպիանոս. ոսկեգոյն, կապոյտ, կարմիր, կանաչ և սպիտակ ներկերով:

Թիւ 59. 5 թուղթ. Թիւ 58-ի 2 և 3 թղթերի մէջ. նկարողն է Առուլ խաթուն $1^{ի}$. Մարիամ Աստուածածին՝ առաջը գիրք, Գաբրիէլ աւետաբեր հրեշտակ ձեռքին ձիթենի. $2^{ի}$. աշակերտներ 2 շարք նստած. Փրկիչը լուանում է Պետրոսի ոտը, որ գլուխն է ցոյց տալիս: $2^{ի}$. Քրիստոս խաչը ուսին, զինուորներ և կանայք. $3^{ա}$. յարութիւն Ղազարու, Փրկիչ և աշակերտներ, Մարիամ և Մարթան, նրա առաջ ծնկաչոք. մէկը այրի բերնից վերցնում է ժայռը և Ղազարոս երևում է պատանքած. $3^{ի}$. մուտն յԵրուսաղէմ. Փրկիչը էշի վրայ, աշակերտները ետևից, առաջը մեծ բազմութիւն. արմաւենու ծառերի վրայ մարդիկ ճիւղեր կտրելիս: $4^{ա}$. Աւերումն դժոխոց. Փրկիչը՝ ետևից Դաւիթ, Սողոմոն և այլք. ոտքերի տակ խաչ. բռնած Ադամի և Եւայի թևից. $4^{ի}$. Համբարձումն, Մարիամ Աստուածածին և աշակերտներ. $5^{ա}$. Հոգեգալուստ, Մարիամ Աստուածածին և աշակերտներ. $5^{ի}$. Խաչն տէրունական, չորս կողմից հրեշտակներ փող են հնչեցնում:

Թիւ 60. 9 թուղթ. 1ր. «Սիմէոն ծերունին Մանուկ Փրկիչ գրկին և Աննա մարգարէուհի, Մարիամ և մի ուրիշ կին 2 աղաւնի ի ձեռին. 2ր. ոտնալուայ Թիւ 59-ի պէս. աշակերտները մի շարքով են նստած. 3ր. Փրկիչը կապած, զինւորների մէջ. 4ր. Յարութեան սովորական պատկեր. 6ա. Վերջին ընթրիք. 7ա. Վերջին դատաստան. 8ա. Յուդան Փրկչին գրկում է, ետևից զինւորներ. 9ա. Յարութիւն Ղազարու, նման Թիւ 59-ի: Ապա 1 թուղթ մագաղաթ.

Թիւ 61. և 62. Երբայեցերէն, մագաղաթ. միայն 2ր. եղծած:

Թիւ 63. 4 թուղթ մագաղաթ. պատռուած և սևացած կիսով չափ:

Թիւ 64, 65 (2 թուղթ), 67. յունարէն. Թիւ 66 և 69 խաղեր, լատիներէն բառերով. բոլորը մագաղաթ: Թիւ 68 լատիներէն:

Թիւ 70—78 (2—2 թուղթ). 78—82 (1—1 թուղթ). Վրացերէն մագաղաթ. վերջից 4 թերթ մագաղաթ:

## *Այլ եւ այլ գրութիւններ.*

1. Բաղդասար մետրապօլտի կազմած 2 ծննդաբանութեան ցանկերը, որի մի Գ-գ վարիանտն ևս հրատարակել է Րաֆֆին՝ Արձագանք 1886-ում: Այս 3 ցանկերը ըստ էութեան նոյն են. միայն մանրամասնութեանց մէջ են տարբերում. մէկը աւելի համառօտ, միւսը ընդարձակ: Ցանկերի նպատակն է ցոյց տալ որ մետրապօլտի՝ Ջալալեանց տոհմը սերում է հին Աղուանից արքայական տոհմից կամ Խորենացու լեզուով Սիսակից:

2. 2 տետր Գանձասարու մետրապօլիտանիստ Աթոռի մուտից և ելից ցուցակներով. մէջ ընդ մէջ կան նաև արձանագրութիւններ, ժամանակակից դէպքեր և այլն. Ապա մի քանի գրութիւններ կամենդանտ Կաշալեւսկուն և ուրիշներին՝ Գանձասարի վանական կալուածների համար և նոցա պատասխանները:

3. Տաղարան Խաչատուր Երէցի (ԺԹ ի ա. կիսում ծաղկել է.). 1ա. տաղ յարութեան. 2ա. տաղ Խաչատուր գրչէ՝ գարնան եղանակի. 4. «Ի հարաւոյ հողմոյն հընչման| է եղանակ քաղցր գարնան |հալին սառւնքըն ամենայն| բողբոջին ծաղիկքըն համայն|: 4ա. տաղ ի Խաչատուր գրչէ. 5ա. Առ զիւրասխալ բնութիւն մարդկային ազգի ասացեալ. 6ա. Յաղագս պանդխտի և օտարի. 6ր. Վասն ուխտազանցութեան Պարսից և պարտելոյն նոցա ի սակաւաթիւ զօրացն Ռուսաց. «Բոսին այսպէս միրզայ՝ շուն որդի Շահին |ի լսելն ըղգալուստ քաջ Մատաթովին| զատտակելն իւր քեռի՝ շուն Ամբրխանին |և զկոտորել զօրացն ձեռամբ Ռուսին| . . .

4. Ապա մի ուրիշ տաղարան ամենայայտնի և գործածական տաղերով, թւով 30—40.

5. 12 Կենդանակերպերի և 8 մոլորակների մասին. «Ցուցմունք վասն պատահարաց ի վերայ եղանակաց բոլոր ամսոց:»

6. Տետր. ժողովրդական բժշկականութեան և ալխիմների. գեղեր և աղօթքներ. խորհրդաւոր կախարդական նշաններով.

# ԺՈՂՈՎԱԾՈՒ Զ.

## ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՊԱՀՊԱՆԱԿՆԵՐ

## ՄԵՍՐՈՊԵԱՆ ՀԻՆ ԿԱՄ ԳԼԽԱԳԻՐ ԵՐԿԱԹԱԳՐՈՎ ՄԵԾԱԴԻՐ ԵՒ ՓՈՔՐԱԴԻՐ

### 1. *Աւետարանական Հատուածներ.*

*Թիւ 1. Ամենամեծը 38×26 «(ՄԳ) Առաջ և առ աշակերտան եկեացեն աւուրք... (ՄԺԱ) որ խնդրեցէ զանձն իւր...»*

*Թիւ 2. «Յորժամ եկանիցէք անտի թաւթափեսջիք զփոշի.. երդումն նմա բաղում անգամ թէ զոր ինչ խնդրեսցես յինէն տաց քեզ».*

*Թիւ 3. (ՄԾԶ) «Իբրև մերձեցաւ առ Յիսուս համբուրեաց զնա.. իսկ Պետրոս ուրացաւ և ասէ. ո՛չ գիտեմ զնա (ՄԶԳ.).» Բ.ի վրայ կայ մի պատկեր եղծուած կանաչ կարմիր թուով.*

*Թիւ 4. (ՄԾ) «(Ինն աւր Բաղարջակերացն յորում աւրէն էր զենուլ զպասեքն.. մատնել զնա մեկուսի յամբոխէն (ՄԿԴ).»*

*Թիւ 5. (ՅԺԲ) «Նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է.. Յայնժամ տեսեալ Յուդայի որ մատնեացն» (ՅԺԹ).*

*Թիւ 6. (ՃԿԲ) «Եւ նոքա սկսան տրտմել և ասել մի ըստ միոջէ... Յայնժամ թողին զնա աշակերտքն ամենեքին..» (ՃՁԵ) 4 թուղթ.*

*Թիւ 7. «Ասեն ցնա հրեայքն. զքառասուն և զվեց ամ շինեցաւ.. Պատասխանի ետ Յովհաննէս և ասէ. ո՛չ կարէ մարդ առնուլ...»:*

*Թիւ 8. (ՄԺԶ). «Իսկ Թովմաս մի յերկոտասանից.. և Թովմաս անուանեալն երկաւորեակ և Նաթանայէլ..».*

*Թիւ 9. «Եւ զոր յունկանէ խաւսեցաւ ըուք ի շտեմարանս.. Զի ոչինչ է ի ծածուկ որ ոչ յայտնեցի..» (ՃԽԵ).*

*Թիւ 10 «Գիտաց Յիսուս եթէ կամին հարցանել ցնա.. զի դուք զիս տեսէք և հաւատացիք եթէ յՆյ ելի..» (Զ.գլ.).*

*Թիւ 11. «Պայր Յիսուս ընդդէմ գանձանակին, տեսանէր թէ զիարդ...». 3 տուն միայն ընթեռնլի.*

*Թիւ 12. «Եւ ի ճանապարհին հարցանէր ցաշակերտան իւր և ասէր զո՞ ասեն զինէն.. երթ յետս իմ սատանայ..» ք. սիւնակի կէսը կտրուած:*

*Թիւ 13. (ՂԳ) «և որոյ պէտքն էին բժշկութեան բժշկէր.. քարոզել զարքայութիւնն Աստուծոյ..». Բ.ի վրայ ծառաղարդ.*

*Թիւ 14. «Ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց.. զի խլէց լսել տայ և համրոց խաւսել».*

Թիւ 15· «Բաժակաց և սառմանաց և պղնձեաց և մահճաց·· և ուր և մտանէր ի գեաղս կամ ի քաղաքս կամ յագարակս··»։

Թիւ 16· (ԿԵ) «Եւ նոյն ժամայն ձեռպեաց զաշակերտսն մտանել ի նաւ·· եկին Փարիսեցիքն սկսան վիճել ընդ նմա և խնդրէին ի նմանէ··» Թիւ 14—16-ի սկզբնատառերը ոսկեդոյն՝ կանաչ՝ կարմիր և կապոյտ թանաքով են· Բ-դ թղթի վրայ կնիք· «Ք· Ծ· Եդ· Ցն· վրդ· 1820։»

Թիւ 17· «Զայս իբրև ասաց գնաց և կոչեաց զՄարիամ··» 5-6 տուն· եղծուած։

Թիւ 18· «Եւ զարմանային ընդ վարդապետութիւն նորա·· և գնաց զհետ նորա Սիմովն և որ ընդ նմայն։»

Թիւ 19· «Զի ի մշակաց անտի առցէ ի պտղոյ այգւոյն·· զի ոչ հայիս յերես մարդկան»։

Թիւ 20· «Զի՞ խորհիք չարս ի սիրտս ձեր·· ո՞վ կարէ թողուլ զմեղս եթէ ոչ Ած»։

Թիւ 21· «Եւ յետ վեց աւուր առնու ընդ իւր Յս զՊետրոս··» 2 տունակ միայն ընթեռնլի·

Թիւ 22· «Եհաս այսօրիկ էջ Յս ի Կափառնայում·· քակեցից զտաճարդ··» (Ի· ԻԴ)·

Թիւ 23· «Պատասխանի ետուն Փարիսեցիքն և ասեն ցմիմեանս·· «(դժուարընթեռնլի)։

Թիւ 24· «Երկընչիմք ի ժողովրդենէն՝ զի ամենեքեան գիտէին զՅովհաննէս թէ մարգարէ էր·· հարկանել էին և զամանս սպանանէին·· Բ-դ երեսը անընթեռնլի։

Թիւ 25· «Ուսուցանէր և ասէր գրեալ էր թէ տուն իմ·· խորհէին ընդ միմեանս և ասէին թէ ասեմ·»

Թիւ 26· «Եւ պատուիրէր նոցա և ասէր· զգոյշ եղերուք ի խմորոյ·· բազում և ասէր· ահա տեսանեմ զմարդիկս զի շրջին··»։

Թիւ 27· «Թէ Որդի մարդոյ մատնելոց է ի ձեռս մարդկան··· քանզի ուսուցանէր զաշակերտսն իւր և ասէ ցնոսա»։

Թիւ 28· «Եւ հանդերձ նոցայ եղեն սպիտակ·· և զՅովհաննէս զեղբայր նորա և հանէ զնա··»· բոլորովին զանազան բառեր։

Թիւ 29· «Թէ ա՛մ որ մատնէ ընդ բերան· պատասխանի ետ նմա Պետրոս··» (ՃԾԷ)։

Թիւ 30· «Անկաւ ի ձեռս աւազակաց··»· 2 կողմից կտրուած։

Թիւ 31· «Եւ զկին նորա և զորդիս՝ և զամենայն որ ինչ և ունիցի հատուցանել·· և իբրև սկսաւ առնուլ» (ՃՁԵ—ՃՁԸ)։

Թիւ 32· «Ա՛Ծ զոտսն Յի և հերով իւրով մաքրէր զոտս նորա·· զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք···» կիսատ։

Թիւ 33· «Ամէն ամէն ասեմ ձեզ· ո՛չ ծառայ մեծ քան զ՜տէր իւր·· Գնեալն զոր պիտոյ իցէ մեզ ի տաւնիս»· կիսատ·

Թիւ 34· «Զի այրին այն տառապեալ շատ արկ քան զա՜մ·· զի աւելի դատաստան ընկալցին։»

Թիւ 35· «Յայնկոյս Յորդանանու· որում դու վկայեցեր· իբրև գիտաց Յս եթէ լուան փարիսեցիքն··»։

Թիւ 36· «Զի ո՛չ ծանեաւ զԱծ՝ որ առաքեաց զիս·· այլ ես ընտրեցի զձեզ և եդից զձեզ զի դուք երթայցէք»։

Թիւ 37· «Զոր այդ որ ո՛չ գործեաց՝ մեղ ինչ ո՛չ գոյր·· այլ զնոյնս արարեն ընդ ձեզ վասն անուան իմոյ··»։

## 2- Առաքելական Թղթերից Պօղոսի եւ այլն·

Թիւ 38· «Մ՛ ոք երբեք զինուորեսցի իւրովք թոշակօք·· զի զհրեայս շահեցայց եղէ ընդ աւրինօք իբրև···» (Եբր· Փ· ԴԼ·)·

Թիւ 39. «Իբրեւ զհրեշտ զի զհրեշտակս շահեցայց..» (վրան բոլորգիր գրութիւն. Երբ. Ժ-ԺԱ).

Թիւ 40. «Այլ յորժամ միւս անգամ մուծցէ զանդրանիկն.. ».. դժուարընթեռնլի. ա. երեսը բոլորգրով ծածկուած.

Թիւ 41. «Ցանօրէնութեանց ժողովրդեան իմոյ ի մահ վարեցայ..» (Եսայի մարգ.) Ցուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն.. (Կորն. Բ.).»

Թիւ 42. Սաղմոս «Ոյք պահեն զունայնութիւն և ըզսատութիւն..» (2 տուն):

Թիւ 43. Աղօթ.—«Անդ ամբարպահեալ զպիղծ մեշապն... արժանի լիցուք երկնային կենացն» (ԵԹ):

Թիւ 44. «Գործեցին զարդարութիւն, հասին աւետեաց..»

Բ. ՄԻՋԻՆ ՄԵՍՐՈՊԵԱՆ ԵՐԿԱԹԱԳՐՈՎ ՓՈՔՐԱԳԻՐ ԵՒ ՄԵԾԱԳԻՐ

2. Նոր Կտակարան. Աւետարան.

Թիւ 45. «Եւ երթային զհետ նորա ժողովուրդք բազումք ի Գալիլեէ.. (ԻԶ).. այնպէս լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան» (ԼԳ.):

Թիւ 46. «Հայեցարուք ի թռչունս երկնից.. ո՞չ ապաքէն հոգի առաւել է քան զմարմին»:

Թիւ 47. «Եւ ասէր Յիսուս առ հրեայսն. ամէն ամէն ասեմ ձեզ եթէ որ...»:

Թիւ 48. «Վայ ձեզ դպրաց և Փարիսեցւոց..»

Թիւ 49. «Եւ դարձաւ Յս զօրութբ Հոգւոյն ի Գալիլեայ (Ժ:).. ո՞չ որ ի նոցանէ սրբեցաւ. (ԻԲ)».

Թիւ 50. «Իբրեւ ոչինչ կարի հեռի էր ի տանէն. (ԿԵ).. և ել զբոյցս այս (ԿԷ).»

Թիւ 51. «Եւ Յս ասէ. Հայր թող զոցա.. ասէ ցնա Նաթանայէլ».

Թիւ 52. «Մեք ակն ունեաք թե նա է որ փրկելոցն.. և էին հանապազ ի տաճարին, գովէին և աւրհնէին զԱծ» (Մարկ.).

Թիւ 53. «Արկանել դորա զիւղդ ի մարմին իմ.. ոչ արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ»:

Թիւ 54. «Նոցա՛ թողեալ զաղաղակն զնաւն և զհայրն իւրեանց.. երթային զհետ նորա ժողովուրդք բազումք ի Գալիլեէ.. (ԻԳ)» Բ. անընթեռնլի.

Թիւ 55. «Ի նմին ժամուն ցնծացաւ Յս Հոգովն սրբով. որ արար ողորմութի ի վերա նորա.» (ձախից կտրուած):

Թիւ 56. «Նա պատասխանի ետ և ասէ. ո՞չ միայն հացի.. զամ թագաւորութի աշխարհի..»

2. Հին եւ Նոր Կտակարանի հատուածներ.

Թիւ 57. Ընթերցուածս Եսայեա մարգարէէ. «Այսպէս ասէ Տր.. հեթանոսաց ասէ Տր.»: Երբ. թղ. «Եղբարք ունիմք մեք սեղան»:

Թիւ 58. «Արդ զայս ասեմ և ուխտեմ ի Տր..» (Երբ. թ. $1\frac{1}{2}$ սիւնակ եւ մարգարէութիւն.)

Թիւ 59. «Զփառս հեթանոսաց. զմանկունս զորա...» (մարգ. Եւ.?). «Այլ մեք պարտիմք գոհանալ.. աղաչեմք ի Տր Յս Քս, զի հանդարտութ...» (Թեսղ.)

Թիւ 60. 2 թուղթ Ճաշոցի. «Իմաստուն չինեաց իւր տուն և կանգնեաց սիւնս... (յԱռակաց)»: «Եւ ելեալ Յս ի կողմանս Փիլիպպեա... զփականս արքայութ երկնից.» (Մատթ.):

Թիւ 61. «Վարդավառին երեկոյին նշանեն ի լեառնն..» (Ճաշոց)։

«Քանզի ճաճանչ է Այ զօրութեանն..» (Աւետր.)․․ «Այսպէս ասէ Տր ելի ի վերայ լերինն բարձու..» (Մարգ. Եսայ.). «Եւ եղիցի որ միանգամ մնայցեն յամ ազգաց.. Տն ամենակալի յաւուր յայնմիկ.» (4 թ. 17,5×13,3)։

3. Հին Կտակարան.

Թիւ 62. «Եւ ամաչեսցեն ամ որ.. զբեւրուն իմ որպէս տունս ուր.» (Եսայի)։

Թիւ 63. «Էջ նստ ի գետնի օրիորդ դուստր Բաբելացւոց.. ի վերայ քո զի մի սատակեսցես..» (Եսայի)։

Թիւ 64. Ճաշոցի կտոր. «Առ Ցախսք գաւաղան.. (Ծննդոց.)». «Եւ եղն նեման կառաւք և երկվարաւք..» (2. Թգ.)։

4. Այլ եւ այլք.

Թիւ 65. Վկայաբանութիւն. 2 թղ. «Եւ զկնի կատարելոյ տաւնին խռովեալ ամպոց բազում անձրև իջանէ ի շնորհաց ս. հոգւոյն..»։

Թիւ 66. Սեւքերասի և Պողիկտէի վկայաբանութիւն. սկզբից և վերջից թերի.

Թիւ 67. Վկայաբանութիւն ս. քառասնիցն. սկզբից և վերջից թերի.

Թիւ 68. Վկայաբանութիւն Եղիազարու. սկզբից և վերջից թերի.

Թիւ 69. Աղօթ.—«Որ ի ձեռն ս. երանեալ մարգարէին քո Մովսէսի..» (Մաշտոց).

Թիւ 70. Աղօթք ննջեցելոյ. «Գոհանամք զքէն հայր ամն մերոյ յի քի..» (Մաշտոց)։

Թիւ 71. Քարոզի հատուածներ. 3 թ.

Թիւ 72. Համաբարբառ յաւաչարան (կիսատ). բոլորգիր «Ի մեծ թվականութ. Հայոց Ջ.ԽԴ (?) և ի քի մարդեղութեան ՌՃՀԹ (?) և որբոյն Լուսաւորչին ՌՃՀԹ.

Թիւ 73. 2 թղ. Սաղմոսի մեկնութիւն. մէկի վրայ գրած է. ի ՑՁՁ սաղմոսն որդւոցն Կորխայ. ՁՁ. աէր Ադամայ է «զՀեթանոսաց կոչումն և փրկութիւն..»։

Թիւ 74. Թուղթ. Քարոզ. «Ե այսչափ խրատունք զատատանի..»: Այ երկայնմտութեան մասին։

Գ. ԱՆՑՄԱՆ ԵՐԿԱԹԱԳԻՐ.

Թիւ 75. Մաշտոց. «Դարձեալ երկիր պագանեմք.. և ապա մեկուսի ասասցէ զաղաւթս զայս ի վերա ձեռնադրելոյն. Քս Աձ մեր որ վասն բազում..» (323-դ թղ.)։

Թիւ 76. Մաշտոց. «Տր Աձ հայր ամենակալ..» (3. թուղթ)։

Դ. ԲՈԼՈՐԳԻՐ ԱՆՑՄԱՆ ՄԵԾԱԳԻՐ.

Թիւ 77. Ճառ բնութեան խնդրի մասին. «Զի՞նչ ինչ զաւան չարիք և մեծ հերձուած քան զայն որ բաժանեն զքի միացեալ բնութի՞ն.» 6 թուղթ.

Թիւ 78. Մագաղաթ բոլորգիր. «Որ զյղութեալսն անօրինէ անբռնադատ..» (աղօթք)։

Թիւ 79. «Եւ անցեալ ընդ այն Ցի եւեւ այր մի զի նուաէր..»(ՀԱ)։

Թիւ 80. Մարգարէին ձայնեալ բզքո զբաջուէին... (11 տ. շրկն.)
Էութիւն անեղ անբաժանելի. (8 տ.)
Աստուածածին անհասանելեալ (6 տ.)

Թիւ 81. «Դու ես քս աղբիւր կենաց..» (11-2 տ. շարական)։

Թիւ 82. Սաղմոս «Ոչ գնացի ես ընդ մեծամեծս և ոչ ընդ այնոսիկ..» «Յիշեա տր զԴաւիթ..» «Աձ Աձ իմ նայեաց առ իս..» «Զայնիւ իմով ես առ տր կարդացի..». (լուսանցազարդ, ոսկեզօծ կարմիր կապոյտ թանաքով)։

# ՊԱՏՃԷՆՔ Ա.

## ԿՈՆԴԱԿԱՑ, ՀՐԱՄԱՆԱԳՐԱՑ ԵՒ ԱՅԼ ԿԱՐԵՒՈՐ ԹՂԹՈՑ ՎԵՐԱԲԵՐԵԱԼՈՑ ԹԵՄԻՆ ԱՐՑԱԽԱՑ, ԵՒ ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՃԱՆԱՁԱՆ ՏԵՂԵԱՑ.

*Թիւ 1-ը տես* III. *ժողովածու՝ Թիւ* 5։ *Թիւ* 2-*ը՝ Թիւ* 4. *Թիւ* 3-*ը՝ Թիւ* 3. *Թիւ* 4-*ը՝ Թիւ* 2։

*Թիւ* 5. *Ներսէս Կաթուղիկոսը գրում է Դիզակու Սպիտակ վանքի գիւղացիներին, որ իւր ներկայացուցիչ Ովանէս պարոն Տէրին հարկերը լիովին հատուցանեն։ ՌՃԺԶ թուին. Կճիֆ. ՌՃԺԵ։*

*Թիւ* 6. *Սիմէոն Կաթուղիկոսը ՌՃԾ-ին գրում է Թաղլարեցիներին որ նոքա սկզբից Շաղկախու վանքի և Սպիտակ խաչի վիճակ են եղել և թէ այժմ այդ վանքի վանահայր է ձեռնադրում Յովհաննէս պարոն Տէրին. և յորդորում է որ հարկերը լրիւ նրան հատուցանեն։ Կճիֆ. ՌՃԻԴ.*

*Թիւ* 7. *Նոյն իմաստով. Կճիֆ.—ՌՃԻԵ.*

*Թիւ* 8. *Յովհաննէս Կաթուղիկոսի Թուղթը ՌՄԻԲ.-ին Դիզակի Գոնե կոչուած մասի գիւղացիներին (Հաթրուգու ձոր, Բանազուր, Ծամձոր և այլն), որոնք Սպիտակ վանքի վիճակաւոր են. որով հրամայում է առաջնորդ ճանաչել Պետրոս եպիսկոպոսին։*

*Թիւ* 9. *Իսրայէլ կաթուղիկոսը ՌՄԼԸ-ին գրում է Սպիտակ վանքի գիւղացիներին որ օգնեն վանքին և տուրից ազատեն. Կճիֆ. ՌՄԺԲ.*

*Թիւ* 10. *Իսրայէլ Կաթուղիկոսի գրութիւնը, որով պատմում է թէ Մէլիք Շահնազարը իւր բոլոր կալուածները կտակել էր «Ջհանպախչին», որովհետև Յուսէփնը և Ջումշիտը մերժել էին ժառանգ լինել. բայց Մէլիք Շահնազարի մահուանից 3 օր առաջ, երբ լեզուն կապուել էր և անզգայ, Ջումշիտը խլում է Ջհանպախչին կտակած հարստութիւնը, կտակը պատռում է, նոր և կեղծ կտակագիր է հանում և կաշառքով խանին և պէկին վաւերացնել տալիս։*

*Թիւ* 11. *Իսրայէլ Կաթուղիկոսը ՌՄԽԸ-ին գրուած թղթովս պատուիրում է վիճակաւոր ժողովրդին չվշտացնել ծերունի Պետրոս եպիսկոպոսին. և յայտնում է թէ ինքը անձամբ ուխտի գնալով տեսել է Սպիտակ վանքի միաբանների աղքատ ու թշուառ կեանքը և յորդորում է վանական տուրքերը լրիւ հատուցանել։*

*Թիւ* 12. *Սիմէոն Կաթուղիկոսի մխիթարական թուղթը ՌՄԾԸ-ին գրած, եկեղեցական ապաշխարանքի ենթարկուած մի իշխանին։*

*Թիւ* 13—18. *մասնաւոր նամակներ և թղթեր մէլիքների և Ներսէս, Յովհաննէս, մեծ մասամբ Իսրայէլ կաթուղիկոսների (ուղղուած իւր փեսայ Կիրակոս քոխվային, Տէր Դաւթի որդուն)։*

*Ապա ժողովածուի հետևեալ թիւ* 23—38 *և այլ մի քանի թղթերը՝ կալուածագրերի, պայմանագրերի և այլ թղթերի արտագրութիւններ։*

*Թիւ* 19. 1104 *թուին Սափար ամսում գրուած մի հրովարտակ Շահ—Սուլէյմանի, որով հրամայում է Ղարաբաղի Բէգլար պէկին, որ Դիզակ գաւառի Հաքարիմ գիւղի հայ բնակիչներին պաշտպանէ Սուլէյմանցի թուրքերից, որոնք խլել էին յիշեալ գիւղի ձմեռանոցը.*

*Թիւ* 20. *Նոյն բառերի կրկնութեամբ և նոյն իմաստով. միայն* 1115-*ին գրած և Շահ Հուսէինին վերագրուած,*

*Թիւ 21. Փանահ խանի Ցովհաննէս Կաթուղիկոսին (որդի Մելիք պէկին) տուած հաստատութեան թուղթը, տաճկաց* 1176 *թուի Շաբան ամսում, որին ընտրում են Շիրվանի, Գանձակի և Ղարաբաղի հայ ժողովուրդը, իսկ խանը գթալով և ողորմելով ըստ սախափ թագաւորների, հրամայում է նրան կաթողիկոսութիւն տալ, իսկ ժողովուրդին պատուիրում է հնազանդ լինել նրան։*

II. *գրութիւնը նոյն խանի՝ ուղղուած է Մելիք Միրզախանին և Խաչենու գաւառի մեծամեծներին, որով հրամայում է նորընտիր Ցովհաննէս Կաթուղիկոսին արժանաւոր պատուով ճանապարհ դնել. բոլոր հետեւակ հրացանակիրները պէտք է ուղեկցէին հայրապետին։* 1191 *թ. Րաջաբ ալմուրաջաբ ամսի* 14-*ին։*

III. *Թղթովս նոյն Փանահ Ալի խանը վանքի ծառայողներին ամեն տեսակ հարկից և պաշտօնեաների պատասխանատուութիւնից ազատում է։ Գրուած է* 1152 *թուի Շաւալ ամսի Դ-ին։*

*Կնիք. քառակուսի, այս գրութեամբ. «Բացի Ածուց չկայ ո՛րիշ Ած, ճշմարիտ խօսք. Փանահ Ալի.* 1134*»։*



# ՑՈՒՑԱԿ

## ՁԵՌԱԳՐԱՑ ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ՏԵՂԵԱՑ.

*Գանձատանի գրչագրերը.*

Թիւ 1. Քառաձայլ Աւետարան. Թուականը չունի. առաջին թղթի վրայ. «Ես մարկոս աղուանից կաթողիկոս ունէի մատոս Ոհանես երէցն առաքել երիցու որդին զը գեկան ստակաւ ի. Թաղար ցորեն զապալու չափովն եառ. ինքեանքն ի քս փոխեցան իրք մին չունին որ զիմ պարտքն տէին, տանուտէրք և քահանայք մէջ ընկան աւետարանս ու Ա ձի Ա թամք ըերին թէ այլ իրք մին չունին, երես գրին թէ այս է խեղճ են ես այլ խղճացի, զձին ու թամքն յետ տվի. զաւետարանն առի։»

«Ես եղիշայ երեցս գնեցի զաւետարանս ի տ՞ր մաթէոս Կ-էն ում գեկանայ՝ վկայու՞ք եղունդեցի ովանէս երիցուն, մը խուշքայշէն մանուէլ երիցուն... յիշատակ հաւրն իմոյ շատուն, մաւրն իմոյ գուլգուլին, եղբաւրն իմ սրթուխշին և սալգուրշին ի պարոնութե՞ ամիր խալիլին և որդոյն իւրոյ վահրամին թվ. պձէ. կազմեցաւ աւետարանս թվիս պծա էր (պձա)։»

Թիւ 2. Աւետարան կոստղած, բոլորգիր. անյիշատակարան։

Թիւ 3. Աւետարան կոստղած, բոլորգիր. անյիշատակարան։

Թիւ 4. Աւետարան ՌՃԱ-ից. Թղթերից մէկի վրայ գրած է. «Որժամ գնաց տն մեր յ՞ս ՞քս ի վեր երուսաղէմ անժամ հարցին ցնայ աշակերտքն, որժամ այլեցէ ամեք կարկուտի կամ կայծակամք անժամ զինչ արու՞ք. հրամայեաց տ՞ր մեր յ՞ս ՞քս կարդացէք զմաց ն՞ր ցնուի մինդի մկրայ ուվստյ ենուկ ինուք եղիեայ զուք զարձուցէք կարկուտն թէ ոչ զարձուցէք զարզարը լինէք ՞քի ա՞յ մերոյ ամէն.»։

Թիւ 5. Աւետարան .. գրուած «ի թագաւորութե՞ն լևոնի»։

Թիւ 6. Աւետարան «ի թվ. Հայոց ու ի դուռն ս. յաթոռիս յամենափրկչէ և ընդ հովանեաւ ս. Ըծածնին ի յերկիրս խաչեան ի հայրապետութե՞ ՞տն գրիգորիսին որդի մէհրապ պէկին իշխանութե՞ շահ թահմասփ.» տակը գրած է. «Ես Դիրիխոր Կթ՞ղս իմ կամաւ տվի ս. աւետարանս պարդամին. ես տ՞ր եղիաս վկայ եմ, ես ՞տր խաչատուր վկայեմ... ։»

Թիւ 7. Յովհաննու Մայրիվանեցւոյ առացեալ ճառք (թվ. պա. ի քաղաքն Սուրղաթ.) և պատմութիւն ս. վկայից և խրատք վարուց։

Թիւ 8. Քաղուածու Մատթէոսեան Աւետարանի. Գրիգորի Տաթևացւոյ. թվ. ռճժդ.

Թիւ 9. Գիրք առաքինութեանց և մոլութեանց. ռճիթ.

Թիւ 10. Կանոնագիրք մեծագիր բոլորգիր.

Թիւ 11. Ցանկ Աստուածաշնչոյ.

Թիւ 12. Աւետարան փոքրագիր բոլորգիր.

Թիւ 13. Աւետարան բոլորգիր.

Թիւ 14. Յովհաննու ոսկեբերանի Մեկնութիւն Աւետարանին Յովհաննու.

Թիւ 15. Գանձարան բոլորգիր. Թուական՝ ՊԶ. գրիչ՝ Մանուէլ աբեղա. ստացող՝ Տէր Տիրաւագ.

Թիւ 16. Աւետարան փոքրագիր բոլորգիր. Թուական՝ ՊԶԷ. ստացող՝ Վարդան քահանայ. «ոսկեզար և գեղեցիկ նկարներով..»։

Թիւ 17. Աստուածաշունչ մագաղաթեց բոլորգիր.

Թիւ 18. Քարոզգիրք բոլորգիր.

Թիւ 19. Գիրք պիտոյից.

Թիւ 20. Մաշտոց. «Գանձատարու Հայրապետին Յովհաննիսի Կթղ-ին ետու զայս եղբ ընծայ.. Երեմիայ վ՛րդս նոտար ետու..»։

Թիւ 21. Մաշտոց նոտրգիր.

Թիւ 22. Քերականութիւն. նոտրագիր. ՊԽ.

Թիւ 23. Ներածութիւն Պորփիւրի.

Թիւ 24. Բառգիրք նոտրգիր. ՌԺՃԳ. «ի հայրապետութեան Տ. Յակոբայ եպ-ի և թագաւորութեան շահապասին». ստացող՝ Տէր Միքայէլ..։

Թիւ 25. Աղօթագիրք. մագաղաթ. բոլորգիր. ՌՃԼԹ. Արիստակէսի ձեռքով։

Թիւ 26. Բուն Մաշտոց բոլորգիր.

Թիւ 27. Մաշտոց ձեռնադրութեան եպիսկոպոսի. ՌՄԺՆ. Յուլ. ԺԸ. «Օրհնաբեալ ընտիր և սուրբ օրինակէ Աբրահամ արք եպ-է Ճաքեցւոյ առ գրան ո՞ք վկայարանի ո՞րոյ երից մանկանց և Դանիէլի մարգարէին...։»

Թիւ 28. Գիրք մեկնութեան երկոտասան մարգարէիցն. բոլորգիր. «Գիտապետք Հայոց Տէր Գրիգոր տր Զաքարէ և տր Ստեփաննոս Աղուանից և վարժապետ եսայեայ և ստացող սորին պատուական և անձալաւս բարունին յովանէս և թագաւոր Հեթում.. մանաւանդ Ըծառէր և կայսր աշխարհակալ Խաղան զան յազգէն նետողաց տիրելով հայոց և սարոց, վրաց և աղուանից, մարաց, պարսից, թուրքաց և հագարացւոց .. գրեցաւ հրամանաւ .. եսայեայ բաբունապետի ի խնդրոյ յոհաննէս վրդ-ի և ձեռամբ թադէոսի անարհեստ գրչի թուին Հայոց ՉԾԲ ի գաւառիս այրարատեան ի վանքն որ կոչի նունաւնից ընդ հովանեաւ ս. Ըծածնիս և այլ կենակեր ս. Նշանացս ...»։

«Յիշատակ է մեկնիչս երկոտասան մարգարէիցն զոր լուսահոգի մելիք Յովսէփի գուստր սուլթան թագուհին և .. Մելիք ազամին կենն մելիք մէջլումին ստացեալ. եւ Եղիազար եպ-ին». վերջում Դանիէլի. «Գրեցաւ վերլուծութիւնս Դանիէլի մարգարէին. յանապատիս Դայլիձոր . . . յիշատակ.. Աստուծա..»։

Թիւ 29. Մեկնութիւն սաղմոսաց նոտրագիր.

Թիւ 30. Գիրք առաքինութեանց և մոլութեանց. ՌՃԻԹ.

## *Շուշի քաղաքի գրչագրերը.*

Ագուլիսից առած եկեղեցու.

Թիւ 1. Բոլորգիր Աւետարան, կազմած. ստացող «Գանջու Զարեքու ս. Անապատի հայր Ներսէս վարդապետ»։

Թիւ 2. բոլորգիր Աւետարան. «Գրեցաւ ս. Աւետարանս ի գաւառն Սեբաստիոյ ի գիւղն որ կոչի Ըռսաւեղի ընդ հովանեաւ ս. Թէոդորոս վկային .. ի թվ. Հայոց ռճգ.» Գրիչը Համլու անունով մէկն աշակերտն է։ Համարաբաստով.

Թիւ 3. Բոլորգիր Աւետարան. կազմած. «Գրեցաւ .. ձեռամբ .. Բարսեղ . .

քհնյի․ ի Թվ․ Հայոց ռճհթ ․․ ի Թագաւո-
րութեն Պարսից Շահ Սուլէյմանին և ի հայ-
րապետութե տանս Աղուանից Տն Եսի-
միայի ․․ Կթղկոի․ ի յերկիրս Գեանջայ, ի
գեօղս քարահատ, ընդ հովանեաւ ս․ ածած-
նիս և ովանիսիս․ ի խնդրոյ ․․ Անդրիասին․․
յիշատակ․․ ծնողացն (իւրոց) հօր Աղիզ պէ-
կին և մօրն պէկի սուլթանին» ․․ «Թվին
ռմժբ ․․ առայ Յովհաննէսս ս․ Աւետարանս
ի ձօրս Գանձակու ի երկիրս Գանձու, ի գիւղս
որ կոչի Պայանանց․ ի դուռն ս․ Հրեշտա-
կապետ եկեղեցւոյ․ ի հայրապետութեան
Գնձարու տր Ներսէսին․․ »:

Թիւ 4․ Բոլորգիր Աւետարան․ «․․Գր-
րեցաւ ս․ Աւետարանս ի յերկիրս Աղուա-
նից ի Գաւառիս Դիզակա ի գեաղս որ կոչի
Թեղասեռ ի դուռն ս․ Սարգսիս, ի Ճաճ ակ-
փոյն երրորդ ամին ձեռամբ ․․ Մելքիսէդ
իրէցու և (եղբաւրն իմոյ)․․ տր Կիրակոս
քհնյի որ ի միասին սկսաք և աւարտե-
ցաք ․․ »:

Թիւ 5․ Բոլորգիր Աւետարան․ «․․Գր-
րեցաւ ․․ ի ս․ ուխտս ի Գանայգեռայ, ընդ
հովանեաւ ս․ Ածածնիս և ս․ Յակոբայ Տն
եղբաւր ․․ ի Թվ․ Հայոց ջկե․ ի հայրապե-
տութեան տէր Սարգիս Կաթողիկոսի ի յա-
թոռ Ս․ Էջմիածնի ․․ գրեցաւ ձեռամբ իգ-
նատիոսի ․․ »: «Ի Թվ․ Հայոց ռղ և հայ-
րապետի ս․ էջմիածնայ տն տր Փիլիպոսի
նորոգեցաւ ս Աւետարանս ձեռամբ Սար-
գիս կրօնաւորի ․․ ի ս․ անապատս Չարեքա
և առաջնորդ ս․ ուխտին Դաւիթ եպիսկո-
պոս ․․ »:

«․․Յիշատակ է ս․ Աւետարանս ․․․ տի-
րացու Յօնանին և ծնողացն ովանէսին և
հռոմին և քեռցն Թուխիկին, Մարիամին,
Թամարին և Եղիսաբէթին ․․ Արդ ․․ գոլով
յերկրէն Նախչուանու ․․ տուաք յիշատակ
Նախչոնոյ եկեղեցուն որ ի Շօշ քաղաքի ի
ռմծթ ․․ ի ժամանակս Իբրահիմ խանին։»

Թիւ 6․ և Թիւ 7․ Բոլորգիր Գանձա-
րաններ․

Թիւ 8․ Բոլորգիր Աւետարան․

Թիւ 9․ Բոլորգիր Աւետարան․ գրիչ՝ Եսայի․ ստացող՝ Սարուխան․ «Ի Թվ․ Հա-
յոց ռղդ․ ի հայրապետուե․ տն Գրիգորի ընդ
հովանեաւ ս․ Նահատակիս ի յերկիրս Տա-
ւուշ ի գեաղս որ կոչի Թաւուզ ․․ »:

Թիւ 10․ Բոլորգիր Աւետարան․

Թիւ 11․ Բոլորգիր Աւետարան պատ-
կերազարդ․ «Գրեցաւ ․․ ի Թուիս ՉԾԷ յա-
նապատիս, որ կոչի Ասպիսնկայ ընդ հո-
վանեաւ ս․ Յարութեան․․ յառաջնորդութե Ստե-
փաննոս վրդ-ի գրեցաւ ձեռամբ ղազարի
սուտանուն կրաւնաւորի ․․ ի վայելումն
Հայրապետի (ուրիշ գրչով) ․․ զվերջին ստա-
ցող ծաղկող և նորոգող ս․ Աւետարանիս
տր Կիրակոս քահանայ և Մերուն ծաղկող յի-
շել» (տես VI Ծոցովածու, Թիւ 57, ծաղ-
կողիս նկարը)։ Այս Աւետարանս եւ Շօ-
ռօթեցի (Նախիջեւան) «Ովանիսի» որդի «Յու-
նանից» ընծայ է տրուած «Շօշ» քաղաքի ս․
Աստուածածնի եկեղեցուն ՌՄԺԲ Թուին։

Թիւ 12․ Բոլորգիր Աւետարան․ շատ
գեղեցիկ, բայց եղծուած նկարներով։

Թիւ 13․ Բոլորգիր Աւետարան․ վերջին․
Թուղթ․ «․․․ Հախումս ստացայ ս․ Աւետա-
րանս․․ յիշատակ հօրն իմոյ Վարդումին և
մօրն իմոյ Թեյլին և ամուսնոյ իմոյ Փարին և
որդոցն իմոց Սարուխանին, Միրզախանին,
Յոհանին, Շահնազարին, Էգիլին ուլուխա-
նին և դստերացն Նազլուխանին, Դօլվաթ-
խանումին և հարսներաց մերոց Գիւլազին,
խաթունազին, ալվարին, սէատ խանին,
Նազլու խանին, խանփարին, խաթունին,
(Թվին ռճիգ) մանկտին, Թոռանց իմոց
տր ազարիային, Սարուպապին, Վարդա-
նին, զեռնգին գրիգորին, ակուբին, պա-
պումին, պայինաուրին, ազատին, պաղտա-
սարին մանուչարին, քոսպատին, եախշին,
գեչին, պապին ․․ եարին»։

Թիւ 14․ ղազանչեցւոց եկեղեցւոյ Կարմիր
Աւետարանը․ կազմած․ Ծոցովածու VI-ի
Թիւ 59-ի նկարներով և համաբարբառով․
«․․ Կանայքն Աղութ խաթունն և զատիչէն
եաուն գրել զսա յիշատակ ․․ հօրն Սարգսի

և մօրն Զանխաթունին և եղբայրն Նաւասարդին, Ասաթին, Ամիր տարին Կիրակոսին և քուերցն Մարիմին. Շահխաթունին և Բաղդատ խաթունին ... Կատարեցաւ ս. Աւետարանս ձեռամբ .. Վարդանայ երիցու . . ընդ հովանեաւ ս. Աստուածածնայ և ս. Վարդանայ ի Թ. Հայոց ՋԹ. ի հայրապետութեան Տն Գրիգորի և մերոյ . . ուխտիս Վարաղայ . . Յակոբայ (եպ.)». «Զվերջին ստացող .. ս. Աւետարանիս Սարուխն գնաց ի Վան տեսաւ ս. Աւետարանս . . ի ձեռն անօրինաց գերի, ի ժամանակի որ շահ Թահմազն .. գնաց Վան այրեց .. գերի եբեր ս. Աւետարանս, եւ Սաթումն ա թուման տուի առի յիշատակ .. հօրս Թուղթամելին, և մօրն Փաշամին և կողակիցն իւր Մարինոսին և միւսն եսամերին, միւս կողակիցն Մաչէն եւ որդիքն Պատուջն ..։»

Թիւ 15. Աւետարան բոլորգիր. «..Ես, Ղևայ երէցս, որդին իմ տէր Մելքիսէթ քհն՛յն առինք նորոգել տվինք պատուաստանս յիշատակ .. հայրն իմ Կայսին և մայրն իմ Սեմին և որդւոյն իմոյ տէր Մելքիսէթին, Ջհկարին, կողակցին իմոյ եսանբէկին, հարսներին իմոյ եղուբին, մարիանին, որդոյն նորա Մելքումին, հեղաղին, զարամին, գատերայ նորին բէկաղին, Սեմին, տէր Մէլքիսէթ և այլն.»։ «Երկիրս Մաղայող. ի գիւղն Արտաշեպի թագաորուե Շահապաղին .. տն մերոյ տէր Յովհաննիսին .. թվ. Հայոց ռկզ..». «Արդ եւ Յոհանէս քհ՛յս ստացայ զսյս .. ի յշ՛տկ ինձ և եղբաւրն իմոյ Սարգիս .. քհնյի .. ի Թվ. ՌԿԹ.»

Թիւ 16. Ս. Անձնափիկի Կարմիր Աւետարանն. (Սարուշէն գիւղի.) «Գրեցաւ ս. Աւետարանս .. յռձգ. և յարկեթեանս և ի թուականիս ոյս. ձեռամբ Ռստակիսի ..։»

*Աւետիք Բաշտարեանի գրչագրերը.*

Թիւ 17. Քաղուածոյ աղմոսացն Դաւթի. Մեծութիւն. 20×14. Թուղթ՝ 545, Գիր՝ Նոտրգիր։

Վերջին մասը չորրորդ կանոնից մինչև ութերորդը։

Թիւ 18. Ժամանակ՝ ՋԾԲ. Գրիչ՝ Խաչատուր Երզնկացի Ստացող՝ Տէր Ստեփաննոս. Մեկնութիւն ժողովողին. Գրիգորի եպիսկոպոսի Նիւսացւոյ 14 Քարոզներ, 132թ. «... գրեցաւ ի թվիս հայոց չծբ ընդ հովանեաւ ս. մենաստանիս՝ մականուն կոչեցեալ Արտաէս ..»։ «Զարհեստ-ն .. զտէր Ստեփաննոս, զվտառուոր իշխանին որդին զՏարսայիճն ստացաւղ ս. տառիս ... յիշեցէք .. գրիչ զխաչատուր Երզնկացիս։» «Յիշատակ է ուսնայնութեան մեկնիչ գիրքս .. Գող Քիլիսեցի տր յոհանէս քհնյին. զոր ընծայեաց տր Եղիազար վ.ին .. ամլը թվին։» «Զվերջին ստացողս՝ զՍիմէոն .. յիշեսջիք ..»

Թիւ 19. Քարոզգիրք. 470 Թուղթ. Մեծութիւն. 21×14. Գիր. Նոտրգիր. Սկզբնատառ. Ծաղկազիր. Ժամանակ. ՌՃԻԵ. Գրիչ. Խաչատուր տիրացու. Տեղի. Ուռումելիա. քաղաք Փիլիպպոպոլիս. 30 քարոզ. «... Գրեցաւ .. ձեռամբ .. Գրչի Խաչատուր տիրացու որդոյ յակոբին. ի խնդրոյ պ՜ր Կեսալեաղին . ի Թվ. Հայկազեան ազգի ռճիե. յաշխարհս Ուռումելու ի ք՜ղք Փիլիպպոպոլիս, ընդ հովանեաւ ս. Գէորգա զօրավարին Կթղկ՜ սուե ս. էջմիածնայ Տ. Յակոբայ ... յիշեցէք .. Խաչատուր .. գրիչս .. հայրն իմ Յակոբ և զմայրն իմ Նանուշ ..»։

Թիւ 20. Բանգիրք. 254 Թուղթ. Գիր. Նոտրգիր. Ժամանակ. ՌՃԼԱ. Գրիչ. Աբրահամ երէց. Տեղի. Հօռօթ գիւղ. «Ձեռամբ .. Աբրահամ երիցու Հօռօթցի գրեցաւ թվին ռճլա. օգ. իզ. ի գեւղաքաղաքն Հօրօթ». «.. Աւարտեցաւ Բանգիրքս թ. ռճլա օգ. իզ. ընդ հովանեաւ ս. Յակոբ եկեղեցւոյ. յի՛շտկ Տէր Գրիգոր կուսակրօն քհ՛նյի Ընկծորեցւոյ որդի չլընկար ուստայ հեղաթին ..»։

Թիւ 21. Գիրք մոլութեան. 263 Թուղթ. Գիր. բոլորգիր. Ժամանակ. ՌԴԲ. Գրիչ. Յովսէփ. Ստացող. Տէր Պօղոս. գեղեցիկ ծաղկազարդերով.

Թիւ 22. «Ժողովումն Մեկնութեան Մատթէոսի.» Թուղթ 167. Գիր. Նոտրգիր.

ժամանակի. ՌՃԾԶ. Գրիչ. Յարութիւն քհն. «Ժողովումն մեկնութեան ս. Աւետարանին որ ըստ Մատթէոսի (ի) բանից իմաստուն վր՞դաց եկեղեցւոյ, կարգեալ և յօրինեալ գլխահաս ընթերցողաց Ա. Ներսեսի Հայոց Կթ՞ղի ի խնդրոյ Նորին եղբօր Գրիգորիսի վերադիտողի Հայոց» 1ա. Ցանկ գլխոց. 2ա. Մեկնութիւն խորանաց Աւետարանին. «ԶԱրիստակէս վրդ. և զգովեալ աշկ՞րտ Նորին զԵփրեմ յիշեսջիք ի ՟քս, զի Նա աշխատեալ ժողովեաց զբանս մեկնչացն ի մի յետ ՟ան Ներսեսի. յօրինակն այսչափ էր. յիշ՟եալն Արիստակիսի զայն որ կատարեալն էր չգտաք անմեղադիր լերուք.» «.. յաւարտումն (հատոր) .. մեկնութե .. ի շրջագայութեան .. ՌՃԾԶ-ին .. Յարութիւն քահանայս Կեսարացի.. ակայ .. յիշեցէք .. և զծնողս իմ Բարսամ քհնյն և զաշխատող սորա որ զԹուխթս կոկեաց, զգեղարդեաս որդիս իմ աստուածատուրն և յուսուցիչս իմ յովէփ վրդն .. ի վայելումն Ածատուր անդրան վարդապետին»

Թիւ 23. Գիրք Առաքինութեանց և Մոլութեանց. Թուղթ 466. Գիր. բոլորգիր. ժամանակի. ՌՃԻՆ. Նկարազարդ. Գրիչ. Մարգար երէց. Այս Ճառագրքի ծաղիկ զիստրիանց (գրեթէ. Բարսեղ վրդ.) կամ զօրութեանց որ Թարգմանութիւն է և ընծայեալ է Ս. Գրիգոր Լուսաւորչի անուան։

Թիւ 24. Մեկնութիւն Եսայեայ մարգարէին. Թուղթ 466. Գիր. Նօտրգիր. ժամանակի. ՌՃԴ. Նկարազարդ. (97.) «Համառօտ ժողովումն Մեկնութեան ս. մարգարէին Եսայեայ ի լոյսաւոր մեկնչացն ... Հրամանաւ Տեառն Հայոց Հիւրմոյ արարեալ. Գէորգեա (վ-ի.)։» «Գրեցաւ գիրքս ի Թվ. ռճդ. ի վայելումն տէր Վարդանին.. ».

Թիւ 25. Ժամագիրք՝ պատարագամատոյց և պարզատումար. Թուղթ. 140. Նիւթ. մագաղաթ. Գիր. բոլորգիր Նկարազարդ. ժամանակի. ՌՂԱ. Գրիչ. Սարգիս. Տեղի. Կ. Պոլիս .. ։

Ա. Ժամագիրք. 2. «Կարգաւորութիւն հասարակաց աղօթից եկեղեցեաց Հայաստանեայց, որ կատարի ի մէջ գիշերի ի գիշերս ..»։ Արարեալ լուսաւորչին Գրիգորի, եւ Սահակայ հայրապետի և Մեսրովպայ վրդի. և Գիւտայ, և Յոհաննու Մանդակունոյ Հայրացն մերոյ.. »։

«..ես.. Սարգիս սուտանուն գրեցի .. ի լաւ և ընտիր օրինակէ .. Թումայի որ փայլեաց.. յերկիրս Քաջբերունի .. ի ս. ուխտն Մեծոփայ, որ և սա Նորոգեաց զաղաւթքս որ էր ծերեալ և եղծեալ ի սխալագիր դպրաց և յանմիտ արանց. զոր հոգ յանձին կալեալ՝ ըստ իւրում կատարեալ իմաստութեան և տուեալ շնորհացն և ուժանդակութեամբ հոգւոյն սրբոյ կատարեաց զսխալն ուղղելով և զպակասն բաւելով. գրեցաւ .. ի աղա. Նոյ. . Թ. ի մայրաքաղաքն կ. պոլսի. ընդ հովանեաւ ս. Գէորգայ զաւրավարի. ի հայրապետութեան տէր Փիլիպոս արհ Կթ՞ղկոսին.

Թիւ 26. Ռակեփորիկ. թուղթ 236. Մեծութիւն. 12.5×8. Գրութիւն. միւսսին. 10×6. Գիր. բոլորգիր. ժամանակի. 1583. Գրիչ. Մարտիրոս երէց. Տեղի. Սեբաստիա. Նկարազարդ.

2ա. Ներբող ի ս. խաչն Քրիստոսի. «Այսաւր ուրախացեալ ցնծան .. ». 16ա. Տեառնէ ս. Ածածնի. 40ա. Հարցումն ս. Գրիգորի .. վասն ոգւոց մարդկան. 81ա. Եփրեմի . վս. պահելո կիւրակէին. 66բ. Թուխտան. մերոյ յի. քի.. . 92ա. վկայաբանութիւն ... Աղեքսիանոսի . . 112ա. Աղաւթք արբա Եփրեմի. 130բ. Ն. Եփրեմի վս աստուածոց աղօթից. 144բ. Գիր Ուրբաթի. 154բ. երգումն և բժշկուի. 173ա. Վկ. ս. Մարիանէ կուսին. 200ա. Ուղիղ դաւանութիւն հաւատոյ. (Վարդանի.)։ «.. . Աւարտեցաւ ռակեփորիկս ի քաղաքն Սեբաստիա ընդ հովանեաւ ամենաբր. Ածածնին և ս. լուսաւորչին. ձեռամբ Նուաստ և Ներգևեալ ոգոյ սուտանուն Մարտիրոս երեցի ի Թվ. ռլբ... Քս. աղաչեմ սուսացողի գրոցս Մուշեղին, Մուրատին ... հաւրն աղաւթին, մաւրն պուլային և որդոյն Կարապետին և Թոռին Առաքելին և զաւակացն մայրամին և եղբարութին ..».

Թիւ 27. Ծաղկաձոր. թուղթ. 156. գիր. Նոտրգիր և բոլորգիր. գրիչ. Կարապետ, Դաւիթ և այլք. Շարականի և տօնացոյցի հատուածներ. «Մաթէոս վրդ-ի աշխատասիրեալ վս. քարոզութե. բանի առեալ ի վրդ-է .. Եւագրիոսի որ միսք անապատի կոչի և Նորին վարուցն հետևողէ Ս. Ներսէս որ յան և ցեր գոյր ի բանս նոյա հաւաքեալ ի մի ի պէտս բանասիրաց .. 6 քարոզ. 26ա Գ-ի. վս. անբան ողջանցն. 34ա. Քաղուածք շարականաց. ապա՝ Քարոզք Գրիգորի Տաթևացւոյ և Լուծմունք Պօղոսի. «... Ես Ցակոբ գրեցի .. ի խաչելութե. քարոզս աշխատասիրեցի .. յիշեցէք .. զՎարդապետ քնոյ.. և զողոյքն իւր զմխիթար և զտէր աւագ...»:

Թիւ 28. Լուծմունք Պօղոսի, 171 թուղթ. Նոտրագիր 1761. 171ա. «Եղև լուծմունքս բանիցն Պօղոսի պղատոնական իմաստասէրի ի ՌՃ. ի Նուաստ Սիմէոնէ Գառնեցւոյ եպ-է .. 176բ. Եղև վերստին օրինակեալ ի թվին ռմծ. ի գաւառն ս. Կարապետի .. ի վանքն Գլակայ որ է երկիրն Տարօնոյ որ այժմ կոչի Մշու ս. Կարապետ. (ի) գլխաղետութե. տն. Յովնանու քաջ հռետորի և արքեպ-ի. և Նորին սպասաւոր Պետրոս արքեպ-ի. որ ետ գրել զիրքս օրինակել ինքեան ...:»

Թիւ 29. Պատմութիւն Դաւիթ բէկի. 20 թուղթ. Նոտրգիր. 1759. գրիչ. Յովհաննէս վարդապետ Ամասիացի. հրատարակուած 1871 թուին:

Թիւ 30. Քարոզգիրք Գալուստ վարդապետ Սամսունցու. 22 թուղթ. Նոտրգիր. գրիչ. Մարգար աբեղայ. 7 քարոզ:

Թիւ 31. Վկայութիւնք մարգարէից. թուղթ 31. Նոտր և բոլորգիր. 1. «Վկայութիւնք մարգարէից և Նահապետաց յղ որ հանդերձեալ էր կատարել ի յետին ժամանակս.» . 20ա «Լուծմունք ի ս. գրոց զոր արարեալ է Վարդան վրդն. ի խնդրոյ Հեթում թագաւորին»:

Թիւ 32. Բարդ գիւղի Սարգսի Աւետարանն. «... Գրեցաւ ս. Աւետարանս ի թվականի Հայոց ռժբ. ի հայրապետութե. տն. Գրիգորիսի կթղսի. ի յաթոռն Գանձասարայ և ի զամնութե. շահ Թահմազին, որդոյ շահ Իսմայիլին .. ի գաւառս վակունեաց, ի գեղջ որ կոչի Հովասուս որ հընդկուղակը անուանի, ի դուռս ս. եկեղեցւոյ, ուր է մասն պանդիոյնեան բժշկի և մասն սապանակի, և Մեոկեաւնոսի գլխուորն և ակոռայ և բսեփանոսի Նախավկայի .. գրեցաւ ձեռամբ Հայրապետ աբեղայի .. յիշատակ հաւր իւր Խալիկին և մաւր իւր Համանին և եղբարցն Կոստանդին և Թորոսին .. դուլամիրին, մարիամին և քվերցն մարիամին և փաշին և խանդազին... և հարազանրացն մարիամին, ու լուսաւորութենին և աշակերտաց մարիամին և եղբէր գբատերաց հռամսիմին և ամենեցուն առ հասարակ ...»:

Թիւ 33. Թարվիզի ս. Աստուածածին եկեղեցու գրչագիրը. յիշատակարան «զԱ. և զյետին կազմողս ս. Աւետարանիս .. Յովսէփի աբեղայիս .. (յիշեցէք.) .. կազմեցի ի վայելումն խոճա Միրզաին .. ի թվ. Հայոց ռղէ»: Կազմի արծաթապատ եւսեր վրայ. «Յիշատակ է ս. Աւետարանիս արծաթն Թարվէզցի Սարգսի որդի բաղդասին և թաղէոսի որդի եղիազարին .. թվ. ռմի.. ձեռամբ տր. Մովսիսի.» .. 6բ. «.. յիշեցէք զպր. զաղբաւրէն և զծնաւղս իւր զաքարէն. և զմայրն զսորղան Վահրամն և զանդրանիկ զորդին իւր զմուղուլթ ....» 18ա. «Յիշեցէք զպր. Ֆախրայտին և ծնողսն իւր ի խաննայ և զմարգարէտ և զպր. Խոջաջայն և զՍտեփանոսայն և զծնողսն իւր զքահանայն տր. Մկրտիչ, և զմայրն իւր և զեղբայրքն իւր աղեքսանդրեանն և Նազարայելին .. զթումա եպ. Վարդագեցի» .. 110ա. «... զարին Մելքեին, զերանիշեն զիւր կողակիցն զխանըմ խաթունն. որ բռ. դկ. գիւանի տվել են ս. աւետարանս ի գերութենէ ազատել. երանի մաւր անունն, որան մելիք փեսին. .. թագւոր շախ գատեր. զալուն մէլիք (ի) մամայխաթուն(ի) .. ած. ողորմի» ... «... Յիշեսջիք զաւակն իմ զմարգարէ (դրչի՝ բառս յաւելայի) և զեղբաւր որդին զյակոբ ..» «.. Կատարեցի .. յամի չկ.» և այլ յիշատակարաններ. 18 նկարներով. թէ գիրը և թէ ծաղկողը Թորոս քահանան է:

Թիւ 34. չարական մագաղաթեայ, բոլորգիր. նկարազարդ. գրուած է ՉԼԷ թուին, Տարբերունեաց երկրում, Բերկրի քաղաքում, ձեռամբ Կարապետ գրչի, Գրիգոր վարժապետի խուլ կոչուած օրինակից։

Թիւ 35. Յայսմաւուրք բոլորգիր. 2 օրինակ.

Թիւ 36. Ճաշոց բոլորգիր.

Թիւ 37. Կոչումն ընծայութեան Կիւրղի. նոտրգիր.

Թիւ 38. Գիրք Հարցմանց.

Թիւ 39. Աւետարան բոլորգիր. ՌԴ. թուին.

Թիւ 40. Աւետարան բոլորգիր. ՌԴ.

Թիւ 41. Աւետարան մագաղաթեայ.

Թիւ 42. Աւետարան բոլորգիր. ՉԽՆ. գրել է Յովհաննէս գրիչ, Մաքենոցաց և Սաղմոսավանքերում.

Թիւ 43. Աւետարան բոլորգիր, մագաղաթ. 3 օրինակ. վերջին երկուսը թղթից. երրորդը 22-ից՝ Բզնունեաց գաւառի Աղէթ գիւղ։

Թիւ 44. Աւետարան. բոլորգիր. թուին ՊՁԳ. Ընկուզեաց անապատ, յԽրապաւլիս գաւառ Ձմչկածագ.

Թիւ 45. Աւետարան բոլորգիր.

Թիւ 46. Ժամագիրք Առենի.

Թիւ 47. Մարկոս և Յովհաննէս.

*Թաւրիզի Արամեան Գոչատան գրչագրերը.*

Թիւ 48. Աւետարան մագաղաթ. երկաթագիր.

Թիւ 49. Աւետարան թուղթ. բոլորգիր.

Թիւ 50. Մաշտոց թուղթ. բոլորգիր. թուին ՌՃԼ.

Թիւ 51. Քարոզգիրք Յովհաննու Ծարեցւոյ, նոտրգիր.

Թիւ 52. Մեկնութիւն Մարգարէից. նոտրգիր. պարզաբանութիւն Ներսէսի արքեպիսկոպոսի Տարսոնի Կիլիկիոյ. գրիչ — Գէորգ Նաղաշ վարդապետ Գորեցի. թուական. ՌՄԻԳ.

Թիւ 53. Գիրք Պարապմանց Կիւրղի. գրիչ. Աղաբէգ դպիր. թուական ՌՃԽ. Շօշում.

Թիւ 54. Գանձարան. 158 գանձ. բոլորգիր.

Թիւ 55. Մայր Մաշտոց. բոլորգիր.

Թիւ 56. Յայսմաւուրք. թուղթ. բոլորգիր. գրիչ — Յովհաննէս վարդապետ. տէղի. Կեսարիա. թուական ՊՁԷ.

Թիւ 57. Քարոզգիրք նոտրագիր Սիմէօն Կաթուղիկոսի Երեւանցւոյ. գրիչ. Գէորգ Գեղամեան, 1820 թ. Ս. Էջմիածին.

Թիւ 58. Աստուածանմանութիւն. նոտրագիր. արարեալ Պետրոսի վարդապետի Նախիջեւանցւոյ Փերթումեան, թուին 1773. Ս. Էջմիածին.

Թիւ 59. Խորհրդածութիւն. նոտրգիր. Ներսէսի Լամբրոնացւոյ.

Թիւ 60. Գիրք Արարածոց, բոլորգիր. Հաւաքումն մեկնութեան սրբոց արանց.. հաւաքեալ Վարդանայ վարդապետի. թուին ՉՁԳ.

Թիւ 61. Ծողովածու. աշխարհագրութիւն Մովսիսի Խորենացւոյ և Վարդանայ վարդապետի. տոմարական և այլն գիտելիքներ.

Թիւ 62. Թուղթք Պաւղոսի Առաքելոյն. մագաղաթ. երկաթագիր. տեղի. Դրազարկ. որ և Ասագ վանք. գրիչ. Թորոս կրաւնաւոր. թուական. Հայոց ՈԻԲ։

Թիւ 63. Նոտրգիր. Ժողովածու. Պատմութիւնք. Մովսիսի Խորենացւոյ, Եղիշէի,

Փաւստոսի, և Վարդանայ Բարձրբերդցւոյ. թուական ՌՃԼԷ. Նորոգուած Եսայի Կաթուղիկոսի ձեռքով ՌՃԿԹ-ին Ասպահան —Ջուղայում։

Թիւ 64. Պատմութիւն Միքայէլի Ասորւոյ. Նոտրգիր.

Թիւ 65. Գաւազանագիրք. Գրանոր Մարտինի. Նոտրգիր. գրիչ. Սարգիս եպիսկոպոս. Թարգմանութիւն Ներսէս Պալեանի. թուական ՌԽԸ։

Թիւ 66. Ժողովածու. Թուղթ պատգամաց և Ներբողեանք Ներսէսի Շնորհալւոյ. բոլորգիր. ձեռ. Առանս. Կոստանդին և Թորոսը քահանաների ձեռքով գրուած ՉԼԳ թուին՝ ի խնդրոյ պարոն Աւշնի եղբաւր պարոն Հեթմոյ տեառն Կոռիկոսի Կիլիկիոյ.

## *Նարիման Մէլիք Զոհրաբեանցի գրչագրերը.*

Թիւ 67. Համառօտ հաւաքումն (յը) հոգւոյ և զօրութեանց նորին։

Թիւ 68. Քարոզգիրք Գրիգորի Տաթևացւոյ.

Թիւ 69. Բացայայտութիւն պատարագի Ներսէսի Լամբրոնացւոյ. ՌԿԸ. յերկիրն Ուռոսան ի գիւղն Գիտարաղ, ձեռամբ Պաւլոս դպրի. յիշատակ Երից Մանկանց փառաւոր ուխտին, ի ձեռն Ներսէսի Աղուանից Կաթուղիկոսի.

Թիւ 70. Ա. Գիրք Ճարտասանութեան Մովսէսի Խորենացւոյ. գրիչ. Սիմէօն քահանայ. ՌՃԺԷ.

Բ. Յաղագս աստուածային բացարձակ կատարելութեանցն.

Գ. Յաղագս երկնային մարմնոյ. (Թարգմանութիւն Ստեփաննոս Լեհացւոյ).

Թիւ 71. Գիրք արարեալ Պետրոս վարդապետի Աղամալեան Նախիջևանցոյ. Յակոբ պատրիարքի Նիւթք քարոզից.

Թիւ 72. Մեկնութիւն մարգարէութեան Յօնանու. Եփրեմ վարդապետ Սահեցի. 1218. Նոյն Ներսէսի Լամբրոնացւոյ.

Թիւ 73. Աղօթագիրք Եփրեմ Խորին Ասորւոյ.

(Մուժամբար գիւղի եկեղեցում 3, իսկ Սօհրուլ գիւղի եկեղեցում 2. Ս. Գրքեր)։

## *Հաֆթուանի Ս. Գէորգ եկեղեցու գրչագրերը.*

Թիւ 74. Ճաշոց. «.. Գրեցի .. ի տեղիս որ կոչի Խարայձորու Ս. Աճածին որ է սխում առորոց. ի թվ. Հ. ՊԾԹ. ի հայրապետութեան տր. Դաւթի ... (յիշեցէք) զԱսոմ քհնայն .. զհայրապետ սարկաւագն և զյովաննէս կրաւնաւորն. զՊետրոս եղբայրն մեր և զառաքել սարկաւագն զի ստ(կ)ու մի թղթին աւգնական եղև մեզ և աշխատեցաւ ի ծաղկել ս. գրոցս. և զՂլէմոն քարեպաշտ տանուտէրն»։ «Այը թուին գրեցաւ. Ես զալէքսանոս ի Սալամաստա ի գուղն որ կոչի յաւթրւան. որդի տր. զազարին ըստացայ զսուրբ գիրքս .. և եդի ի դուռն ս. Գէորգեա զօրավարին»։

Թիւ 75. Յայսմաւուրք. «.. Աւարտեցի զս. գիրքս ի յերկիրս Աղբակու ի գեաւղս որ կոչի Էրնեկանի, ընդ հովանեաւ ս. Աճածնի տաճարիս, և աթոռակալին ս. առաքելոյն Բարդուղիմէոսի տէր յովհաննէս ս. եպ-ի և տէր Ստեփաննոսի և զազար կրօնաւորի ամենազով և շնորհալի խորին փիլիսոփայի և ս. ծերոյն Մարտիրոս արեղայի. ի զանութեան եազուպ բէկի և տեղոյս իշխանին Սուլէման պարոնին, ի թվին Ջլը ..». Այս Յովհան Մանդակունու հը (78) ճառերը.

Թիւ 76. Աւետարան բոլորգիր.

Թիւ 77. Աւետարան բոլորգիր. «Գրեցաւ ս. Աւետարանս ձեռամբ .. զաքարի .. ի թվ. պղ. (և փոխելն յի. քի. ոյհգ.) և էր մեծ շրջանն մձ (տձ), ի յառաջնորդութե. տր. զաքարիայի և ի յաշխարհակալութե. Ջընխալի խանին .. և ի կաթողիկոսութե.. տն. Մեա-

բռայ.. ի յաճախանկ. անգուշս որ կոչի վանք Բաղենից, ընդ հովանեաւ ս. Ածած-նին..»:

Թիւ 78. Աւետարան բոլորգիր. «..Գրեցաւ.. ի ս. քղքս. Երուսաղէմ, ընդ հովանեաւ ս. Յակոբայ որդոյն զեբեթեայ.. որ է աթոռ ս. հայրապետին տն. եղբաւրն յակոբայ առաջին պատրիարգին.. եղև կատարումն սորա ձեռամբ.. Սիմէ(ոնի), ի յառաջնորդութե. ս. ուխտիս տէր Միրաքի արհի եպ-ին Իլովեցւոյն և համշիրակ եղբաւրն իւրոյ Խաչատուր վ-ին,.. ի թվ. ՉԼԴ». «ի.. ռճխ.. Փօրգի խան Իմէրէթու եւ էրզայ Սումպէթու Վրաստուն աւերեաց..»:

Թիւ 79. Աւետարան բոլորգիր. «..ենկ գոռող արքայն Սուլէյման խանն քինախնդիր եղեալ գնաց ի մր. քաղաքին Երէվանու. զեկեղեցիս և զվանս Կուսանաց կործանեցին, և բազումս.. գերեալ ընդ իւրեանս տանէին և սպանանէին և զայս ամենայնիւ.. ս. աւետարանս անկեալ էր ի ձեռս արեան արբու չանդի միոյ գերի և վս. այսորիկ.. խաչի ազատս.. առ(ի) (անունը Գրիգոր) թվ. ռմխթ-ին..»: Գլխաւոր յիշատակարան. «.. Կատարեցի զս. Աւետարանս ի մեծ թվականիս հայոց ռ. և ձգ. ի յերկիրս Հն(դ)կաց ի մայրաքաղաքս Լահուռ որ է աթոռ թագաւորացն Հնդկաց.. ի ժամանակս տն. Մովսէսի Կաթուղիկոսի ամ. Հայոց և յառաջնորդութե.. ջուղայու Խաչատուր.. վրդ-ի: Եւ թագաւորութե. պարսից Շահ Սէֆուն և Հնդկաց Թգ.ւրին. շահ Ջ-րհանին որ է սա յազգէն Նեմրոդայ և է սայ թ-երորդ... ի զաղանէն յանկթամուրէն, աւարտեցաւ ակ-րունեան բանս է յերկիրս Հնդկաց.. վս. տապոյ և տօթոյ լինէր, որ անշնչանայի..ժամս ը. կամ գ..: Ես Վարդանես ստացայ զս. աւետարանս ի հալալ և արդար վաստակոց.. ի.. ուղա. ի Կաթ-ե. տն. Փիլիպպոսի և թգ-ե. պարսից փոքր Շահապասի, որ այսմ ամի ելեալ ի թախթ ի զավուլին..եառ զս. աւետարանս ընծայ... ս. Բեդրոսին Երնջակու ձորոյ Խօշկաշինու վանացն..:»

Թիւ 80. Սաղմոս բոլորգիր.

Թիւ 81. Ժողովածու և Քարոզագիրք. 1. Յայտնութեան քարոզ. .. իմաստասիրական սահմանաւ շարադրեալ Վահրամ վր-ի յորում աւծեալ ձեռնադրեցաւ թգր. Հայոց մեծն Լէոնի: Ապա 14 քարոզ, որոնցից 12-ը կրում է վերնագիրս. «Նուամեծին եսայի վ-ին յղ. ձեռնադրութե. Սկիզբն ամ. բարեաց է ..»: 14գ-ի վերնագիրն է. Յոհաննէս վ-ի պլուզի ասացեալ ի ծնունդն քի:»

Թիւ 82. Ժողովածու. բոլորգիր. Լուծմունք բանից Գրիգորի վ-ի Նարեկացոյ. Ք—զզ. «..զրումս.. յիշեցէք.. և զմօսես սրբասնեալ կրօնաւորն. որ.. խնդրեաց լուծումն բանիցս Գրիգորի.. պկզ..» ապա 2 քարոզ. Կանոնք ս. Ներսեսի. Մեկնութիւն Խորանաց. որա տակ «զվրդ-ն Սարգիս.. յիշեցէք, որ փափաքանաւք գրել ետ զմեկնութի. խորանացս...»

Թիւ 83. Ժողովածու. 1. Յովհաննու ոսկեբերանի վասն անցանելոյ աշխարհի և վս. մահու և յարութեան: 2. Վկայութիւն ս. Պատայլէոնի. 3. Թեկղեայ կուսի. 4. Փոխումն ս. Աստուածածնին. «Յոհաննէս Թեսաղոնիկէ(ի) եպ-ն գնաց յԵրուսաղէմ..»: 5. Ս. Սեղբեստրոս. 6. վկ. պետրոսի և պօղոսի. 7. Ս. Յակոբոս եղբաւր տն. 8. Մեծի Կոստանդիանոսի. 9. յղ. անկման Կ. պաւլիս քղքի. 10. Աթանասի ասացեալ (ճառ): 11. ի ննջումն Յովհաննու. 12. տօն ս. յարութե. 13. հրեշտակապետաց. 14. երից մանգանց. 15 ծննդեան Յոհաննու Մկրտչին. 16. գլխատման Յոհաննու. 17. ս. Գրիգորի Աչտարանի 18. ս. Սոսփիաննոսի. 19. Վերայգործումն տն. Յոհաննու պատուական մարմնոյ ի Կ. պոլիս. 20. ս-ի. աթանասի Աղէկսանդրացւոյ. 21. Վկ. ս. Գէորգայ. 22. Դիոնեսիոսի ասացեալ վս. մահուան. 23. Յովհաննու ոսկեբերանի ասացեալ ի տաւն ս. խաչին. 24. Տնընդառաջ. Յովհաննու ոսկեբերանի. 25. Աճայյասուե. տն. 26. Յովհաննու ոսկեբերանի ասացեալ ի վերացումն. 27. Երանելոյն Եփրեմի ասացեալ ի Թափօր լեառն. 28. ս-ի. Նշանացն որ եղեն ի գուշակ առաջիկա աւուրցն որ կատարեցան, ասացեալ ս. վար-

գայլեալն Ցովհաննիսի Կողռանն ի Թմկա-նութեանն հայոց ՆՀ· 29· Երանելոյն Եփ-րեմի ասացեալ վս· ապաշխարութ· 30· կվ·ի-ս· Մարիանէ կուսին· 31· Վարք Աղեքսիա-նոսի· 32· Ցովհաննու ոսկեբերանի ասա-ցեալ յդ· անդամալուծին և քի· 33· Ի մեծի աւր Պէնտէկոստէի ասացեալ· ս· Կիւրղի Երզմա· հայրապետին· 34· Երանելոյն Զա-քարիաի Ասացեալ յաւր մեծի եկաւորութ· ան· յեմ· «Աւրախ լեր յոյժ դուստր··»։ Սկզբից և վերջից պակաս։ «Ցիշեսջիք զՎասիլ էրէցս (գրիչ)··»· Ստացողն Իշխան Սեփան-նոս։

## Գրչագիրք վանուցն Ս· Թադէոս Առաքելոյն·

Թիւ 84· Աւետարան· բոլորգիր· Թվին ՊԽԱ· «յերկիրս Բաղբերունոյ ի յանապատս որ Մանուկ ս· Նշան կոչի»· կազմած·

Թիւ 85· աւետարան· բոլորգիր· Թուին ՌՃԻ· ի Թագաւորութեան պարսից շահ Սուլէյմանին· և ի հայրապետութեան տանս Ազուանից տեառն Պետրոսի սրբազան կա-Թուղիկոսի և եպիսկոպոսութեան երկրիս Պարտաւայ Ցոհան Ցուռիկեցի· կազմած։

Թիւ 86· Աւետարան· բոլորգիր· ՌՃԼԳ· կազմած·

Թիւ 87 Աւետարան· բոլորգիր· բուա-կան· ՊԿ· գրիչ· Թովմա Մեծոփեցի· «ի յերկիրն Բաղբերունեաց ընդ հովանեաւ Դէորգ զաւ-րավարիս» կազմած·

Թիւ 88· Աւետարան բոլորգիր· ՌՃԼԵ· «ի գեօղս Աւընտանցս ընդ հովանեաւ ս· Ա-ռաքելոցն Պօղոսի և Պետրոսի և Դէորգ զօ-րավարին»։

Թիւ 89· Աւետարան· բոլորգիր· գրեալ յերկաթ·

Թիւ 90· Աւետարան· բոլորգիր· ՌԽ· ի Թեղւոյ վանք և ի Բաղէշ քաղաք Գամուց վանք· կազմած՝ 13 քարերով զարդարուած։

Թիւ 91· բոլորգիր· Աւետարան· կազմ-ւած·

Թիւ 92· բոլորգիր· Աւետարան· կազմ-ւած։

Թիւ 93· բոլորգիր· Աւետարան· կազմ-ւած· գրեալ ՆՃԿ·

Թիւ 94· բոլորգիր· Աւետարան· «Թուին ՋԺԵ· ի յերկիրն Մոգաց· ի գեաւղս որ կոչի Բռնաշէն։»

Թիւ 95· բոլորգիր· Աւետարան·

Թիւ 96· բոլորգիր· Աւետարան· ՁՀԳ· «ի գաւառիս Ամասար (Ամարաս?)»։

Թիւ 97· բոլորգիր· Աւետարան· «չծը· ի հայրապետութեան տեառն Զաքարիայի· ի կղզին որ կոչի Լիմ»։

Թիւ 98· բոլորգիր· Աւետարան· «չկը· յանապատս Ցարէկայ վանս՝ յառաջնորդու-թեան Սիմէօն աբեղայի·»

Թիւ 99· բոլորգիր· Աւետարան· «չա· յանապատիս Խոտի· ունը Թուին»·

Թիւ 100· Ցաճախապատում· Նոտր-գիր· ՌՃԽԳ-ին· գրիչ· Մինաս քահանայ· ստացող Նիկոլոս վարդապետ (կաթուղիկոս)։

Թիւ 101· Ընդհանրական· բոլորգիր· ՌԺԸ· ի քաղաքն Սիս·

Թիւ 102· Արիստոտէլի բնագանցու-Թիւն· Նոտրգիր· վերջից պակաս·

Թիւ 103· Ներածութիւն Պորփիւրի· բոլորգիր·

Թիւ 104· Բարսղի Կեսարացւոյ վեց-օրէից և այլն՝ Օրհնութեան Թղթեր· Նո-տրագիր·

Թիւ 105· Աստուածաբանութիւն· բո-լորգիր·

Թիւ 106· Մարգարէութիւն Եսայեայ և Թուղթք առաքելոյն Պաւղոսի· բոլորգիր·

Թիւ 107· Լօճիկա·

Թիւ 108· Մեկնութիւն կաթողիկեայ թղթոց· Սարգիս Շնորհալի· բոլորգիր· ՊՁԳ.

Թիւ 109· Մեկնութիւն Աւետարանին Ղուկասու· բոլորգիր·

Թիւ 110· Մեծ պատարագ Ինովկենտիոս IV թարգմանութիւն Թադէոս եպիսկոպոսի· նոտրագիր· ՌՅԾԴ Փրկչական թուին ։

Թիւ 111· Մեկնութիւն Սաղմոսաց Վարդանայ և Տաթևացւոյ· Նոտրգիր· ՊԾԴ.

Թիւ 112· Մեկնութիւն թղթոցն Պաւղոսի Յովհաննու Ոսկեբերանի· ի ս. Էջմիածին· ՌՃԽ· Նոտրգիր·

Թիւ 113· Մեկնութիւն թղթոցն Պօղոսի·

Թիւ 114· Նախերգանք Նիկողայոսի վարդապետի· Թարգմանութիւն լատիներէնից· գրեալ ՌՃԻ թուին· Նոտրգիր·

Թիւ 115· Մեկնութիւն Արիստոտելի՝ Թարգմանութիւն Դաւթի· բոլորգիր·

Թիւ 116· Քարոզգիրք· Թարգմանութիւն Ասորերէնից· Նոտրգիր·

Թիւ 117· Մեկնութիւն Երգ երգոցի· Գրիգորի Տաթևացւոյ· Նոտրգիր· 1743 ·

Թիւ 118· Քարոզգիրք Գրիգորի Ծործորեցւոյ· ՌՈՀԶ փրկչական թուին.

Թիւ 119· Լուծմունք Պորփիւրի ստորոգութեանց· Պերի արմենիայի· արարեալ Վահրամ վարդապետի· Սահմանք ի Դաւթէ· Լուծմունք Քերականութեան Մովսիսի Քերթողի, Գրիգորի Աստուածաբանի, Դիոնեսիոսի ի Դաւթէ և Յակոբայ։

Թիւ 120· Ժողովածու Աստուածաբանական, Յովհաննէս վարդապետի· Նոտրգիր·

Թիւ 121· Մեկնութիւն Աւետարանի Յովհաննու· «ըստ հրամանի տէր Զաքարիայի, և սպասաւորի առաքելոյն Թադէոսի· թվին ռճիզ·» Նոտրգիր·

Թիւ 122· Քաղուածք մեկնութեանց· համառօտ· բոլորգիր·

Թիւ 123· Ժողովածու· Քարոզգիրք· կտակ հրէական թալմուտից, յաղագս ծննդեան, փրկանաց, թլպատութեան և այլն· Նոտրգիր·

Թիւ 124· Կրօնական պատմութիւնք և խրատք· բոլորգիր·

Թիւ 125· Մեկնութիւն Ղուկասու· «ռճլգ· ի քաղաքն Գուլթանիա· ձեռամբ Յարութիւն քահանայի»· Սիրաք՝ «թվին ռճխզ· ձեռամբ Երևանցի Աւետիքին»·

Թիւ 126· Քարոզգիրք· Նոտրգիր·

Թիւ 127· Գիրք Առաքինութեանց բոլորգիր· 4 օր·

Թիւ 128· Գիրք Պարապմանց Կիւրղի· Նոտրգիր·

Թիւ 129· Նարեկ· (Աղօթագիրք) բոլորգիր·

Թիւ 130· Թովմա Գեմքացի· բոլորգիր· ՋՂԴ.

Թիւ 131· Գանձարան Նախաշ եպիսկոպոսի՝ գրեալ 918-ին· բոլորգիր· վերջում ներբողներ·

Թիւ 132· Գանձարան· բլրգիր· ՌՃՂԲ.

Թիւ 133· Մաշտոց· բոլորգիր· ՊՀԵ. ի գաւառս Խութ· ի գիւղաքաղաքս Քիւուս·

Թիւ 134· Մաշտոց· բոլորգիր· թուին ՌՃԻԹ. Մշեցի Յովհաննէս երէցի·

Թիւ 135· Մաշտոց· բոլորգիր· թուին ՌՃԼԱ· «ի յերկիրն Մահմուտանք· ի գիւղս Յոլմալուայ·» 2 օրինակ·

Թիւ 136. *Մաշտոց բոլորգիր. ՌՂԹ. ի քաղաքս Հիզան.

Թիւ 137. Բուն մաշտոց բոլորգիր. ՊԿԵ. ի յերկիրս Ռշտունեաց. յանապատս ս. Վարդան.

Թիւ 138. Մաշտոց գաւազան տալոյ. Տաթեւացու (Գ.). ՌՃՀԸ.

Թիւ 139. Մաշտոց գաւազան տալոյ. Ղազարու եպիսկոպոսի Հայոց. բոլորգիր. 2 օրինակ. ՌՄ:

Թիւ 140. Խորհրդատետր. բոլորգիր. ՌՃԾ. 3 օրինակ. (Բ-ը ՌՃԻԲ. Ղալասար գիւղում.)

Թիւ 141. Քարոզգիրք Տաթեւացւոյ. բոլորգիր.

*Սալմաստի Սաւրա գիւղի գրչագրերը.*

Թիւ 142. Աւետարան. բոլորգիր. ՋԻԲ. ձեռամբ Դաւիթ երիցու. «Եւ ի մերում նահանգիս պարոնութեան պարոն Ջալմին, եղև գրաւ սորին յերկիրս Վայոձորոյ ի գիւղս որ կոչի Արկզուն ընդ հովանեաւ ս. Գէորգի տաճարիս..»:

*Գիւլիս ս. Յովհաննէս եկեղեցու գրչագրերը.*

Թիւ 143. Մաշտոց բոլորգիր. Թուին ՌՃԿԵ. ձեռամբ Ստեփաննոս Կղերիկոսի.

Թիւ 144. Գանձարան բոլորգիր.

Թիւ 145. Մաշտոց. բոլորգիր. ՌՃԻ. ի ս. ուխտն Եւստաթէի. ձեռամբ Յովհան գրչի.

Թիւ 146. Ժամագիրք ատենի. բոլորգիր. ՌՃԻԳ. ձեռամբ Ստեփաննոս երիցու.

Թիւ 147. Մայր Մաշտոց. բոլորգիր. ՋԽ. յԱխթամար՝ ձեռամբ Կարապետ քահանայի.

Թիւ 148. Աւետարան. բոլորգիր. ՌԺԵ. Ահարոն գրիչ. «Արդ գրեցաւ ս. Աւետարանս ի գիւղն Փակաջուկ. ընդ հովանեաւ ս. Գէորգեա զաւրավարին.»

Թիւ 149. Աւետարան. բոլորգիր. ՌԻԴ. «Ի Փոսանհանկ գաւառս ի գեաւղս Վարընթոյ որ կոչի Շուշոյ ընդ հովանեաւ ս. Ստեփաննոսին .. և ընդ հովանեաւ ս. Աձաձին ձեռամբ ովանաս երէցս ....իշխանութեան Շահասհմանին և ձեռնակալութ. թուրքս քօխվին և զազարին ..»

Թիւ 150. Աւետարան բոլորգիր. ՋԵ. «Ի գեաւղս Ցականց, յերկիրս Բաջբերունի, ընդ հովանեաւ ս. Թադէոսի առաքելոյս, ձեռամբ Յովսէփ երիցու ..»:

Թիւ 151. Աւետարան բոլորգիր. Թուին ՊԽԳ. ձեռամբ Թումա քահանայի. «Արդ գրեցաւ ի տեղիս որ կոչի Շիբեան. յերկիրս Շըվանայ...»:

Թիւ 152. Աւետարան. բոլորգիր. Թուին ՌԿԸ՝ ձեռամբ Խաչատուր քահանայի «ի յերկիրս Մաջանջուխու. ի գիւղս Տանձաւէտ .. ընդ հովանեաւ ս. Ստեփաննոսի ի ս. ուխտս Սատթէի առաքելոյն»:

*Փայաջուկ գիւղի (Սալմաստ) Մովսէս քահանայի Աւետարանը.*

Թիւ 153. Մագաղաթ. նկարազարդ. ՉՂԹ. տացել է Անդրէաս եպիսկոպոս. «ի կթղսե. տր. Մխիթարայ և յորքայուե. Լևոնի.» գրիչ՝ Սարգիս քահանայ:

---

ՆԵՐՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
ԵՐԵՔ ԿՈՆԴԱԿՆԵՐԻ ՊԱՏՃԷՆԸ

Ա. պատճէնով, հրամայում է Շուշու Կոնսիստորիային պահանջել իւր առենադպիր Յակոբ Շահնազարեանից Սինօդի Առենադպիր «Իվան Լազրեվիչի» նամակները:

Բ. պատճէնով (համար 391) Կոնսիստորիային հրամայում է քննել Դաւիթ Սափարեանցի արժանաւորութիւնները. և յայտնել թէ արժանի՞ է Կոնսիստորիայի ատենադպրութեան թէ ոչ:

Գ. պատճէնը. «Ներսէս եպիսկոպոսապետ կաթուղիկոս և պատրիարք ամենայն հայոց Ներսէս ծառայ քի. անհասանելի կամօքն այ. եպիսկոպոսապետ և կաթուղիկոս ամ. հայոց. պատրիարք արարատեան գերագոյն աթոռոյ ս. կաթուղիկէ էջմիածնի սիւնհոդի ս. էջմիածնի Գրիգորեան Հայոց բազմապատիկ մխիթարութեամբ իմ և ամենայն հայոց ծանուցանեմ, զի յետ չորեք ամսեայ իմում մահագուշակ հիւանդութեանց, շնորհօք այ. արժանի գտա ի 28 անցեալ ամսեան նյմբերի ներկայանալ իւրոյ կայսերական մեծութ. յաւուր կիւրակէի ի լրման երկոտասան ժամու կէս օրէի և վայելել զմեծ շնորհս ածանմանմարդասիրութեանց նորին, զորոց նշանակեալ համառօտիւ առիթ համազգական մխիթարութեց. և արթունաւորէ հարուստ և ուրախութեց. որոց, ամենեցուն նոցա համարիմ ի ժամանելն իմ ընդ նորոյն գերագունցուե. գերապանծ հոգադասի ամենասր. առաքելական եկեղեցւոյ հայոց և իմ Խաչատուր Յովակիմեան Լազարեանց ի պալատն կայսերական, անդէն ի սրահի ներընդայարկի բարձրաբերձ պալատն. ուստի սկսանի աստիճան սանդղոցն ի քառայարկ վերնատունն. գտաք նախապատրաստեալ անդէն բազկաթոռ աթոռ. մամուռպատ պնդեալ ի մէջ երկուց ճախարակաց բռնեղաց կամ լծակաց և առ նովաւ չորք անձինք կանգուն, որք հրաւիրեցին զմեզ նստիլ ի վերայ այնմ աթոռոյ և ես ոչ կամեցեալ նստիլ և արք երկու բարձեալ ի վերայ ձեռաց իւրեանց իբրև 140 աստիճանօք հանին զմեզ ի չորրորդ վերնահարկն կայսերական, ուր ընդ առաջ եկեալ աստիճանաւոր ումն հրաւիրեաց զմեզ ի սենեակն առաջին ուրանոր յամեալ իբրև վեց կամ եօթն բոպէ եւ ի կայսերական սենեկաց պօլկովնիկ ումն և հրաւիրեալ զմեզ յերրորդ սենեակն, ուր բացեալ լինի մի դուռն կայսերական առանձնարանի քաբինէթի ասաց թէ կայսրն հրամայեալ-է յայսմ սենեկի նստիլ մինչև ցդալն իւր յեկեղեցւոյ, ուր նստեալ առ փոքր մի, մի ոմն ի մեծ պաշտօնատոց. բացեալ զդուռն առանձնական սենեկի քաբինեթի կայսերական, ասաց թէ կայսրն խնդրէ զձեզ. յորժամ յառաջեալ իմ սեմի մերձ ի դուռն կանգնեալ ինքն կայսրն և մօտեալ իմ ի դուռն երկրպագեալ նմա՝ ապա առաջ կոչեալ զանձն նորա բարձրագոյն բուսերէն յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբ. յառաջ մատուցեալ կալայ զձեռանէ նր. և համբուրեցաք ես զձեռն նորա և նա զիմս և խոկոյն հրամայեաց նստիլ ի վերայ աթոռոյ և ես ոչ յօժարեալ նստել, ինքն կալեալ զբազուկ իմ նստոյց ի վերայ աթոռոյն և ինքն կացեալ կանգուն իբրև բոպէ մի կամ երկու նստաւ ապա ընդ ձախմէ իմմէ և սկսաւ ապա հեզաշունչ հարցաքննութեամբ լսել նախ վս. իմում տկարութեց. վս. որպիսութ. անձնական իմոց զօրութեց. ի վերայ այնոցիկ զօրեղ ցաւակրութեց. վս. որպիսութեց. աթոռոյ էջմիածնի և յայնց կողմանց վս. որպիսութեց. ընդհանուր ազգի հայոց վս. հռոմէական հայոց և առաւելապս. վս. հոգունակենցաղ յաղագս ամբառնալոյ զհոգևորականսն հայոց ի վայելչական դրութի գիտնական ազգաշահ հոգևորականութեց, վս. ջանալոյ պաշտօնութ. ազգական միաբանութ. և վս. կարճելոյ զվնասն հռոմէական քարոզչաց ազգի և եկեղեցւոյ մերոյ և վս. յուսադրութեցն իւրոց յգ. հարկաւորացն վերաբերելոցն իւրում ձեռնհասութեանց, և ը. որում բան բազմաց չանմարանեալ գտանիւր ի մտի իմում թէ, չէ սիրելի իւրում կայսերական մեծութ. երկար բանախօսել. ներկայացելոյն ինքեան թէպէտ և նկատէի ընդ իս խօսակցութիւնն նորա անհամաձայն իմոյ լուոյ և ընդ հակառակն յօժարակամ առաւել սել և լսել, այլ այնու ամենայնիւ յդ. ոչ լուեալ զալոյ իմ թէ յընկալնուլն կայսեր զի կարգն օրէնք են եկաւորին սպասել մինչ ինքն կայսրն յարիցէ եթէ նստեալ, իսկ եթէ կանգուն իցէ ընկալնուլն կայսերն ինքն ունիցի աւուրս տալ իւրում առաքելոց. և մեկնիլ և առաւել սպաւորեալ ունելով զբան բազմաց, այլ. զի

մի ձանձրացուցից առաւել յարևայ յաթո-ռոյ իմմէ, յորժամ և ինքն կայսրն յա-րուցեալ երկարեաց ի վերայ ռահից զայլս յուսադրական և ի հաստատութիւն նորա յայնմ, յառաջ մատուցեալ կալայ բազկաց զձեռանէ նորա զի համբուրեցից. այլ ոչ կամեցաւ տալ յորժամ ես զուարթ ձայնար-կութեամբ ասացի ռուսերէն как можно [illegible]. զի՞նչ է ինձ օծելոյն այ. ո՞չ համբուրել զձեռն նորա և խոնարհեցուցեալ զգլուխն իմ, եւ յառաջնորդեալ անուն յորժամ և նստուցեալ ի վր. այնմ աթոռոյ որով հա-նին զմեզ և իջուցին ի վայր և ինքն կայ-ս(ե)րն գնացեալ ուղղակի ի մեծ սենեակն զալայն, ուր համագումարեալ զտանէին, բազմութք. մինիստրաց, և այլ ստոխճա-նաւորաց անցեալ ի մէջն ամենեցունց նոցա գնաց առ մինիստրին ներքայքին գործոց, մի առ մի, որ զտանին կացեալ ի վերջոյ ա-մենեցուն ̈ը իւրում խոհական արժանա-ղատութեց, և յոյժ զուարթութբ. սրտի իւրոյ շնորհակալ լինի նմա յղ. զմեզ ընտրելոյ և հաստատելոյ զկետ բաղում բանից յաղագս բաւականութեանց իւրոց զմինչ յաւելու-ստեղ թէ ի բաղում ժամանակաց յետէ այսպէս ախորժ և վայելչաւ, որ նշանակէ ընկալնում, նորոգ եկաւորաց չեմ ունե-ցեալ ես ազի. ունեցեայ այժմ ընկալմամբ պատրիարգն և վերադարձեալ ի մինիստրէն ներքայքին գործոց մի առ մի բացմաց մի-նիստրաց յայտնէ զայնպիսի իւր բերկրա-ղատուկ.. ընթացեալ առ կայսրուհին առ. ես պատմէ զայնպիսի զուարթուի. մնայ և սրտի իւրոյ և գերագոյն քան զամենայն զգալի ինքեան և ինձ այն է զի ի վերայ ամենայն բանից իւրոց յաղագս այնպիսի իւրոց զուարթամտութեց. յաւելու ասել ասա՞ զի ի զուր կորուսեալ եմք զամս 20 վնասուք մերում կառավարութեց. այնոցիկ կողմանց և աթոռոյ էջմիածնի, որովք այ-սակեր այս այս խնդրական ափոփանք զանգի կալան յիմում սրտի, ոչ յաղագս այնմ զի կայսերն յայտնեցաւ ինքնին զոլական իմում ապարթիւն անձին, այն զի ամբաստանեն վասն իմում վնասապարտութեց. զտանի այժմ ամօթապարտ.. ի 4 զեկ-ի. յուրբա-թու ներկայացանք կայսրուհւոյն. ի 21.»

և այլս մի ևս իշխաններին և պատրաստում է կայսեր ը դ. անգամ ներկայանալ։

## ՂԵՒՈՆԴ ՎԱՐԴԱՊԵՏ ՓԻՐՂԱԼԷՄԵԱՆՑԻ ԱՆՏԻՊ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

1. Փրկչական 887—1596 ունի ժողո-վածու յիշատակարանաց. «Սոյն յիշատա-կարանք 24 կազմեալ տետրակք են հանդերձ ծանօթութեամբ և տպագրութեամբ ի լոյս գալու պատեհն»։

2. Ժողովածու մեզ ծանօթ և անծանօթ տարեգրութեանց՝ ծանօթութիւններով. 19 տետրակ է 458 երեսից. փրկչական 552—1592-ի պատմութիւնք։

3. 10-ից աւելի մանուոր տարեգրու-թիւններ. որոնք են՝

Ա. Սիմեօն վարդապետ Բաղիշեցի. գրել է 1392—1401-ի պատմութիւնք. համառօտ պատմում է Լանկթամուրի զինուոր գոր-ծերը։

Բ. Գրիգոր Ծերենց րաբուն. (Ցիշատակա-րանք Աղեաց. հրատարակութիւն պարոն Գրիգոր Խալաթեանց. ի ս. Էջմիածին. 1897.)

Գ. Մինասենց Թովմա վարդապետ. գրել է 1419—1452-ի պատմութիւնք, «սկզ-բըն պատմուե. իւրոյ դնելով զպատուհասն մարախին, պատմէ զգալուստն Շահռու-հին. զմահն Կարայուսուֆին և զայլ և այլ կռիւս Սքանդարայ ընդ դրացի ամիրայս և պարոնս. զառումն Վանայ և զտիրելն ընդգէն Մակուայ (որ միայն նա կայր առէ ի ձեռն քրիստոնէից) և զհրաքուխ Միմլուա (Նէմրութ) լերին յայտնէ, որ կայ անծանօթ առ պատմագիրս հայոց և այլն․ »Էր սա ի միաբանութենէն Աղթամարայ և ծաղկե-ցաւ յաւուրս Կաթուղիկոսաց տեղւոյն Դաւիթի Գ և Զաքարիայի մեծի, որ նստաւ յամի տն. 1461. նաև հրամանաւ Շհանշահի. ի ս. աթոռն Էջմիածնի...», Սա ունի նաև գանձեր և երգեր։

Դ. Յովհաննէս քահանայ Արճիշեցի. ունի 1531—1547 տարեգրութիւն. «պատմէ

գապատամբութենէ Ուլմայ սուլթանին, որ էր կարգեալ ի Շահ Թահմազայ իշխան ի Թաւրէզ, սա ընդվզեալ ի շահէն խոյս տայ ի Կ. Պօլիս առ Սուլթան Սուլէյման, մեծամեծ պարգևօք պատուի ի նմանէ և դոդոելով զԹագաւորն մեծաւ պատրաստութեամբ հանեալ տանէ մինչ ի Պարսկաստան ի վերայ Շահթամազայ և լինի պատճառ բիւրաւոր խողխողելոյ և աւերանաց բազում քաղաքաց և գիւղօրէից»։

Ե. Դաւիթ վարդապետ Բաղիշեցի. (տես Արարատ, 1898. Մարտ—Ապրիլ)։

Զ. Յովհաննէս կրօնաւոր սարկաւագ. Ջհանշահի 1440—1451-ի դէպքերն է պատմում. Նրա Վասպուրականում արած կատորածների և տարբեր ժամանակներում Բաղդատ, Երզնկան, Բաղէշ և Խլաթ քաղաքները առնելու մասին...։

Է. Բարսեղ վարդապետ Վարագեցի. Պատմում է 1581—1591, Պարսից և Օսմանցւոց պատերազմների մասին, «զառումն Թաւրիզոյ յՕսման փաշայէն, յաւուրս Խուդաբանդայ շահին և գործեալ պաշարելն նոյն քաղաքին ի պալատից զինի մահուն Օսմանայ և անտանելի տառապանք և տուայտանք բնակչաց քաղաքին Երևանայ և սահմանակից գիւղօրէից նորին, յերեսաց անհեղ պատերազմացս այսոցիկ...»։

Ը. Տուշանցի Բարդուղիմէոս վարդապետ. Գրել է 1679—1722-ի պատմութիւնը. «ի վանահայրութե. Կարապետ վարդապետի, որ էր աշակերտ Ապարանցի Կարոյ մականուանեալ վրդ-ին. և պատմէ զշինարարութենէ նորին, նոյնպէս և յաջորդի նորին Ստեփաննոս վ-ի Մոկացւոյ, որ նստաւ ի 1697 յաթոռն Վարագայ, նոյնպէս և զիւր պատմէ զգործ որ նստաւ զկնի Ստեփաննոսի...»։

Թ. Վարդան վարդապետ Բաղիշեցի։ Սա իւր պատմութիւնը սկսում է «ի դուրս գալոյ հագարացւոյն Մահմետի (619) և հասուցանէ զպատմութ. թելն իւր մինչև 1657. որ տիրեալ ի նմին իսկ ամի խռովարար ազգն Յունաց Ս. Յակոբայ աթոռոյն Հայոց, որ յԵրուսաղէմ և աւարտէ աստ զպատմութիւն իւր։ Էր սա ժամանակակից պատմագիր Դաւիթ վ-ի Բաղիշեցւոյ, աշակերտ մեծին Խաչատրոյ և վարժապետ Գրիգոր շղթայակրի և Յովնանու. Կոլոտի հատընտիր պատրիարքացն Հայոց, վախճան սորին լեալ է յամի տեառն 1704. ըստ իւրում տապանագրին որ կայ ի Բաղէշ ի վանս Ամլորդւոյ ի ծոց եկեղեցւոյ առ աջի խորանին։»

Ժ. Խաչմալեան Տէր Յովհաննէս քահանայ. սկսում է շատ հին ժամանակներից և մասնաւորում է իւր պատմութիւնը Վանի և նրա ըդեշխների վերաբերմամբ և հասցնում է մինչև 1800 թիւ. «մինչև ցվախճան Ղուկաս կաթուղիկոսին Էջմիածնի և Պետրոս պատրիարգին Երուսաղեմի. պատմութիւն սորա ճոխ գանձ է Վանայ ստորագրութիւնն գրողին. գրեալ է զստորագրութիւն իւր աշխարհիկ ոճով՝ գաւառական բարբառուն Վանայ... վախճան նորին լեալ է 1840 ամի և կայ թաղեալ ի Վան յԱրարք եկեղեցին»։

ԺԱ. Պատմիչ Յովհաննէս արքեպիսկոպոս Սեբաստացի. «Պատմէ զգործս յաջորդաց Սեբաստիոյ սկսեալ ի Սիմոն եպիսկոպոսէ (1016), մինչև յինքն» († 1830)։

ԺԲ. Վանեցի Գրիգոր դպիր. «Գրէ սա ի լուսանցս յինքենէ ընդօրինակեալ Յայսմաւուրի գանցս և զդիպուածս բազում սկսեալ 1308—1682. ի տարեգրութեան սորա գտանին բազում բանք վասն պատմութեան Վանայ...»։

ԺԳ. Թլեցի Նազար վարդապետ պատմիչ վարուց Մոկացի Յովհաննէս վարդապետին (1710—1770)։

ԺԴ. Մուրադեան սարկաւագ Վանեցի. սկսում է իւր պատմութիւնը Վարագայ Խաչի գիւտի պատմութիւնից (Թոդիկ Ճգնաւորից.) և հասցնում է մինչև 1770. յաւուրս ըդեշխութեան Վանայ տամատ Հիւսէին փաշայի. Վանայ բարբառով։

ԺԵ. Թօփուզեան Յակոբ եպիսկոպոս սարեգիր Լմայ.

Սկսում է իւր պատմութիւնը Մոկացի Բիզլի կոչուած Ներսէս վարդապետից՝ որ Տաթևից գալիս է Լիմ և խոստակրօն միաբանութեան հիմք դնում (1621) և հասցնում է Գաբրիէլ եպիսկոպոս Շիրոյեանց (1830) որին և յաջորդում է ինքը 1847-ին և մեռնում է 1877-ին։

ԺԶ. Պէյլար տարեգիր Վանեցի. 1635—1732. Վանի մասին։

ԺԷ. Արճիշեցի Բարսեղ քահանայ. պատմում է Սօֆի Շահ-Իսմայէլի մասին 1501-ից —1504. մեծ կարևորութիւն ունի Տուրուբերանի և Վասպուրականի պատմութեան համար։

ԺԸ. Մովսէս քահանայ Արծկեցի. Գրիգոր Խլաթեցու նման և նրա տաղաչափութեամբ պատմում է Ջահնշահի և Ուզուն Հասանի կռիւները, որոնց հանդէսը Հայաստանն էր. և վերջինիս զօրանալով իւր ախոյեանին սպանելով նրա գահը խլելը. 1467—1473.

ԺԹ. Անանուն պատմագիր Վանեցի. Վանի մեծ սովից սկսելով (1606) հասցնում է 1726.

Ի. Նոյնպէս անանուն Վանեցի. սկսելով Տաճկաց Վանը գրաւելուց (1550-ին Սուլթան Սուլէյմանի օրով) և Իսկանդար փաշան կառավարիչ կարգելուց՝ հասցնում է մինչև Ահմէտ փաշա. 1796.

Ապա Ցուցակ Թալաղայից՝ կալուածագրոց և հրովարտակաց։



# ՆԱԽԱՊԱՏՄԱԿԱՆ ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Կովկասում զուտ գիտնական նպատակով պեղումներ սկսուել են 60ական թուականներից։ Ռուս գիտնականները մինչև օրս գտել են Մարիէնֆէլդի (1867), Սամթաւրօյի (նոյն թուականներին) [1] և Ռեդկինի (1876) necropole-ները։ Ֆրանսիացի հնագէտ Ժ. դէ Մորգան բացել է Շէյթանդաղի, Ախթալայի, Ուչ-Քիլիսայի, Մուսիերի Գուրգանները. [2] և H. de Morgan Սանահինի գամբարանը. Էմիլ Րէօսլէր Գերմանացին Առաջաձորի և Խոջալուի գերեզմանները (1888—1895) [3]. դօքտ. Վալդեմար Բելք Գետաբէկի, Քարա-Մուրադի և Կէօզչայի կուրգանները. [4]

Խաչին վարդապետի արած պեղումները եղել են Խաչէնի գետի ստորին հովտում, Առաջաձորի (Ցոլչանլուի սահմաններում, մօտաւորապէս 16⁰ 9'—16⁰ 18 հիւսիսային երկայնութեան և 39⁰ 51'-ից —40⁰ 9' հիւսիսային լայնութեան մէջ. (ըստ քարտէզի կովկասեան ստատիստիկական կոմիտէի). արդի աշխարհագրական բաժանմամբ այս գիւղամասը ընկնում է Ջվանշիր գաւառի մէջ. հների Խաչէնը յայտնի է պատմութեան մէջ իր անուցած քաջերով։ *

Բաւական է պեղումների պատմութեան վրայ մի հայեացք ձգել, տեսնելու համար թէ ամենից շատ կուրգաններ գտնուել են այդ գիւղամասում. այս երեւոյթը պէտք է բացատրել կամ նրանով որ բնակչութիւնը շատ խիտ է եղել այս գաւառում և կամ նրանով՝ որ եթէ անտարբեր երկիր՝ նա եղել է իշխանական գերեզմաննոց.

## ՊԵՂՈՒՄՆ Ա. ՑՆՋՐՀՈՂ ԲԼՐԻ ԿՈՒՐԳԱՆԸ

Ցնջրհող բլուրը գտնուում է Ջվանշիր գաւառում, Խաչէնի գետի ստորին

---

1. Այս 2 պեղումները ըստ Ժ. դէ Մորգանի [illegible] են եւ դեռ չեն հրատարակուած:

2. J. de Morgan մինչեւ 1887 [illegible] հանքարանի կառավարիչն էր. 1888-ին Ֆրանսիայի լուսաւորութեան նախարարի յանձնարարութեամբ Կովկասում կատարեց իր գիտական հետազօտութիւնները ու պեղումները, որոնց արդիւնքը հրատարակեց 1889-ին երկհատոր մեծադիր գըրքերով. վերնագրութեամբ. Mission scientifique au Caucase, études archéologiques et historiques, T. I. les premiers âges des métaux dans l' Arménie russe. 1889. Paris. t. II. նոյն. Recherches sur les origines des peuples du Caucase: Այս նշանաւոր աշխատութիւնը մեծ կարեւորութիւն ունի Կովկասում, մանաւանդ Հայաստանում մետաղագործութեան զարգացման պատմութիւնը հետազօտելու համար:

3. Է. Րէօսլէր՝ Շուշու րէալական դպրոցի գերմաներէնի եւ երաժշտութեան ուսուցիչ էր. իր արած պեղումների շնորհիւ անդամ ընտրուեց Ս. Պետերբուրգի կայսերական հնագիտական ընկերութեան. նրա հետազօտութիւնների նկարագիրը լոյս տեսաւ Վիրխովի՝ Բաստիանի եւ Ֆօսի խմբագրութեամբ հրատարակուող Zeitschrift für Ethnologie—ում:

4. Երիտասարդ գիտնականը աշխարհահռչակ Վիրխովի յանձնարարութեամբ կատարեց իր գիտական ճանապարհորդութիւնը 1888—1890 տարիներից կերպով. այժմ նա նոյն նպատակով կրկին Կովկաս է եկած:

* Արել է 5 պեղում, որոնք ժամանակագրական կարգով հետեւեալներն են. Դամղալու գիւղին 1887-ին. Առաջաձորին, Քօլատակին, Սաղսուլան շէնը. Մաղավուզ կամ Զարդախլու գիւղին 1888 ին:

հովտում, Բալա—էյլախ սարի հիւսիս—արեւելեան ստորոտում, Դամփալու գիւղից 1 վերստաչափ հարաւ—արեւելք համանուն գետակից 50 սաժ. հեռու, Խաչէն և Նրա ճիւղ Քօլատակ գետակի կազմած թերա-կղզու վրայ: Բլուրը ծածկուած է թփերով և ճոխ բուսականութեամբ, շրջապատն է 36 սաժ : Տեղացիները «Կրակապաշտաց Գերեզման» են կոչում այդ:

Ինչպէս յայտնի է դոկտ. Բէլքի, Ժ. դէ Մորգանի, Է. Ռէօսլէրի եւայլոց հետազօտութիւններից, մի կուրգանի մէջ երբեմն մինչև հարիւր և աւելի գերեզմաններ են լինում. այդ ապացուցանում են նաև այս 5 կուրգանները: Բլուրի առաջին շերտը սեւահող, իսկ տակինները լուսնահող և շիկահող են եղած, իսկ քարերը գետաքարեր կրաքար և աւազաքար: Առաջին մեծ գերեզմանը երևացել է 2 արշին խորութեամբ՝ արեւմուտքից արևելք ձգուած, կափարիչը՝ 1 սաժէն 2 վերշոկ.×1 արշին. 2 վերշոկ.×7 (հաստութեամբ) քար էր: Գերեզմանը շինուած էր շինկահողից, պատերի երեսները սուաղած էին լուսնահողի շաղախով:[1] Մեծութիւնն էր 4 արշին. 13 վերշոկ.×2 արշին. 2 վերշ ×4 վերշոկ. կափարչի փոքրութեան պատճառով վերևից իջնող ծանրութիւնը փշացրել էր կաւէ ամանները և կմախքի մի մասը.

Կուրգանը պեղելիս Հ. Խաչիկը պատահել է զանազան տեսակ կենդանիների ոսկորների. թէ այդ մի սովորական երևոյթ է Կովկասեան կուրգաններում՝ պարզ երեւում է նաև Ժ. դէ Մորգանի դիտողութիւններից. «Très fréquemment les amas de pierres qui recouvraient la dalle supérieure des tombeaux, contenaient des ossements humains, des débris de moutons, de chevaux et de boeufs, des vases brisés et quelques menus objets sans importance. Ces restes font songer aux sacrifices qui avaient lieu sur le tombeau des grands personnages scythes et que décrit Hérodote» (IV, 71.).[1]

Ըստ Կ. Ռաուլինսոնի Կովկասեան գերեզմանները մեծ նմանութիւն ունին Սկիւթական գերեզմաններին՝ իրենց կազմութեամբ.[2] ուրեմն տարօրինակ չի լինիր ընդունել, որ թաղման ծէսերն էլ կարող էին նոյնը լինել: Այս նախապատմական գերեզմանների մօտ մարդկային ոսկր երևալը՝ 2 պատճառով կարող է բացատրուիլ. նախ այդ՝ կրօնական սովորութեան համաձայն մարդազոհ կարող է լինել, որ ունէին Չինացիները՝ թէև ըստ էութեան հարևան ազգերից առած, այսպէս օրինակ պատմուում է՝ որ Քրիստոսից 621 տարի առաջ մեռնող իշխան Մուկունգի հետ թաղել են ազնուականներից մէկին՝ իր 3 որդիներով, նրա ընտանի ձագրը, փառահեղ կառքը, և 167 մարդ պալատական թիկնապահներից:[3] Երբ Կունդֆու ձի-ի մայրը մեռնում է՝ նրա «այս կեանքում միացածները, մահուամբ չպիտի բաժանուին» օրէնքի համաձայն՝ հօրն եւս միասին են թաղում.[4] Չին—չի—խօանկ—տին կենդանութեան ժամանակ իր համար փառաւոր գերեզման շինել տուեց. մահուանից յետոյ նրա մէջ իր մարմնի հետ դրուեցաւ բոլոր հարստութիւնը. շինողի տարեգիրների ասելով՝ թաղման մասնակցող 10.000 մշակները նրա գերեզմանի մօտ ողջ ողջ թաղուեցան:[5] Երկրորդ այն սովորութիւնը՝ որ մեծ իշխանների կամ արքաների թաղման մասնակցող մշակներին սպանում էին վախենալով որ նրանք կարող են կողոպտել մեռեալի հետ թաղուած հարստութիւնը. այդ սովորութիւնը ունէին Մոնղոլներն ու Հոները. ընդհանուր պատմութիւնից արդէն յայտնի է Չինգիզ խանի և Ատտիլլայի թաղման զուգընթաց սպանութիւնները:

1. Այսպիսի մի գերեզման եւս գտել է Է. Ռէօսլէր Արդուինում. տես Ազգագրական հանդէս. 1896. Գ. Ա. էջ. 106. Վերջինիս կափարիչ տեղը խաղ. պատմութեան մէջ յօդուածը եւ մի ուրիշը Ժ. դէ Մորգանի Mission scientifique au Caucase. t. I. page 46.

1. Miss. sc. t. I. p. 80.
2. G. Rawlinson, History of Herodotus. t. III. p. 57.
3. Տես. История Религій, т. II. 58.
4. Նոյն. П. 79.
5. Նոյն. 140.

Ըստ Ժ. տը Մօրգանի Հայաստանում եւ «On égorgeait, probablement, sur la tombe, quelque esclave ayant appartenu au mort. Puis on tuait du bétail qui était mangé près de la sépulture et dont les os, fendus et calcinés, gisent au milieu des pierres et des cendres du foyer»:[1] Թէև Ժ. տը Մօրգանը չէ յիշում թէ այսպիսի մարդազոհութիւնը՝ կրօնական սովորութեա՞ն հետեւանք էր թէ երկիւղի, բայց յայտնի հնադէտի ենթադրութիւնը մեզ իրականութիւն է երեւում, և աւելին եւս կասենք, չինական պատմագրերի «դժոխային սովորութեան» մեր մէջ եւ՝ նոյն իսկ Քրիստոսից յետոյ տեղի ունենալը մեզ անտարակուսելի է թւում: Մեր այս եզրակացութիւնը հիմնում ենք Խորենացու շատ կարեւոր մի վկայութեան վրայ՝ որ նա առել է Արիստոն Փեղղացուց. Արտաշիսի թաղումը նկարագրելիս նա ասում է. «Որոյ (Արեգոյ Արեգենից նահապետի) ոչ ժամանեալ գաւառնալ հասանէ վախճան Արտաշիսի: Եւ գրէ (Արիստոն փիղղացի) եթէ որչափ ամբոխութիւնք. մեռան ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք եւ հարճք եւ սիրելի ծառայք».[2] Նոյնը չեշտում են և Գողթան երգիչները «զամանէ (զԱրտաշիսէ) երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս, եթէ ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց». այս վկայութեան ճշտութիւնը, այսինքն Արտաշիսի գերեզմանի վրայ բազմաթիւ մարդկանց զոհուիլը ապացուցում է նաև «Մինչ դու գնացեր և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար»[3] հին գեղեցիկ երգի այլաբանական հատուածով: Թէ հայերը հեթանոսական ժամանակներում սովորութիւն ունէին նշանաւոր ծագում ունեցող մարդկանց գերեզմանների վրայ զոհեր եւ մատուցանելու, նոյնպէս յայտնի է Խորենացուց. «Ցորում պատմէ ի մեհեանցն պաշտամանց վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուելով զգերեզման եղբօրն իւրոյ Մաժանայ քրմապետի ի Բագնացն աւանի, որ ի Բագրեւանդ գաւառի, բագին ի վերայ գերեզմանին՝ շինելով զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն և ընդունիցին հիւրք երեկոթիւք»:[1] Այս վկայութիւնը Խորենացին առնում է Բարդածանից, որը իւր գիրքը յօրինելիս Անիի մեհենական դիւաններից էր օգտուել: Թէ այս սովորութիւնները շարունակել են իրենց գոյութիւնը նաև քրիստոնէական շրջանում՝ երևում է Փաւստոսի և կանոնագրքերի մէջ եղած բազմաթիւ ակնարկութիւններից: Ի՞նչ հեռու գնանք. համոզուելու համար բաւական է Խորենացու իրեն յատուկ հակիրճութեամբ բազմամիտի նախադասութիւնը՝ «և զերկուս զայսոսիկ (սովորութիւնս)—յաղթեաց նախարարացն բառնալ (Ս. Ներսէս), մի զմեռելոց խնամութիւն.. և միւսն՝ որ ի վերայ մեռելոցն զարծեալ ոճիւ ըստ հեթանոսական սովորութեան»:[2] Խնդիր է թէ, ՚ի մարդազոհութիւնը Հայոց համար սեփակա՞ն թէ ստացական սովորութիւն է, Արդեօք նախահայերը իրենց հայրենիքի՞ց են բերել այդ սովորութիւնը, թէ իրենց նոր բնակավայրի բնիկներից վերցրել, որ հաւանական է, և համաձայն թէ՛ պեղումների և թէ պատմութեան մեզ տուած արդիւնքներին. Այս հեթանոսական սովորութեան մնացորդն է երևի մեր օրերում ուլերի և այլ նշանաւոր անձանց գերեզմանի վրայ ոչխար կամ եզ մորթելը՝ կամ կաւեր ու չէչեր ջարդելը, կամ մեռելների կենդանի մարդիկ տանելու և «խարթլաղ»ների հաւատալիքը:

Վերոյիշեալ բոլոր վկայութիւնները կարծում ենք դէպ ի իրականութիւն են մղում են այն ենթադրութիւնը թէ՝ նախահայերը մարդազոհութեան սովորութիւն ունեցել են առաջ քան կրօնական սովորութիւն, հաւանականաբար այն համոզմամբ

[1]. Miss. sc. t. I. p. 80.

[2]. Մ. Խորենացի. Վենետիկ. 1827. Գիրք Բ. գլ. Կ. եր. 284. ուր մի փոքր յետոյ աւելացնում է. «Եւ շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահուանք. որպէս վերագոյն ասացաք». ընդգծած նախադասութիւնը ցոյց է տալիս որ Խորենացին ինքն է աւելացրել այդ ամբողջ հատուածը եւ ոչ թէ Արիստոն Փեղղացին ունեցել է, որ ամենից կրկնութիւն կլինէր:

[3]. Մ. Խոր. անդ. 286.

[1]. Գիրք Բ. գլ. ԿԶ. եր. 300.

[2]. Գիրք Գ. գլ. Ի. եր. 418.

որ՝ հանդերձեալ աշխարհում նրանք մեռեալին պէտք կգան. և ապա քրիստոնէական ժամանակներում իբրև սպասք։

Խաչիկ վարդապետի արած պեղումների ժամանակ մեծ գերեզմանի վերևի քարերի մէջ գտնուել են խառը ոչխարի, եզի, ձիու ոսկրների հետ, նաև գոմէշի և խոզի ոսկրներ։

Կարելի է նոյնպէս ցոյց տալ որ մեր մէջ մեռած արքաների և իշխանների հետ թաղում էին իրենց զէնքերն ու զարդերը, նոյն իսկ գահն ու անկողինը. «դագաղն էին ոսկեղէնք, գահոյքն և անկողինքն բեհեղեայ և պատմուճանն որ զմարմնովն ունէին. թագ կապեալ ի գլուխն և զէն ոսկեղէն առաջի եդեալ..»[1] և այլն.

Մինչև այժմ էլ Հայաստանի զանազան կողմերում մեռելների հետ նշխար են դնում։ Եւ մի քանի տեղերում էլ իրենց պարապմունքը-բնորոշող առարկաներ, որ եգիպտական սովորութիւն է։[2]

Պեղելիս՝ հետզհետէ հետևեալ գերեզմաններն են պատահել. կէս արշին խորութեան վրայ մի կմախք գլուխը դէպ ի արևելք, պարկեցրած՝ ձեռքերը կողքերով ուղիղ մեկնած, գանգը կիսատ. գտնուել է երկու խեցի ամաններ՝ մէկը ոտքերի մօտ, միւսը աջ կողքին. երկուսն էլ հողով լի։

Կողքի ամանը եղել է մոխրագոյն, անյատակ, կլորաձև փոքր ձմերուկի մեծութեամբ, բերանը շուռ տուած (շրթունքաւոր.), բերանի տրամագիծը 13 սմ. փորի հաստութիւնը 53 սմ. խորութիւնը 13 սմ. կողքից ճաքած, շրթունքը կոտրատած. միջի հողից նմուշ է վերցրած։[3] Ոտնատակի ամանի ձևը, գոյնը և արհեստը մի և նոյնն է. բերանի մեծութիւնը 10 սմ. փորը 42 սմ. խորութիւնը 11 սմ. 3 տեղից ճաքած. շրթունքի կէսը փշրուած։

Մի արշին խորութեան վրայ երևացել է մի ուրիշ կմախք. գլուխը դէպի արևմուտք՝ աջ կողքի վրայ պարկած. սրա աջ ու ձախ կողմերում էլ գտնուել են 2 խեցեններ հողով լի, միևնոյն վերին աստիճանի, ամենայն զգուշութեամբ վերցնելիս առաջինը 138, երկրորդը 64 կտորների է բաժանուել։ Ականջաւոր ամանը շագանակագոյն է և ձմերուկաձև, բերանի տրամագիծն է 12 սմ. յատակինը 13 սմ. փորինը 88 սմ. խորութիւնը 20 սմ. միւսը գոյնով և ձևով նման է սրան, միայն փոքր ինչ երկար է, բերանի մեծութիւնը 12 սմ. յատակինը 14 սմ. փորինը 90 սմ. խորութիւնը 20 սմ.։ Կմախքի մօտ գտնուել է նաև բրոնզեայ փորիչ (քանդակելու գործիք) և ոլաք։ Փորիչի երկարութիւնն է 8 սմ. մի ծայրը սուր է և տափակ, որը հետզհետէ քառակուսի ձև է ստանում, այնպէս որ մէջ տեղը՝ ամենահաստ մասն է (=1 սմ.), որ աստիճանաբար բարակում է. ծայրը 0,2 սմ. հաստութիւն ունի, որով ձեռքին բռնելու և փորագրելու մեծ յարմարութիւն է ներկայացնում։ Ոլաքն (նետածայր) էլ 8 սմ. երկարութիւն ունի, 2 սմ. լայնութիւն և բոլորովին նման է Ժ. տէ Մօրգանի Շէյթան թաղում գտած № 57 ոլաքին։[1] Կմախքի գլխատակին եղել է մի բրոնզեայ դաշոյն՝ 33 սմ. երկարութեամբ (կոթը 10 սմ.), լայնութիւնը 1,5 սմ. սրածայր, կոթի լայնութիւնը 1,5 սմ. բռնակին կռնատուր և գեղեցիկ, կոթի ծայրը կիսաշրջանաձև և 2 ակօսներով. ծակերը լցուած են փթած փայտով, մէջ տեղ բարակ մեխ։ Կմախքի տակ գտնուել է և մի բրոնզեայ նիզակակոթ. բոլորաձև, մէջը դատարկ, 14 սմ. երկարութեամբ. 9—10 սմ. հաստութեամբ 15 ծակերով, 3 կարգ դասաւորած, փայտը մէջը անցնելիս մեխերով ամրացնելու համար, բերանը՝ 3 սմ. տրամագծով. բրոնզի հաստութիւնը 0,1 սմ.։[2]

1. Գիրք Ե. գլ. Կ.

2. Исторія религій. т. IV. 151.

3. Այսպէս նոյն նմուշներ կան բազմաթիւ ամանների մէջ եղած հողերից։ Նոյնները Հ. Խ-ը թողել է գիւղում, եւ միայն մի քանի փոքրերը եւ դիմացկունները բերել։ Դժբաղդաբար այլի առաջ յուսահատալով դրանք, հնարաւորութիւն չունենք աւելի լիակատար գաղափար տալու նրանց մասին։ Նկարները հրատարակել նոյնպէս չենք կարող։

1. Տես Miss. sc. t. I. p. 100. fig. 57.

2. idem. Այնպիսի գեղեցիկ օրինակը գտել է Ժ. տէ Մօրգան Մուսիերում. տես p. 98. fig. 49.

Կուրգանի միւս կողմում մէկ արշին խորութեամբ գտնուել է մի ուրիշ կմախք, գլուխը դէպի արեւմուտք, աջ կողքի վրայ, ձեռքերը կողքովը ուղղած, ոտնատակին մի փոքրիկ ականջաւոր խեցի՝ բաւական գեղեցիկ, մոխրագոյն. մեծութիւնն է՝ բերանը 9 սմ. յատակը 6 սմ. վիզը 25 սմ. երկարութիւնը 4 սմ. փորը 42 սմ. խորութիւնը 12 սմ.։ Գերեզմանի մէջ գտնուել են նաեւ 2 պրօնզեայ օղեր՝ տարբեր ձեւի։ Մէկը ռուսական 10 կոպեկանոցի մեծութեամբ անհարթ եզերքով, որի մեծ ծակով անց է կացրած պրօնզեայ մի թել, որ գալիս միանում է իր բուն թելին 2 ոլորումով. որով տակի դրամաձեւ զարդը մնում է կախուած, իսկ բուն թելը աղեղ կազմելով (Ո երկաթագրի տառի ձեւով), վերջանում է սրածայր։ Երկրորդ օղակի մի մասն է մնացել դժբաղդաբար, պրօնզեայ թելը կտրուած է. իսկ լայն մասը կիսաբոլորաձեւ ակօսաւոր պրօնզեայ թիթեղ է. գրչածայրի վերին մասի նման, 3,5 սմ. երկարութեամբ. 2 սմ. տրամագծով.

Բլուրիս հիւսիս-արեւմտեան կողմում մի արշին 6 վերշոկ. խորութեան վրայ տեսնուել է մի ուրիշ կմախք արեւմուտքից դէպի արեւելք պառկեցրած, ձեռքերը կողքերով ուղիղ մեկնած. մօտը գեղաքանդակ մի խեցի կտոր կտոր եղած։ Այս գերեզմանների շուրջը գտնուել է զանազան ձեւի եւ մեծութեան խեցիների կտորներ եւ կենդանիների ոսկրներ, որոնք դժբաղդաբար փշրուած են մնացել։

Երկու արշին խորութեամբ երեւացել է բուն մեծ գերեզմանը՝ որի մէջ կմախքը գտնուել է նստած դիրքով՝ երեսը դէպի հիւսիս, ձեռքերը խաչաձեւ ծնկների վրայ դրած. ափերի մէջ մի մի ձկան ականջ (խճճոր)։ Նման Ժ. տէ Մօրկանի Հէյթան տաղում արած պեղման fig. 15-ին, [1] վզից կախուած են եղել 17 ուլունքներ՝ կարմիր յակինթից. մէջտեղինը մեծ կաղնաչափ. միւսները փոքր ոսպնաչափ. երկու ծայրերին սիսեռաձեւ ոսկէ թիթեղից 4 զարգեր,* կմախքից ցած 4 շարք ամաններ (խեցի), իւրաքանչիւրում 4 աման (խեցի), թւով 16 աման (խեցի), 1 արշին. 8 վերշոկ. քառակուսի տարածութեան վրայ, որոնց նկարագիրը հետեւեալն է։ № 1. խեցին նման է կիսած ձմերուկի, շագանակագոյն բաւական գեղեցիկ. բերանի տրամագիծը 16 սմ. յատակինը 10 սմ. հաստութիւնը 0,5. № 2, նման առաջինին բերանը 19 սմ. յատակը 11 սմ. փորը 71 սմ. խորութիւնը 12 սմ. № 3. նման № 2-ին. № 4. նման № 1-ին. բերանը 17 սմ. յատակը 9 սմ. խորութիւնը 15 սմ. փորի շրջապատը 66 սմ. № 5 նման № 1-ին։ № 6. նման № 4-ին, փորի շրջապատը 61 սմ. խորութիւնը 13 սմ. № 7. նոյն. zigzag, գծաւոր շուաքով զարդերով. բերանը 18 սմ. յատակը 8 սմ. փորը 63 սմ. խորութիւնը 12 սմ. մէջի հողի մէջ գտնուեցան մի քանի ոսկր. № 8. նման № 6-ին, դրսից շուաք տուած եւ միմեանց մէջ ագուցած անկիւնաքանդակները. որոնց բերանները հակառակ կողմեր են շրջած։ № 9. նման, միմեանցից աւելի հեռու ընկած անկիւնազարդերով. միմեանց մէջ ագուցեալ անկիւնների ուլնը բաժանուած է 3 ուղիղ շուաք տուած գծերով. բերանը 13 սմ. յատակը 7 սմ. փորը 50 սմ. խորութիւնը 10 սմ. № 10. կարասանման. դրսից եւ՝ ներսից շագանակագոյն, քանդակը 2 հորիզոնական գծեր շուաքագծերով. մէջտեղ անկիւն, որի կողմերի ծայրերը միացրած են շուաքագծերով՝ հորիզոնական գծերի ծայրերի հետ. յատակը եւ բերանը 15 սմ. փորի շրջապատը 127 սմ. վզի հաստութիւնը 54 սմ. խորութիւնը 50 սմ. կողքի հաստութիւնը 1 սմ. այս խեցիի մէջ գտնուեցաւ 1 կիսաշրջանաձեւ կուտուչ (փայտեայ փոքրիկ աման). 8 սմ. բերանով, 30 սմ. փորով, 5 սմ. խորութեամբ, լի գիշատիչ մի թռչունի ոսկրներով։ № 11. նման № 1.-ին, բերանը 18 սմ. յատակը. 10. սմ. փորը 73 սմ. խորութիւնը 15 սմ. № 12 նման № 1-ին. բերանն

[1]. idem. 55.

* Գտնի մօտ մի խեցի յրամանի ձեւով, ամէն ինչով նման տէ Մօրկանի t. I-ի, pl V-ի № 1 խեցիին, միայն առանց զարդերի եւ մախրազրի։

ու յատակը № 2-ի չափ. փորը 77 սմ. խորութիւնը 15 սմ. քանդակը եռակարգ շուաք տուած զիկզակներով։ № 13. Հաստատափոր պուլիկի նման, շագանակագոյն. բերանը 10 սմ. յատակը 9 սմ. փորը 60 սմ. խորութիւնը 16 սմ. № 14. Նման № 13-ին. բերանը 11 սմ. յատակը 8,5. փորը 64 սմ. խորութիւնը=№ 13-ին, երկկարգ զիկզակները՝ փոս ընկած անկիւնների մէջ՝ ուրիշ անկիւնները միշտ շուաքագծերով. № 15. Նման վերևինին, բերանը 13 սմ. յատակը 10 սմ. փորը 72 սմ. խորութիւնը 20 սմ.։

№ 16. Մեծադիր շականակագոյն. պուլիկի նման. բերանը 14 սմ. յատակը 12 սմ. փոր 74 սմ. խորութիւն 25 սմ.։ Սրա մէջ գտնուել է № 17 փոքրիկ խեցին՝ նման Շէյթան թաղի 2 խեցիին.[1] փոքրիկ և շագանակագոյն, բերանը 6 սմ. յատակը 4 սմ. խորութիւնը 6. փորը 24 սմ.։ Այս խեցիների մօտ ընկած բոլորաձև մի աւազաքարէ կափարիչ, դեղնագոյն, 14 սմ. տրամագծով. կեդրոնից դէպի ծայրերը հետզհետէ բարակում է և ստանում շրջանաձև դրութիւն (տե՛ս № 28.)։ № 18. շագանակագոյն ձմերուկաձև. բերանը 17 սմ. յատակը 11 սմ. փորը 66 սմ. խորութիւնը 15 սմ. Այս հարաւային պատի տակ գտնուող ամաններից 1 արշին հեռու եղել են 2 շարք (3 և 5) ուրիշ ամաններ։

№ 19. Այս շագանակագոյն խեցու մեծութիւնն է՝ շրթունքաւոր բերանը 11 սմ. առանց շրթունքների 8 սմ. յատակը 10 սմ. վիզը. 28 սմ. երկարութիւնը 8 սմ. փորը 61 սմ. խորութիւնը 23 սմ. խեցիի հաստութիւնը 0,5 սմ. Նման է մածնի օշնակի։ № 20. Նման վերևինին. բերան 10 սմ. յատակը 10 սմ. վիզը 25 սմ. երկարութիւնը 8 սմ. փորը 60 սմ. խորութիւնը 25 սմ. շուաքաւոր ուղղահայեաց և հորիզոնական գծերով։ № 21. Նման վերևինին. բերանը 12 սմ. յատակը 9 սմ. վիզը 30 սմ. երկարութիւնը 5 սմ. փորը 58 սմ. խորութիւնը 22 սմ.։ № 22. Նման վերևինին. բերանը 13 սմ. յատակը 11 սմ. վզի հաստութիւնը 31 սմ. երկարութիւնը 10 սմ. փորը 71 սմ. խորութիւնը 30 սմ. վերևից 2 հորիզոնական գծեր. ցած՝ մէջ տեղ՝ 2 անկիւններ, որոնց ծայրերը միացած են գծերով հորիզոնական գծերից ներքևինի հետ։ № 23. Նման վերևինին, բերանը 12 սմ. յատակը 10 սմ. վիզը 30 սմ. երկարութիւնը 8 սմ. փորը 70 սմ. խորութիւնը 29 սմ. № 24. Նման վերևինին. բերանը 12 սմ. յատակը 10 սմ. վիզը 29 սմ. երկարութիւնը 7 սմ. փորը 69 սմ. խորութիւնը 27 սմ.։ № 25 Նման վերևինին. բերանը 13 սմ. յատակը 12 սմ. վիզը 33 սմ. երկարութիւնը 7 սմ. փորը 67 սմ. խորութիւնը 25 սմ.։ № 26 Նման № 12-ին. բերանը 11 սմ. յատակը 9 սմ. վիզը 28 սմ. երկարութիւն 8 սմ. փորի հաստութիւն 64 սմ. խորութիւն 25 սմ.։ Այս բոլոր ամանները փխրուն են և ձեռք տալուն պէս կտոր կտոր են լինում ընդհանրապէս. Այս ամանների 2 խմբի մէջ եղել են կենդանիների ոսկորներ, որոնց տակ 3 ամբողջ և 2 կոտրուած գայլախազեայ՝ սլաք տարբեր մեծութեամբ։

## Բ. ՊԵՂՈՒՄՆ. ԱՌԱՋԱՁՈՐԻ (ԴՈՎՇԱՆԼՈՒ) ԿՈՒՐԳԱՆԸ.

Առաջաձոր գիւղը գտնւում է Ջվանշիր գաւառում, Խաչէն գետից հիւսիս, նրա ստորին հովտում Խաքզան սարի ստորին փէշերի վրայ.

Այն բլուրը՝ ուր գտնուել է Կուրգանը, ընկնում է Առաջաձորից 2 վերստ, Խաչէնի գետից $1\frac{1}{2}$ վերստ հիւսիս։ Տեղացի ժողովուրդը ոչ մի աւանդութիւն չունի բլրի մասին, միայն այն հովիտը ուր գտնւում են բլուրները, կոչւում է՝ «Կըռըշպըշտանոց»[1]—այսինքն կռապաշտների վայր։

Մեր կուրգանի բլուրը ծածկուած է եղել քարերի կոյտերով, որ շատ հին ժամանակներից տեղացիներին իբր շինութեան քար է ծառայել։ Բլուրս 150 արշին շրջապատ և 70 արշին տրամագիծ է ունեցել։ Գերեզմանը արդէն բացուած է եղել (հաւանականաբար քար տանող գիւղացիներից). շիրիմը ձգուած է եղել արևմուտքից արևելք. ունեցել է 10 արշին երկարութիւն,

---

1. Miss. sc. t. I. pl. V. 2.

1. Է. Ռեօսլերի պեղածը գտնւում է սրանից 20 սաժ. հեռաւորութեան վրայ։

3 արշին լայնութիւն. և 2½ արշին խորութիւն. հողը աւազախառն չիկահող է եղել. իսկ քարերը կրաքար:

Կուրգանիս մէջ գտնուել են. մի բրոնզէ սլաք 11 սմ. երկարութեամբ, 2 սմ. (ամենալայն մասը) լայնութեամբ. կոթը 5 սմ. նման Շէյթան թաղի № 57. սլաքին՝ առանց նրա երկճիւղին.[1] Կէս արշին խորութեան վրայ հիւսիսային պատի տակ գտնուել է մի բրոնզեայ մատնոց (բոյթ մատի), վրան 25 հորիզոնական գծեր. բոլորովին նման Մուսիերիի բաղկապանին և հաւասար նրա պատկերի մեծութեան,[2] 3 սմ. տրամագծով, և մի մատանի բրոնզի բարակ շերտից, մէջ տեղը փոքրիկ ակնատեղ՝ 2 սմ. տրամագծով: Նոյն խորութեան վերայ դերեզմանի հարաւ—արևելեան անկիւնում գտնուել է մի բրոնզեայ գեղեցիկ կոճակամայր, գօտեխի այն մասը՝ ուր 2 ծայրերը միմեանց ագուցւում են: Բաղկացած է մի օղակից, նրա վրա անցկացած բարակ բոլորաձև ծածկոցից, որի ծայրերը ծակերով են զարդարուած և մի օձի գլխի ձևով քանդակազարդ կտոր, նման Շէյթան թաղում գտնուած օձի գլխին, նրան հաւասար մեծութեամբ, միայն աւելի գեղեցիկ. որա մօտ մի բրոնզէ շերտ մի ուղիղ գծի վրայ գտնուող 3 ծակերով, 1 սմ. լայնութեամբ և 2 սմ. երկարութեամբ: Հարաւային պատի տակ 4 փոքր օղակներ, մէկը՝ 6 անկիւնի:

Նոյն խորութեան վրայ հիւսիս—արևմըտեան անկիւնում գտնուել է 2 բոլորաձև քարեր մէջը ծակ, 3 սմ. տրամագծով. մէկը զոգաւոր ապակու ձևով: Հարաւային պատի տակ գտնուել է 5 ուլունքանման քարեր յակինթից, մէկը միայն կաղնու մեծութեամբ: 4 արշին խորութեամբ պատահել է 4 մարդու կմախք, խառն կտրատած խեցիների հետ (20-ի չափ): 1½ արշին խորութեամբ երևացել է կապոյտ քարից մի եռանկիւնի, որի անկիւններից հակադիր կողմերի վրայ քաշուած ուղղահայեացը հաւասար է 2 սմ.-ի. 2՝ կոր բոլորաձևեր 1½ սմ. տրամագծով. 2 շատ փոքր գնտակներ և մէկ էլ 2 գնդակների միութիւն կազմող կապոյտ քար: Նոյն խորութեան վրայ գտնուել է նաև 2 գայլախազեայ սլաք՝ վերոյիշեալ Շէյթան-թաղի № 57-ին նման: Արևմտեան պատի տակ նոյն խորութեամբ գտնուեցաւ 2 յեսաններ. մէկը կապոյտ քարից՝ 12½ սմ. երկարութեամբ, 2 սմ. լայնութեամբ և 1 սմ. հաստութեամբ. երկուսի ծայրին՝ մէջ տեղում ծակ կայ: Գերեզմանի հարաւային կողմում՝ գիւղացիները գտել են մի ճակատանոց պրոնզէ, 43 սմ. երկարութեամբ, 4 սմ. լայնութեամբ. փորուածքի հարաւը գտնուեց մի բրոնզէ կիսաշրջանաձև ճակատանոց. դարձեալ կտոր կտոր եղած, մօտ 15 սմ. շառաւիղով. 2 ճակատի զարդերն եւ միապաղաղ պրոնզ են 0,1 սմ. հաստութեամբ:

## Գ. ՊԵՂՈՒՄՆ.
## ՔՕՂԱՑԱԿԻ ԿՈՒՐԳԱՆԸ.

Քօլատակ գիւղը գտնուում է Ջվանշիր գաւառում, Խաչենի սարին հովտում, նրանից հարաւ, համանուն գետի վրայ, Պալուէյլախ սարի արևելեան փէշի վրայ:

Այն բլուրը՝ ուր գտնուում է Կուրգանս ընկնում է Քօլատակից մի վերստաչափ դէպ ի արևելք. ծածկած է մոշի, ցաքի, վայրի խնձորի, արքայակաղնու, հիւնի և այլն թփերով. Բլուրի շրջապատն է 23 սաժէն 1 արշին. Տեղացի ծերունիները այս «Փոամ պապու բումբ» են կոչում, ժողովուրդը առ հասարակ «Գէօր» է անուանում, որ կնշանակէ անհաւատի գերեզման: Նոյն անունը յիշուում է նաև Մեծառանց ս. Յակոբայ վանքի ԺԳ դարում գրուած արձանագրութեան մէջ. «Ես Զաքարէ որդ|ի Վախտանգա տն|Խաչենո ավե գլ|նձորխտա Կոռ|երկիրն ի տունն|Մեծարեանց...»:[1] Հողը սևահող և լուսնահող էր, քարերը կրաքար, գետաքար և աւազաքար էին: Գերեզմանը երևաց 3 արշին խորութեամբ, արևմուտքից արևելք ձգուած. 11 մեծադիր քարերից էր շինուած դամբարանը, որոն-

---

1. Miss. sc. t. I. 100.
2. idem. 110. № 70.

1. Տես հարաւային պատի արձանագրեան դրա երկաթագիր արձանագրութիւնը:

ցից երկուսը երբ կափարիչ ծածկում էին վերևը. մէկը ոսկերի տակն էր, միւսը գըլխու, եօթն ևս կողքերն էին կազմում. չինմի երկարութիւնն էր՝ 2 արշին 12 վերշոկ. լայնութիւնը 11 վերշոկ (գլխի կողմից. ոտքի կողմից 6), խորութիւնը 10 վերշոկ։

1½ արշին խորութեան վրայ երևեցաւ 7 երկաթեայ խաչեր տարբեր ձևի և 18—14 սմ. երկարութեամբ, 10—6 սմ. լայնութեամբ։ Այս խաչերից դէպ ի արևմուտք նոյն խորութեան վրայ գտնուեցան մի երկաթէ դանակ 9 սմ. երկարութեամբ, 1 սմ. լայնութեամբ (ծայրը 0,5 սմ.). մի ուրիշ երկաթ՝ հաւանականաբար դանակակոթ, 4,5 սմ. երկարութեամբ, հասա մասից պոկուած. մի երկաթէ օղակ 2 սմ. տրամագծով. և մի ծակիչ գործիք որ բաղկացած է մեխի նման ծակող մասից և նրան ագուցուած աղեղնաձև կոթից, 7 սմ. երկարութեամբ.

Կմախքը ամենայն մասերով անեղծ է գտնուել. կռնակի վրայ արևմուտքից—արևելք պարկած, ձեռքերը կրծքին խաչած է եղել. իսկ գլուխը կտրած և կուրծքի վրայ դրած է գտնուել. Դամբարանի 4 կողմը խեցինների փշրանքներով ծածկուած է եղել. Ամէն ինչից երևում է որ գերեզմանս քրիստոնէական շրջանի է. և գուցէ մի սուրբի և նահատակի դամբարան։

## ՊԵՂՈՒՄՆ Դ.
## ՍԱՂՍԱՂԱՆ ԼԵՐԱՆ ԿՈՒՐԳԱՆԸ.

Այս սարն ևս գտնուում է Զվանչիր գաւառում, Խաչենի գետի ստորին հովտում. այս սարի վրայ գտնուում է համանուն բերդը. իսկ նրա արևելեան և արևմտեան կողմերում կուրգաններ։ Կուրգանս ծածկուած էր ճոխ բուսականութեամբ. իսկ հիւսիս—արևմտեան անկիւնում կար մի կաղնի. բլուրիս շրջապատը 36 սաժէն է։ Հողը սևահող է եղել։ Գերեզմանը երևացել է հարաւից հիւսիս ձգուած՝ 1 արշին խորութեան վրայ, 3 արշին 8 վերշոկ երկարութեամբ, 1 արշին 12 վերշոկ լայնութեամբ, 2 արշին խորութեամբ։ Գերեզմանը շինուած էր մեծ եղնաքարերից. Կմախքը գտնուել է երեսը դէպ ի արևելք ծալապատիկ նստած, ձեռքերը ծնկներին. իսկ արևելեան պատի տակ շարուած էին 6 խեցիները, որոնք են՝ № 1. շագանակագոյն ձմերուկաձև, բերնի տրամագիծը 8 սմ. յատակինը 12 սմ. փորը 60 սմ. խորութիւնը 17 սմ. № 2. նման № 1-ին. բերանը 8 սմ. յատակը 10 սմ. փորը 52 սմ. խորութիւնը 15 սմ. № 3. նման № 1-ին. բերանը 4 սմ. յատակը 8 սմ. փորը 47 սմ. խորութիւնը 14 սմ.. № 4. 5. 6. բոլորովին հող էին դարձել և ձեռք տալուս փշրուեցան։ № 1 և 2 ամանների և կմախքի մէջ գտնուեցաւ մի բրոնզեայ նիզակակոթ 18 սմ. երկարութեամբ, յար և նման Տնջրհող բլրի մէջ գտնուածին. երեք կարգ դասաւորած 15 մեխերու ծակերով. ծածկուած ծայրից մի կտոր ընկած է և մի նիզակածայր 16 սմ. երկարութեամբ, առաջ շրջանաձև՝ մէջը ծակ, փայտ անցնելու համար, ծայրը սուր սլաքանման բրոնզի ղանգուածից, նման Շէյթան տաղի № 7. նիզակածայրին.[1] Գերեզմանի հարաւ—արևելեան անկիւնում գտնուել է 4 սլաք՝ որոնցից մէկը նման է Տընջրհող բլրի նետածայրին, միւսը Առաջաձորինին, իսկ միւս երկուսը թևեր չունի և քառակուսի սրածայրով են վերջանում։ Նետերի մօտ եղել է 4 բրոնզէ կոճակներ կիսաշրջանաձև՝ 4 սմ. մեծութեամբ, փոկի մէջ անցնելու անցքերով. նման Մուսիերիի կոճակներին։[2] Հարաւային պատի տակ գտնուել է 5 քարէ սլաքներ, որոնցից 3-ը ամբողջ և 2-ը կոտրած են. սոքա նման են նախկիններին և շինուած են կայծքարից և գայլախազից։ Հարաւ—արևմտեան անկիւնում գտնուել է և մի երկճիւղ խշտիկ, որի փայտէ կոթը ձգուած էր մինչև նիզակածայրը. խշտիկը 60 սմ. երկարութիւն ունէր, միայն փայտ անցնելու կոթը 21,5 սմ. նման Ժ. տէ Մօրկանի Մուսիերիում գտածին[3]։

Նոյն խորութեան վրայ, այս կմախքից 1½ արշին դէպ ի հիւսիս՝ նոյն դիրքով գտնուել է և մի կնոջ կմախք, որի ճակատանոցից մի փոքր նմուշ կայ մեր ժողովա-

1. Miss. sc. I. p. 97.
2. idem. p. 127. fig. 107. փորիչը.
3. id. p. 137. f. 138

ծուխ մէջ նման առաջիններին՝ բրոնզից։[1] Կմախքի գլխից կախուած էր 22- կերպամ ուլունք յակինթից՝ տարբեր մեծութեամբ. մեծագոյնը արմաւի չափ էր. որանց թելը փթելով հողի վրայ ակիւրի նման ողխտակ հետք էր թողել. ձախ թևի վրայ եղել է 50 կապոյտ ցորենաչափ հատիկներ։ Աջ ձեռքի փոքր մատի վրայ եղել է մի պրոնզէ թելից մատանի՝ 2 սմ. տրամագծով, և 27 գծերով։

Հիւսիսային պատի տակ եղել է 6 կաւէ ամաններ. երկուսը հողացած և չորսը փխրուն դարձած, նման առաջիններին՝ գոյնով և ձևով. Գտնուել են նաև մարդկանց և կենդանիների ոսկորտանք։

## ՊԵՂՈՒՄՆ Ի.
## ՄԱՂԱՎՈՒԶ ԿԱՄ ՁԱՐՏԱԽԼՈՒ ԳԻՒՂԻ ԿՈՒՐԳԱՆԸ.

Գիւղս գտնուում է Թարթառ գետի միջին հովտում, Կեմկէշ սարից դէպի արևմուտք, Ջ.վանշիր գաւառում։ Կուրգանը ընկնում է Մաղավուզից 1 վերստաչափ արևելք. ամբողջ բլուրը ծածկուած է եղել թփերով. 45 սաժէն շրջապատ է ունեցել, Տեղացիները Ցից բլուր են կոչում կուրգանը։ Բլուրի հողը սևահող և չէկահող է եղել. քարերը՝ կրաքար, չէչաքար, աղուէսաքար, աւազաքար և գետաքար։ 2 արշին խորութեան վրայ երևացել են 12 գերեզմաններ՝ որոնցից մէկը տախտակէ դագաղի մէջ. բոլորն ևս արևմուտքից դէպի արևելք պառկեցրած, ձեռքերը կողքերովը ուղիղ մեկնած։ Դիակների զանազան մարմնամասերում խրուած են եղել երկաթէ սլաքներ, որ նշան է որանց պատերազմի մէջ ընկնելուն։ Աւելի լաւ էր մնացել սեղանանման դագաղի դին. որի չէկ մազերից դէմքի վրայ մնացել էին. 4 արշին խորութեան վրայ տեսնուել են պրոնզի փշրանքներ, արևելեան և արևմտեան կողմերում երևացող քարէ պատերի մէջ եղել են աւազագոյն փոշիացած զգեստներ։ Քարեայ պատերի մէջ 4 հաստատափոր փթած քառակուսի գերաններ. վրան տախտակներ, որոնց փթելուց վրայի հողերը թափուել են գերեզմանի մէջ։

Դամբարանում գտնուել են՝ արևելեան պատի տակ 3 միջակ մեծութեամբ երկաթէ մուրճեր՝ այժմուայ մեխի մուրճերի նման՝ $7\frac{1}{2}$ սմ. երկարութեամբ, 1 սմ. հաստութեամբ, 2 բերաններն էլ տափակ, անհաւասարակողմ ուղղանկիւնաձևով՝ ծակերով։ Մուրճերից դէպի հիւսիս գտնուել է մի ձիու կմախք՝ իւր բոլոր զարդերով։ Ձիու սանձը բաղկացած է 2 պրոնզէ ձողերից, որոնց ծայրերը միմեանց ագուցուած օղակներ են կազմում. իսկ հակադիր գլուխները շրջաններ. շրջաններից քիչ ցած անց են պրոնզէ ձողեր, որոնց ծայրին կան ծակեր և վերջանում են մեխանման տափակ գլուխներով։ Իւրաքանչիւր ձողը և 2 օղակները ի միասին՝ 30-ական սմ. երկարութիւն ունին. Այս ձևով 7 սանձեր կան, որոնցից մէկը փոքր է. Փորքաշի 2 հատ պրոնզեայ օղակները 2 սմ. տրամագիծ ունին. մէկը՝ օղակ օղակ է, միւսը պարզ. Պոչկալի 2 զարդերը 9 սմ. երկարութիւն, 4 սմ. լայնութիւն ունին, ծայրերին կան 1 սմ. երկարութեամբ ծակեր. ձևով նման են Մուսիերիում գտնուած խաչի վերին կտաւթևին։[1] Սանձի վրայ եղել է նաև 4 փոքր մուրճեր վերևինների ձևով, 5 սմ. երկարութեամբ։ Կրծկալի քարերը՝ կամ սպիտակ մարմարից է կամ կարմիր աւազաքարից, առաջինը՝ (որ մէջտեղն է եղել) կիսաշրջանաձև, միւս 2-ը կիսաձուաձև. երեքն էլ պրոնզէ պատեանների մէջ ամրացրած։ Գտնուել է նաև 2 թանկագին քարի պրոնզեայ պատեաններ։ Այս բոլոր քարերն էլ մէջտեղից ծակած և պրոնզի չերտով միացրած են իրենց պատեաններին։ Բոլորն էլ ունին ունկներ թել անցկացնելու համար։ Սրանց մօտ եղել է նաև մի բրոնզէ զարդ՝ նման Մուսիերիի կոճակին։[2] Մի 7 սմ. մեծութեամբ և 1,5 սմ. լայնութեամբ պրոնզի պանդուած, դէպի մէջտեղը հաստանում է 2

---

1. Ճակատանոցի մէջտեղի կոճակը ձևով նման է Մուսիերիի կոճակին. տես Miss. sc. t. I. p. 127. f. 107. վերևից 8-ը:

1. id. t. I. p. 159. f. 172.
2. id. t. I. p. 127. 8-ը:

կողմից. ապա յանկարծ բարակում: [1] Գերեզմանի մէջտեղը գտնուեցաւ մի բրօնզեայ մորակի կոթ՝ 24 սմ. երկարութեամբ, փոքր մասի հաստութեամբ. ճաքճքած ծայրը ծակ, կաշին փաշխացած, որ 42 սմ. երկարութիւն ունէր: Սրանից քիչ հեռու եղել է ձիի թամբի բրօնզէ ծածկոցը, կլոր՝ 46 սմ. տրամագծով, ծայրերը ոլորած: Ձիի ոսկորների մէջ գտնուել է 20 սմ. երկարութեամբ մի նետ, որի փայտի մնացորդը մինչև այժմ ևս կայ սլաքից ցած անփուտ:

Հիւսիս արևմտեան անկիւնում գըտնուել են, բացի վերոյիշեալ փոքր սանձից, մի մորակի կոթ բոլորովին անվնաս՝ 24 սմ. երկարութեամբ, մի գամ (3 սմ.)՝ 2 ծայրն ևս տափակ, որ սանձի մասն է կազմել: Մի փոքրագլխ նետ 11 սմ. երկարութեամբ. 2 փէտի նման պրօնզէ գլխարկներ. որոնց վրայ եղել են 2 պրօնզէ եռոտանիներ, ձևով շատ նման թէյի կլոր սեղանների ոտքերին. միայն ոտքը վերջանում են գազանագլուխներով: Գլխարկների տրամագիծը 17 սմ. խորութիւնը 8 սմ: Սրանց մօտ 8 հատ փայլուն կարմիր—ալխտակ քարեր ձուաձև ամրացրած ունկաւոր բրօնզի վրայ, հաւանականաբար ձիի կրծքի զարդերից: Սրանց մօտ 2 յեսաններ. մէկը սև 16 սմ. երկարութեամբ և 3,5 լայնութեամբ, իսկ սպիտակը 19 սմ. երկարութեամբ և 7 սմ. լայնութեամբ: Սրանց մէջ եղել են նաև ձիերի կմախքներ:

## ԿԻՍԱՏ ՊԵՂՈՒՄՆԵՐ.
## ԿԻՉԱՆ ԿԱՄ ԲԱԼՈՒՂԱՅԱ (Балукая·— Մեղրաժայռ) ԳԻՒՂԻ ԿՈՒՐԳԱՆԸ.

Գիւղս գտնուում է Առաջաձորից հարաւ արևելք, նոյն գիւղամասում, Խաչենի ստորին հովտում: Տեղացիները կուրգանս թափա են կոչում, որը Կիչանից 1 վերստաչափ արևելք է ընկնում:

Բլուրը ծածկուած է եղել ճոխ բուսականութեամբ, 130 արշին շրջապատ և 36 արշին տրամագիծ է ունեցել:

Բլուրի մէջ գտնուել են, 24 զանազան մեծութեամբ յակինթ քարեր (ուլունքներ) և 24 մանր դեղին և սպիտակ հատիկներ, 11 պրօնզէ կոճակներ, որոնց կիսագնդաձևերը միանում են ուղիղ տրամագծերով: [1] Սրանց հետ գտնուել է և մի փոքր ունելիք, հաւանականաբար ատամ քաշելու, պրօնզի 2 ծալուած շերտից բաղկացած, որի ծայրերը աւելի լայն են քան ծալլուած մասը. [2] 13 պրօնզի բարակ շերտից շինուած օղակներ. 6—8 բարակ պրօնզի ձողից շինած մատանիների կտորներ. մի քարէ գեղաշէն կոճակ 3 ծակերով (երկուսը ծայրի մէկը մէջտեղ մի ուղիղ գծի վրայ. կիսագնդաձև). Մի մեխի կտոր պրօնզից և մի օղակ բոլորաձև: 3 պրօնզէ ձողեր 3—7 սմ. երկարութեամբ. վերջինս շատ նման է այժմեայ գորգ գործելու գործիքին. մի ծայրը հաստ, միւս ծայրը յանկարծ բարակում է և ծռւում. Մի սլաք առանց ներքև իջնող սուր ծայրերի, որ կտրուած է՝ նման № 37-ին (էջ 100). Մի պրօնզէ կոճակ՝ նման նախկին դամբարանի ձիու կրծքի զարդին. Մի ուրիշ կիսաձուաձև պրօնզէ գործիք, որ լայնութեան վրայ 2 ձուաձև ծակեր ունի, իսկ մէջը երկարութեան վրայ 2 կոթեր, թել անցկացնելու: 7 ապարանջան գծաւոր, բոլորն ևս միաձոյլ. 11 հատ աւելի մեծ և փոքր ապարանջաններ, ծայրերը բաժանուած. Մի պրօնզէ գաշոյն նման Ալլահվերդիի գաշոյնին, [3] մէջը եռանկիւնիներ զարդարած. գըլուխը գնդաձև, գնդի վրայ դուրս ընկած եռանկիւնաձև զարդեր. գնդից ցած դուրս ընկած շրջանակներ և նման զարդեր: Ապա մի քանի պրօնզէ շրջանաձևեր՝ 5—7 սմ. մեծութեամբ. որոնցից մէկի մէջ քաշած է կանոնաւոր խաչ. 4 թևերի մէջ եղած անկիւնները լցրած են միմեանցից 0,1 սմ. տարածութեամբ հեռու գտնուող անկիւններով, որոնք բոլորը գտնուում են մի ուրիշ շրջանակի մէջ, որին ամենամեծ շրջանակի հետ միա-

---

1. id. Նման № 4. պաշտօնի վերևի փոքրագիր մասին, որ անցած է Ճառագայթ. p. 94. pl. III.

1. id. ձևով ասեղի նման Մուսինի № 107 կոճակներից գ-րին:

2. Նման Ախրայայի pinces à épiler-ին. id. 131. № 118.

3. id. p. 92. № 36.

ցնում են պրօնզի գլխզակ շերտերը. շրջանակը ունի մի բոլորաձև կոթ: Միւս 2-ը 2—3 շրջանակներ, որոնց միացնում է փոքրագոյն շրջանակի մէջ եղած խաչի ստորին թևեր:

### ՄԵԾԱՐԱՆՑ Ս. ՅԱԿՈԲԱՑ ՎԱՆՔԻ ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

Քրիստոնէական ժամանակից են 3 գաւազանագլուխներ, մէկը պղնձից, ձևով նման նիզակակոթերին. չեղանկիւնի ձևով զարդերով: Միւս երկուսը փղոսկրից, որոնցից առաջինը՝ շատ նուրբ քանդակներ ունի. 8 սմ. երկարութիւն ունեցող փղոսկրէ սիւնը բաժանուած է 6 մասերի. վերևը կիսագնդաձև. կենդրոնից դուրս եկած փղոսկրաձոյլ ճառագայթները (թուով 14) հետզհետէ միմեանցից հեռանալով՝ միանում են շրջագծի հետ, որի վրայ, իւրաքանչիւր շառաւիղի միացման կէտում կայ ծակ: Աւելի լայն շրջանի հետ միանում է միմեանց կտրող գծերով. այս ամբողջ կիսագնդաձևը ներկայացնում է մի ցանց, որը տակի զանգուածից 0,5 սմ. բարձր է և նրա հետ միանում է բարակ սիւնակներով: Բ-դ յարկը բոլորաձևութիւնը պահելով աղեղնաձև ցած իջնում և բարականում է. գեղեցիկ սիւնակներով 6 մասերի է բաժանած և իւրաքանչիւր մասում մի հրեշտակի գլուխ տեղաւորած. Գ-դ յարկը 2 զարդարուած շրջանակներ—իրարից 0,5 սմ. հեռու: Գ-դ շրջանակը ունի գեղեցիկ սիւնակների մէջ 6 նկար. որոնք են՝ 1. Ս. Ստեփաննոս նախավկայ՝ կուրծքը ճղուած շապիկ հագած, ձախ ձեռքին մամակալ, աջին բուրվառ. 2. Մարիամ Աստուածածին վերարկուով (սաւանը նման վրան ձգած), գլխին թագ. աջ ձեռքին գայիսոն, ձախին ձիթենի. 3. Հայր Աստուած աջ ձեռքով խաչակնքում է. գլխին լուսապսակ. 4. Որդին Աստուած, գլխին լուսապսակ, գրկում գառն՝ որ պահում է աջ ձեռքով, ձախին գայիսոն: 5. Եպիսկոպոսական զգեստով և թագով մի մարդ (գուցէ Յակոբ Տեառնեղբայր), ձեռքին գայիսոն. 6. Մի թևատարած հրեշտակ: Ստորին 2 յարկերը գեղեցիկ փղոսկրեայ կամարներով են զարդարուած: Այս՝ արուեստի մի գլուխ գործոց է և շատ հին դարեր է յիշեցնում: Գ-դ գաւազանագլուխը փղոսկրի մի հատ զանգուած է. ոչ նախկինի նրբութիւնը ունի և ոչ նրա վեհութիւնն ու հնութիւնը. Գնդաձև մասը կազմուած է 4 իրար կողքը դրած կոյսի գլուխներից, որոնք ճակատի վրայով մինչև կենտրոնը ոլորում են շերտ շերտ, վզերին եռակարգ կլորահատիկ մանեակներ, որոնց ստորին շարքի վրայ կախուած է խաչ: Ներքևի 2 ձուաձև մասերը զարդարած են վարդանման և այլ քանդակներով.

Գտնուել է նաև 2 պղնձէ կիսագնդաձև ծնծղայ: 12 անկիւնանի մի պղնձի զանգուած: Պղնձէ մկրատ, եռանկիւնի գլուխներով. Ձուաձև շրջանակ, բարակ պղնձէ շերտից: Մի պղնձեայ եռանկիւնի կախարան, մէջ տեղը կեռ, որից վերև բոլորաձև և եռանկիւնի ծակեր կան: Մի ցեխից շինած կնոջ պատկեր նստած, վզին երկկարգ մանեակ. ձախ կողմը ոտի վրայ կանգնած է մի մերկ երախայ, որին մայրը ծիծ է տալիս: Մօր աջ ձեռքը ծծի վրայ է, ձախը երախայի մէջքին: 3 ձուաձև կնիքի քարեր, որոնցից 2 փոքրերի վրայ կայ թռչնի գլուխ և գոմշանման մի կենդանի.*

Մեծարանց վանքի դիմացը գտնուող «Կոռից» գտնուել է նաև 2 երկաթեայ սլաքներ, քառակուսի ձևով, վերին անկիւնը երկարակող.

### ՔԱՐԱՑԵԱԼ ԿԵՆԴԱՆԻՆԵՐ

1) 2 գոմէշի եղջիւրներ քարացած. 2) 5 օձ քարացեալ. 3) 9 խխունջ քարացեալ և մի քարացած բոյս: Առաջինը գտնուել է ս. Էջմիածնում, միւսները Մակուում:

---

* Մի պղնձից ձուլուած սաղաւարտաձև անօթ, որի մէջը կայ հետևեալ հայերէն արձանագրութիւնը. «Յ՜շեց և Այլաձաղաջե որդ(ի) Տրուենի ի դուռն Ս. Յակոբ հայրապետին թվ. ողգ.» վրան ծածկուած «խաչի» գրութեամբ եւ գեղեցիկ խանդակներով. 3 ձիաւորներ սուրը մէջքերին, նիզակը ձեռքերին. մէկի ձեռքին եւս բազէն: Վերեւ եւս կառքի պատկերներ եւ որսի շներ: Ձիաւորների միջի տարածութիւնը բռնում են միմեանց գօտուց բռնած մարդիկ:

Եղուարդի եկեղեցու մէջ գտնուած հնութիւնները. Մի երկաթէ գեղաշէն խաչ. 1 կնիք պղնձից՝ գրոշմագրովս «վ. յ. ա. ե.» և եպիսկոպոսական թագով, ամփոփորոնով, գաւազանով։ 2 արծաթէ մատանիներ արաբերէն գրութեամբ։ Մէկ պղնձէ կնիք 1801-ից Մաթոս անունով «քի ծ՞ռայի». Մի եկեղեցական անօթ. հաւանականաբար ծխամանի կամ մոմակալ. վերև և ներքև 3 կողքին 8 ծակեր. մէջ տեղն էս առանցք. որի ծայրերը փակուած են 2 թուշաններով, որոնց երկար վզերը միմեանց են անցկացած։ Ամբողջ երեսը և կողքերը ծածկուած են քանդակներով։ Գտնուել է նաև 3 աման, 2 ղանգակ, մէկ կոնք պղնձից։

Օշականի ձորից՝ մի այրի մէջ գտնուել է 18 մեծ ու փոքր ամաններ։

Կայ նաև մի զրահ և մի գօտի երկաթից. որոնք նկարագրուած են «Արարատում»։



# ՑԱՆԿ

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ